Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ

1989 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## Բովանդակություն



ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԱՄԻՍԸ ՄԵԿ ԱՆԳԱՄ ՀԱՅԵՐԵՆ ԵՎ ՌՈՒՍԵՐԵՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԵԼՈՒՅԹԸ ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՈՒՄ

Հարգելի պարոն նախագահ:

Հարգելի պարոն գլխավոր քարտուղար:

Հարգելի պատգամավորներ:

Մենք այստեղ ենք եկել, որպեսզի մեր հարգանքն արտահայտենք Միավորված ազգերի կազմակերպությանը, որն ավելի ու ավելի է դրսևորում իր ընդունակությունը՝ լինելու խաղաղությանն ու անվտանգությանը ծառայող եզակի միջազգային կենտրոն:

Մենք այստեղ ենք եկել, որպեսզի մեր հարգանքն արտահայտենք այդ կազմակերպության արժանապատվության նկատմամբ, որն ընդունակ է խտացնել մարդկության կոլեկտիվ միտքն ու կամքը:

Իրադարձություններն ավելի ու ավելի են հաստատում, որ աշխարհին այդպիսի կազմակերպություն պետք է: Եվ իր հերթին նա ունի նրա բոլոր անդամների ակտիվ մասնակցության, նրա նախաձեռնությունների ու գործողությունների պաշտպանության, նրա գործունեությունը նրանց հնարավորություններով և նրանց ինքնատիպ ավանդով հարստացնելու կարիքը:

Մեկ տարուց փոքր-ինչ առաջ «Ապահով աշխարհի իրողությունն ու երաշխիքները» հոդվածում ես մի շարք նկատառումներ էի արտահայտել ՄԱԿ-ի տեսադաշտում գտնվող պրոբլեմների առթիվ:

Անցած ժամանակաշրջանը նոր սնունդ է տվել մտորումների համար: Համաշխարհային իրադարձությունների զարգացման գործում իրոք բեկումնային պահ է եկել:

Հայտնի է Սովետական Միության դերը համաշխարհային գործերում: Եվ հաշվի առնելով մեր երկրում տեղի ունեցող հեղափոխական վերակառուցումը, որը խաղաղության և միջազգային համագործակցության հսկայական պոտենցիալ է պարունակում, մենք այժմ առանձնապես շահագրգռված ենք, որ մեզ ճիշտ հասկանան:

Ուստի մենք այստեղ ենք, որպեսզի համաշխարհային ամենահեղինակավոր կազմակերպության պատերի ներսում հայտնենք մեր մտորումները և նրան առաջինը հաղորդենք մեր նոր կարևոր որոշումների մասին:

## I.

Մարդկությունն ինչպե՞ս ոտք կդնի XXI դար: Այս արդեն ոչ հեռավոր ապագայի մասին մտորումները տիրապետում են մտքերին: Մենք այդ ապագային խորամուխ ենք լինում լավագույնի ակնկալիքով ու միաժամանակ տագնապով:

Աշխարհը, ուր մենք այսօր ապրում ենք, արմատապես տարբերվում է նրանից, ինչպիսին որ նա այս դարի սկզբին և անգամ կեսերին էր: Եվ այն շարունակում է փոխվել իր բոլոր բաղադրիչ մասերով:

Միջուկային զենքի ի հայտ գալը միայն ողբերգական կերպով ընդգծեց այդ փոփոխությունների հիմնարար բնույթը: Որպես նյութական խորհրդանիշ և բացարձակ ռազմական ուժի կրող նա միաժամանակ մերկացրեց նաև այդ ուժի բացարձակ սահմանները:

Ամբողջ հասակով մեկ ծառացավ մարդկության գոյատևման, ինքնապահպանման պրոբլեմը:

Տեղի են ունենում խորագույն սոցիալական տեղաշարժեր:



digitised by A.R.A.R.@

Հասարակական կարգի, ապրելակերպի, այս կամ այն արժեքների նախընտրության միջև եղած տարբերությունների հետևում շահեր են կանգնած: Դրանցից անհնար է խույս տալ:

Բայց անհնար է խույս տալ նաև գոյատևման ու առաջադիմության պայման դարձած պահանջից՝ գտնել շահերի հաշվեկշիռ միջազգային շահերի շրջանակներում:

Կշռադատելով այս ամենը, այն հետևությանն ես հանգում, որ եթե մենք ուզում ենք հաշվի առնել անցյալի դասերն ու ներկայի իրողությունները, եթե մենք պետք է հաշվի նստենք համաշխարհային զարգացման օբյեկտիվ տրամաբանության հետ, հնարավոր է, ընդ որում համատեղ, միջազգային իրավիճակի առողջացման, խաղաղության շենքի կառուցման մոտեցումներ որոնել:

Եվ եթե դա այդպես է, ապա արժե համաձայնության գալ նաև այդպիսի գործունեության հիմնական, իրոք ունիվերսալ, նախադրյալների ու սկզբունքների շուրջը:

Ակնհայտ է, օրինակ, որ ուժը կամ ուժով սպառնալը այլևս չեն կարող և չպետք է լինեն արտաքին քաղաքականության գործիք: Դա նախ և առաջ վերաբերում է միջուկային զենքին, բայց բանը միայն այդ չէ: Բոլորից, իսկ ավելի ուժեղներից առաջին հերթին, պահանջվում է դրսից ուժի գործադրման ինքնասահմանափակում և լրիվ բացառում:

Սա է բռնացումից զերծ աշխարհի առաջին և կարևորագույն բաղադրատարրը որպես մի իդեալի, որը մենք Հնդկաստանի հետ մեկտեղ հռչակեցինք Դելիի դեկլարացիայում և որին մենք հրավիրում ենք հետևել:

Բացի այդ, այսօր արդեն պարզ է, որ ռազմական ուժի մեծացումը ոչ մի տերության ամենազոր չի դարձնում: Ավելին, ռազմական ուժի միակողմանի շեշտադրումը վերջին հաշվով թուլացնում է ազգային անվտանգության մյուս բաղադրատարրերը:

Մեզ համար պարզ է նաև ընտրության ազատության սկզբունքի պարտադիրությունը: Դրա չընդունումը ծանրագույն հետևանքներով է հղի ընդհանուր խաղաղության համար:

Ժողովուրդների այդ իրավունքը ժխտել, ինչ պատրվակով էլ որ դա արվի, ինչ խոսքերով էլ որ քողարկվի, նշանակում է ոտնձգություն կատարել անգամ այն անկայուն հավասարակշռության նկատմամբ, որին հաջողվել է հասնել: Ընտրության ազատությունը համընդհանուր սկզբունք է և բացառություններ չպետք է ունենա:

Այդ սկզբունքի անխախտելիության մասին հետևությանը մենք սոսկ բարի մղումներից չէ, որ հանգել ենք: Դրան մեզ հանգեցրել է նաև մեր ժամանակի օբյեկտիվ պրոցեսների անկողմնակալ վերլուծությունը:

Դրանց ավելի ու ավելի շոշափելի նշանն է դառնում տարբեր երկրների հասարակական զարգացման անող **բազմատարբերակությունը:** Դա վերաբերում է թե կապիտալիստական, թե սոցիալիստական սիստեմներին:

Այդ է վկայում նաև վերջին տասնամյակներում ազգային ազատագրական շարժումներից ծնված հասարակական-քաղաքական կառուցվածքների բազմազանությունը:

Իսկ այդ օբյեկտիվ փաստը ենթադրում է հարգանք ուրիշների հայացքների ու դիրքերի նկատմամբ, հանդուրժողականություն, պատրաստակամություն այլ դիրքորոշումն ընկալելու ոչ անպայման որպես վատ կամ թշնամական, կողք-կողքի ապրել սովորելու ընդունակություն, մնալով տարբեր և ոչ ամեն ինչում միմյանց հետ համաձայն:

Աշխարհի բազմադիմության ինքնահաստատումը սնանկ է դարձնում շրջակա երկրներին վերևից նայելու և նրանց «իր» դեմոկրատիան սովորեցնելու փորձերը: Էլ չենք խոսում այն մասին, որ դեմոկրատական արժեքները «արտահանական կատարմամբ» հաճախ շատ արագ են արժեզրկվում:

Այնպես որ խոսքը բազմազանության մեջ միասնության մասին է: Եթե մենք դա արձանագրում ենք քաղաքական առումով, եթե հավաստում ենք, որ մենք նվիրված ենք ընտրության ազատությանը, ապա կվերանան նան այն պատկերացումները, թե աշխարհում մեկը գտնվում է «սուրբ կամքով», իսկ մեկ ուրիշը այստեղ միանգամայն պատահականորեն է հայտնվել:

Ժամանակն է թոթափել այդ կոմպլեքսը և համապատասխան կերպով կառուցել սեփական քաղաքական գիծը: Այն ժամանակ կբացվեն նաև աշխարհի միասնության ամրապնդման հեռանկարներ:



Նոր փուլի պահանջն է դարձել միջպետական հարաբերությունների ապագաղափարականացումը: Մենք չենք հրաժարվում մեր համոզմունքներից, մեր փիլիսոփայությունից, ավանդույթներից, ոչ ոքի կոչ չենք անում հրաժարվել իր սեփականից:

Բայց մենք մտադիր չենք նաև ներփակվել մեր արժանիքների շրջանակում: Դա կհանգեցներ հոգևոր աղքատացման, քանի որ կնշանակեր հրաժարվել զարգացման այնպիսի հզոր աղբյուրից, ինչպիսին է այն ամենայն ինքնատիպի փոխանակությունը, ինչ ինքնուրույն ստեղծում է յուրաքանչյուր ազգ:

Այդպիսի փոխանակության ընթացքում թող յուրաքանչյուրը ապացուցի իր կարգերի, իր ապրելակերպի, իր արժեքների առավելությունները՝ բայց ոչ միայն խոսքով ու պրոպագանդայով, այլ իրական գործերով:

Սա էլ հենց գաղափարափոսությունների ազնիվ պայքար է: Բայց այն չպետք է տարածվի պետությունների փոխհարաբերությունների վրա: Այլապես մենք պարզապես չենք կարողանա լուծել համաշխարհային պրոբլեմներից ոչ մեկը.

ոչ կկարողանանք կարգավորել ժողովուրդների փոխշահավետ և իրավահավասար լայն համագործակցությունը.

ոչ ռացիոնալ կերպով տնօրինել գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները.

ոչ վերափոխել աշխարհատնտեսական կապերն ու պաշտպանել շրջակա միջավայրը.

ոչ հաղթահարել թույլ զարգացածությունը, ոչ վերջ դնել սովին, հիվանդություններին, անգրագիտությանը, մյուս զանգվածային չարիքներին.

և, իհարկե, մեզ այն ժամանակ ոչ մի կերպ չի հաջողվի վերացնել միջուկային սպառնալիքն ու ռազմամոլությունը:

Այսպիսիք են աշխարհի օրինաչափությունների մասին մեր մտորումները XXI դարի շեմին:

Մենք, ինչ խոսք, հեռու ենք անառարկելի ճշմարտության նկատմամբ հավակնություններից: Բայց, խստիվ վերլուծության ենթարկելով նախկին և նոր ծագող իրողությունները, մենք հանգել ենք այն հետևությանը, որ հենց այդպիսի մոտեցումներով պետք է համատեղ որոնել անթիվ-անհամար կենտրոնախույս ուժերի նկատմամբ **համամարդկային գաղափարի գերակայության,** քաղաքակրթության, գուցեև տիեզերքում միակ քաղաքակրթության, կենսունակության պահպանման ուղին:

Այստեղ չկա՞ն արդյոք հայտնի ռոմանտիկա, աշխարհում հասարակական գիտակցության հնարավորությունների, հասունության չափազանցում: Այսպիսի տարակույսներ և այսպիսի հարցեր մենք լսել ենք թե մեր տանը, թե որոշ արևմտյան պարտնյորներից:

Համոզված եմ, որ մենք իրողություններից չենք կտրվում:

Աշխարհում արդեն ձևավորվել են ուժեր, որոնք այսպես թե այնպես դրդում են **թևակոխելու խաղաղ ժամանակաշրջան:** Ժողովուրդները, հասարակայնության լայն շրջանները իրոք ջերմորեն ցանկանում են բարեփոխել իրադրությունը, ուզում են համագործակցել սովորել:

Երբեմն անգամ ապշեցնում է, թե որքան ուժեղ է այդ միտումը: Եվ կարևորն այն է, որ այդ կարգի տրամադրությունները սկսում են կերպափոխվել քաղաքականության:

Փիլիսոփայական մոտեցումներում և քաղաքական հարաբերություններում փոփոխությունը լուրջ նախադրյալ է այն բանի համար, որպեսզի, հենվելով համաշխարհային մասշտաբի օբյեկտիվ պրոցեսների վրա, հզոր ազդակ հաղորդվի այն ջանքերին, որոնք նպատակամղված են պետությունների միջև նոր հարաբերությունների հաստատմանը:

Համապատասխան հետևություններ են անում անգամ այն քաղաքագետները, որոնց գործունեությունը ժամանակին կապված է եղել «սառը պատերազմի» հետ, հաճախ նրա ամենասուր փուլերի հետ: Ում-ում, իսկ նրանց առանձնապես դժվար է հրաժարվել ստերեոտիպերից, այն ժամանակների փորձից:

Եվ եթե անգամ նրանք այդպիսի շրջադարձ են կատարում, ապա ակնհայտ է, որ նոր սերունդների գալստյամբ հնարավորություններն է՛լ ավելի կմեծանան:

Մի խոսքով, խաղաղ ժամանակաշրջանի անհրաժեշտության ըմբռնումը իր համար ճանապարհ է հարթում և դառնում գերիշխող միտում: Դրա շնորհիվ հնարավոր են դարձել նաև առաջին իրական քայլերը միջազգային իրադրության առողջացման և զինաթափման գործում:

Սրանից ի՞նչ է հետևում գործնական առումով: Բնական և խելամիտ կլիներ չհրաժարվել այն դրականից, ինչ արդեն ձեռք են բերել, առաջ շարժել ամենայն արժեքավորը, ինչ նվաճվել է վերջին տարիներին, ստեղծվել համատեղ ջանքերով:

Ես նկատի ունեմ միջուկային զենքի, սովորական սպառազինությունների, քիմիական զենքի պրոբլեմներին նվիրված բանակցությունների պրոցեսը, ռեգիոնալ կոնֆլիկտների դադարեցման նկատմամբ քաղաքական մոտեցումների որոնումը:

Եվ, իհարկե, առաջին հերթին՝ քաղաքական երկխոսությունը, ավելի ինտենսիվ, ավելի անկեղծ, նպատակամղված պրոբլեմների էությանը և ոչ թե առճակատմանը, ոչ թե մեղադրանքների, այլ կոնստրուկտիվ նկատառումների փոխանակությանը: Առանց քաղաքական երկխոսության բանակցությունների պրոցեսը առաջ չի գնա:

Մեր կարծիքով, կան մոտ և ավելի հեռավոր ապագայի բավական լավատեսական հեռանկարներ:

Տեսեք, թե ինչպես են փոխվել մեր հարաբերությունները ԱՄՆ-ի հետ: Կամաց-կամաց սկսել է ձևավորվել փոխըմբռնումը, առաջացել են վստահության տարրեր, առանց որոնց քաղաքականության մեջ շատ դժվար է առաջ շարժվել:

Այդ տարրերն ավելի շատ են Եվրոպայում: Հելսինկիի պրոցեսը մեծ պրոցես է: Իմ կարծիքով, այն լիովին մնում է ուժի մեջ: Այն հարկավոր է պահպանել ու խորացնել ամեն տեսակետից՝ թե փիլիսոփայական, թե քաղաքական, թե գործնական, բայց հաշվի առնելով նոր հանգամանքները:

[illegible] իրողություններն այնպիսին են, որ միջազգային պրոցեսի նորմալ և կոնստրուկտիվ ընթացքն ապահովող երկխոսությունը աշխարհի բոլոր երկրների ու ռեգիոնների մշտական և ակտիվ մասնակցության կարիքն ունի. թե այնպիսի խոշորագույն մեծությունների, ինչպիսիք են Հնդկաստանը, Չինաստանը, Ճապոնիան, Բրազիլիան, թե ուրիշների՝ մեծ, միջակ, փոքր:

Ես կողմ եմ քաղաքական երկխոսության դինամիկացմանը, նրա բովանդակալի բնույթին, կողմ եմ միջազգային մթնոլորտի բարելավման համար անհրաժեշտ քաղաքական նախադրյալների ամրապնդմանը: Այն ժամանակ կհեշտանա նաև շատ պրոբլեմների քաղաքական լուծումը: Դժվար գործ է, բայց անհրաժեշտ է ընթանալ հենց այդ ուղիով:

Բոլորը պետք է մասնակցեն աշխարհի ավելի մեծ միասնության շարժմանը:

Այժմ դա առանձնապես կարևոր է: Քանի որ գալիս է շատ կարևոր մի պահ, երբ օրակարգում դրվում է աշխարհի համերաշխության, միջազգային հարաբերությունների կայունության և դինամիկ բնույթի ապահովման ուղիների հարցը:

Մինչդեռ, զրուցելով օտարերկրյա պետական ու քաղաքական գործիչների հետ, իսկ ես ունեցել եմ այդպիսի ավելի քան երկու հարյուր զրույց, ես երբեմն զգացել եմ նրանց անբավարարվածությունը այն բանից, որ այս չափազանց պատասխանատու փուլում, այս կամ այն պատճառով, նրանք երբեմն ասես մի կողմ են մնում համաշխարհային քաղաքականության գլխավոր հարցերից:

Բնական ու ճիշտ է, որ ոչ ոք չի ուզում դրա հետ հաշտվել:

Եթե մենք հանդիսանում ենք միևնույն քաղաքակրթության մասերը, թեկուզ տարբեր մասերը, եթե մենք հասկանում ենք արդի աշխարհի փոխադարձ կախումը, ապա դա պետք է ավելի ու ավելի մեծ չափով ներկա լինի քաղաքականության մեջ, միջազգային հարաբերությունների ներդաշնակեցման գործնական ջանքերում: Գուցե և տվյալ դեպքում այնքան էլ հարմար չէ «վերակառուցում» տերմինը, բայց ես իրոք հանդես եմ գալիս **միջազգային նոր հարաբերությունների** օգտին:

Համոզված եմ, որ ժամանակը, արդի աշխարհի իրողությունները պահանջում են շեշտը դնել երկխոսության և բանակցությունների պրոցեսի **ինտերնացիոնալացման վրա:**

**Սա գլխավոր, ընդհանրացնող հետևությունն է,** որին մենք հանգել ենք, ուսումնասիրելով վերջին ժամանակներս զորեղացող համաշխարհային պրոցեսները և մասնակցելով համաշխարհային քաղաքականությանը:

## II.

Այս կոնկրետ պատմական իրավիճակում հառնում է նաև Միավորված ազգերի կազմակերպության նոր դերի հարցը:

Մեզ թվում է, անհրաժեշտություն կա պետությունների կողմից որոշակիորեն վերաիմաստավորելու իրենց վերաբերմունքը մի այնպիսի եզակի գործիքի նկատմամբ,



ինչպիսին է ՄԱԿ-ը, առանց որի արդեն անհնար է պատկերացնել համաշխարհային քաղաքականությունը:

Վերջին ժամանակներս նրա խաղաղարար դերի ակտիվացումը վերստին ցուցադրեց ՄԻԿ-ի ընդունակությունը իր անդամներին օգնել՝ հաշիվ տեսնելու ժամանակի ահեղ մարտահրավերների հետ, ընթանալու հարաբերությունների մարդկայնացման ուղիով:

Ցավոք, իր ստեղծումից անմիջապես հետո նա ընկավ «սառը պատերազմի» ճնշման տակ: Երկար տարիներ վերածվեց պրոպագանդիստական ճակատամարտերի և քաղաքական առճակատման արմատավորման ասպարեզի:

Թող պատմաբանները վիճեն, թե դրանում ով է ավելի շատ մեղավոր, և ով՝ ավելի քիչ: Իսկ քաղաքագետները այսօր պետք է յուրացնեն միացյալ ազգերի պատմության այդ գլխի դասերը, որը հակասության մեջ է ընկել ՄԱԿ-ի բուն գոյության ու կոչման հետ:

Ամենադառն ու ամենակարևոր դասերից մեկը ձեռքից բաց թողած հնարավորությունների երկար ցուցակն է: Եվ որպես հետևանք՝ ինչ-որ փուլում ՄԱԿ-ի հեղինակության նվազումը, գործելու նրա բազում փորձերի ապարդյունությունը:

Շատ հատկանշական է, որ ՄԱԿ-ի դերի վերածնունդը կախված է միջազգային կլիմայի բարելավման հետ:

Միավորված ազգերի կազմակերպությունը ասես ներառնում է տարբեր պետությունների շահերը: Եվ նա միակն է, որն ի վիճակի է ընդհանուր հույքի մեջ համատեղելու նրանց ջանքերը՝ երկկողմ, ռեգիոնալ և համընդգրկուն:

Նրա առջև նոր հնարավորություններ են բացվում բոլոր ոլորտներում, որոնք, բնականաբար, մտնում են ՄԱԿ-ի իրավասության մեջ՝ ռազմաքաղաքական, տնտեսական, գիտատեխնիկական, էկոլոգիական, հումանիտար:

Վերցնենք թեկուզ և **զարգացման պրոբլեմը:** Դա հիրավի համամարդկային պրոբլեմ է: Բովանդակ մարդկության համար պարզապես վտանգավոր են դառնում գոյության այն պայմանները, որոնցում գտնվում են «երրորդ աշխարհի» մի շարք շրջանների տասնյակ միլիոնավոր մարդիկ:

Ոչ մի ներփակ կազմավորում, ոչ էլ նույնիսկ պետությունների ռեգիոնալ ընկերակցություններ, իրենց ամբողջ նշանակությամբ հանդերձ ի վիճակի չեն քանդելու գլխավոր հանգույցները, որ գոյացել են համաշխարհային տնտեսական կապերի հիմնական գծերում՝ հյուսիս-հարավ, արևելք-արևմուտք, հարավ-հարավ, հարավ-արևելք, արևելք-արևելք:

Այստեղ հարկավոր են միացյալ ջանքեր, հարկավոր է հաշվի առնել երկրների բոլոր խմբերի շահերը: Իսկ դա ի վիճակի է ապահովելու միայն այնպիսի կազմակերպություն, ինչպիսին ՄԱԿ-ն է:

Պրոբլեմներից ամենասուրը **արտաքին պարտքն է:**

Եկեք չմոռանանք, որ զարգացող աշխարհը գաղութատիրական դարաշրջանում անհամար կորուստների ու զոհերի գնով կանխավճարեց համաշխարհային հանրության ոչ քիչ մասի բարգավաճումը: Եկել է ժամանակը հատուցելու զրկանքները, որոնցով ուղեկցվել էր նրա այդ պատմական ու ողբերգական ներդրումը համաշխարհային նյութական առաջընթացում:

Ելքը, համոզված ենք, դարձյալ **մոտեցման ինտերնացիոնալացումն է:**

Ռեալորեն նայելով իրերին, պետք է խոստովանել. կուտակված պարտքը չի կարող ոչ վճարվել, ոչ էլ գանձվել նախնական պայմաններով:

Սովետական Միությունը պատրաստ է երկարամյա, ընդհուպ մինչև 100 տարով, մորատորիում սահմանել առավել պակաս զարգացած երկրների պարտքի վճարման համար, իսկ մի ամբողջ շարք դեպքերում՝ այն լիովին դուրս գրել:

Ինչ վերաբերում է **մյուս զարգացած երկրներին,** ապա հրավիրում են քննարկելու հետևյալը.

— վճարումները սահմանափակել ըստ նրանց պաշտոնական պարտքի՝ նայած նրանցից յուրաքանչյուրի տնտեսական զարգացման ցուցանիշներին կամ վճարումների զգալի մասի ժամկետը տևականորեն երկարաձգել.

— պաշտպանել պարտքը կրճ[illegible]ու մասին ՄԱԿ-ի առևտրի ու զարգացման կոնֆերանսի դիմումը առևտրական բանկերին.

— ապահովել կառավարական աջակցություն «երրորդ աշխարհի» պարտքի կարգավորման շուկայական մեխանիզմներին, ներառյալ պարտքերը զեղչով գնելու մասնագիտացված միջազգային հիմնարկի ստեղծումը:

Սովետական Միությունը հանդես է գալիս բազմակողմանի համաժողովներում

պարտքային ճգնաժամի կարգավորման ուղիների առարկայական քննարկման օգտին, ներառյալ ՄԱԿ-ի հովանու ներքո անցկացվող պարտապան և վարկատու երկրների կառավարությունների ղեկավարների կոնսուլտացիաները:

Միջազգային տնտեսական անվտանգությունը անհնար է ոչ միայն զինաթափման հետ, այլև **որոշակի համաշխարհային էկոլոգիական սպառնալիքի** հետ եղած կապից դուրս: Մի շարք ռեգիոններում էկոլոգիայի հետ կապված վիճակը պարզապես ահավոր է:

Պլանավորված է 1992 թվականին շրջակա միջավայրին նվիրված կոնֆերանս անցկացնել ՄԱԿ-ի շրջանակներում: Մենք ողջունում ենք այդ որոշումը և պատրաստվում այն բանին, որ այս համաժողովը պրոբլեմի մասշտաբին համարժեք արդյունքներ տա:

Բայց ժամանակը չի սպասում: Տարբեր երկրներում քիչ բան չի արվում: Այստեղ միայն ես կկամենայի մեկ անգամ ևս ամբողջ ուժով ընդգծել այն հնարավորությունները, որ էկոլոգիական վերածնության համար բացվում են զինաթափման, նախ և առաջ, իհարկե, միջուկային զինաթափման պրոցեսում:

Եկեք նաև մտածենք. արդյոք պետք չէ՞ ՄԱԿ-ին առընթեր ստեղծել էկոլոգիական շտապ օգնության կենտրոն: Նրա ֆունկցիաները կհանգեին այն բանին, որ օպերատիվորեն էկոլոգիական իրադրության կտրուկ վատթարացման շրջաններ ուղարկվեին մասնագետների միջազգային խմբեր:

Սովետական Միությունը պատրաստ է համագործակցել նաև միջազգային տիեզերական լաբորատորիայի կամ օդաչուավոր ուղեծրակայանի ստեղծման ասպարեզում, որն զբաղվեր բացառապես բնության վիճակի վերահսկումով:

Առհասարակ **տիեզերքի նվաճման գործում** հետզհետե ավելի պարզորոշ են դրսևորվում ապագա տիեզերական ինդուստրիայի ուրվագծերը:

Հայտնի է Սովետական Միության դիրքորոշումը. տիեզերքում գործունեությունը պետք է բացառի այնտեղ զենք փոխադրելը: Դրա համար էլ է իրավական հիմք հարկավոր: Այն հիմք ունի՝ 1967 թվականի պայմանագիրը և այլ համաձայնագրեր:

Բայց արդեն հասունացել է տիեզերքում խաղաղ աշխատանքի համընդգրկուն ռեժիմ մշակելու անհրաժեշտությունը: Իսկ ռեժիմի կիրառման վերահսկումը կլիներ համաշխարհային տիեզերական կազմակերպության գործը:

Արդեն մեկ անգամ չէ, որ դրա ստեղծման առաջարկություն ենք արել: Մենք պատրաստ ենք այդ կազմակերպության համակարգի մեջ ընդգրկել նաև մեր Կրասնոյարսկի ռադիոլոկացիոն կայանը: Արդեն որոշում է ընդունված այդ կայանը հանձնելու ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային:

Սովետական գիտնականները պատրաստ են ընդունել արտասահմանցի գործընկերներին և նրանց հետ քննարկել, թե այն ինչպես վերասարքավորեն խաղաղ համագործակցության միջազգային կենտրոնի, ապամոնտաժելով և վերափոխելով առանձին միջոցներ ու կառուցվածքներ, ինչպես նաև լրակոմպլեկտավորել պակասող սարքավորումներով:

Այդ ամբողջ համակարգը կարող էր գործել ՄԱԿ-ի հովանու ներքո:

Ամբողջ աշխարհը ողջունում է **ռեգիոնալ հանգույցները** քանդելու՝ Միավորված ազգերի կազմակերպության, գլխավոր քարտուղար Պերես դե Կուելյարի և նրա ներկայացուցիչների ջանքերը:

Թույլ տվեք փոքր-ինչ կանգ առնել այս թեմայի վրա:

Ծրջափոխելով անգլիացի բանաստեղծի տողերը, որոնք Հեմինգուեյը դարձրել է իր նշանավոր վեպի բնաբանը, կասեմ այսպես. յուրաքանչյուր ռեգիոնալ կոնֆլիկտի զանգ գուժում է բոլորիս:

Սա հատկապես ճիշտ է այն պատճառով, որ այդ կոնֆլիկտները տեղի են ունենում «երրորդ աշխարհում», որն առանց այդ էլ շատ դժբախտություններ ու պրոբլեմներ ունի այնպիսի մասշտաբի, որ դա չի կարող չանհանգստացնել բոլորիս:

1988 թվականը հույսի շող բերեց նաև մեր ընդհանուր հոգսերի այդ ասպարեզում: Այն շոշափեց գրեթե բոլոր ռեգիոնալ ճգնաժամերը, և տեղ-տեղ առկա են տեղաշարժեր: Մենք դրանք ողջունում ենք, մեր հնարավորությունների համեմատ նպաստում էինք դրանց:

Հատկապես կանդրադառնամ միայն Աֆղանստանին:

Ժնևի համաձայնագրերը, որոնց սկզբունքային ու գործնական նշանակությունը բարձր գնահատվեց ողջ աշխարհում, հնարավորություն էին տալիս կարգավորումը եզրափակել նույնիսկ այս տարի: Դա տեղի չունեցավ:



Եվ այդ ցավալի փաստը կրկին հիշեցնում է հին հռոմեական սկզբունքի քաղաքական, իրավաբանական ու բարոյական նշանակությունը.

pacta sunt secvanda պայմանագրերը պետք է կատարվեն:

Չեմ ուզում այս ամբիոնն օգտագործել կշտամբանքներ ուղղելու որևէ մեկի հասցեին:

Բայց մեզ թվում է, որ ՄԱԿ-ի իրավասության շրջանակներում հնարավոր կլինեն գլխավոր ասամբլեայի նոյեմբերյան բանաձևը լրացնել որոշ կոնկրետ միջոցառումներով:

Խոսելով բանաձևի բառերով, «իրենց՝ աֆղանների կողմից լայն հիման վրա կառավարության հարցի համապարփակ լուծմանը անհետաձգելիորեն հասնելու համար», ձեռնարկել հետևյալը.

— 1989 թվականի հունվարի 1-ից լիովին և ամենուրեք դադարեցնել կրակը և բոլոր հարձակողական գործողությունները կամ գնդակոծումները, բանակցությունների ժամանակ աֆղանական հակադիր խմբավորումների զբաղեցրած բոլոր տարածքները թողնելով նրանց վերահսկողության ներքո.

— դրա հետ շաղկապված՝ նույն օրվանից դադարեցվում են զենքի մատակարարումները բոլոր հակամարտ կողմերին.

— լայն հիման վրա կառավարության կազմավորման ժամանակամիջոցում, որ նախատեսվում է գլխավոր ասամբլեայի բանաձևով, ՄԱԿ-ի խաղաղապահ ուժերի կոնտինգենտ ուղարկել Քաբուլ և երկրի ստրատեգիական այլ կենտրոններ:

— մենք դիմում ենք նաև ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարին՝ խնդրելով նպաստել Աֆղանստանի չեզոքության ու ապառազմականացմանը նվիրված միջազգային կոնֆերանս անցկացնելու գաղափարի շուտափույթ իրացմանը:

Մենք այսուհետև էլ ամենաակտիվ կերպով կօգնենք ապաքինելու պատերազմի վերքերը, պատրաստ ենք այդ գործում համագործակցել և ՄԱԿ-ի հետ, և երկկողմ հիման վրա:

Պաշտպանում ենք Աֆղանստանի վերածնությանն օժանդակելու համար ՄԱԿ-ի հովանու ներքո հաշտության կամավոր միջազգային անձնակազմ ստեղծելու առաջարկությունը:

Ռեգիոնալ կոնֆլիկտների կարգավորման պրոբլեմի առնչությամբ չեմ կարող իմ դատողությունները չարտահայտել այն լուրջ միջադեպի առթիվ, որ հենց վերջերս տեղի ունեցավ այդ նստաշրջանի աշխատանքի կապակցությամբ:

ՄԱԿ-ում մշտական դիտորդի ստատուս ունեցող կազմակերպության ներկայացուցիչը Միացյալ Նահանգների իշխանությունների կողմից չթույլատրվեց ժամանելու Նյու Յորք գլխավոր ասամբլեայում ելույթ ունենալու համար: Խոսքը Յասիր Արաֆաթի մասին է:

Ընդ որում դա տեղի ունեցավ այն ժամանակ, երբ Պաղեստինի ազատագրման կազմակերպությունը կարևոր կոնստրուկտիվ քայլ էր արել, որը հեշտացնում է մերձավորարևելյան հանգուցալուծման որոնումը ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի մասնակցությամբ:

Դա տեղի ունեցավ այն ժամանակ, երբ ուրվագծվում է դրական միտում դեպի մյուս ռեգիոնալ կոնֆլիկտների քաղաքական կարգավորումը, մի շարք դեպքերում՝ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի օժանդակությամբ:

Մենք խոր ափսոսանք ենք հայտնում պատահածի առթիվ և արտահայտում մեր համերաշխությունը Պաղեստինի ազատագրման կազմակերպության հետ:

Պարոնայք: Համապարփակ միջազգային անվտանգության կոնցեպցիան խարսխվում է ՄԱԿ-ի կանոնադրության սկզբունքների վրա և բխում բոլոր պետությունների համար **միջազգային իրավունքի** պարտադիր լինելուց:

Հանդես գալով միջազգային հարաբերությունների ապառազմականացման օգտին, մենք ուզում ենք ծագող պրոբլեմները լուծելիս գերիշխող տեսնել քաղաքական-իրավական մեթոդները:

Մեր իդեալն իրավական պետությունների համաշխարհային ընկերակցությունն է, որոնք իրենց արտաքին քաղաքական գործունեությունն էլ են ենթարկում իրավունքին:

Դրա իրականացմանը կնպաստեին միջազգային իրավունքի սկզբունքներն ու նորմաները միատեսակ ըմբռնելու պայմանավորվածությունը ՄԱԿ-ի շրջանակներում, դրանց համակարգումը՝ հաշվի առնելով նոր պայմանները, ինչպես նաև իրավական նորմաների մշակումը համագործակցության նոր ոլորտների համար: Միջուկային դարի պայմաններում միջազգային իրավունքի գործունեությունը պետք է

հենվի ոչ թե կատարման հարկադրանքի վրա, այլ պետությունների շահերի հաշվեկշիռն արտացոլող նորմաների վրա:

Ծակատագրի օբյեկտիվ ընդհանրության առավել մեծ գիտակցման հետ մեկտեղ դա կստեղծեր յուրաքանչյուր պետության անկեղծ շահագրգռվածություն իրեն միջազգային իրավունքով ինքնասահմանափակելու նկատմամբ:

Միջազգային հարաբերությունների դեմոկրատացումը միայն համաշխարհային միության բոլոր անդամների պրոբլեմների լուծման առավելագույն ինտերնացիոնալացումը չէ: Դա նաև այդ հարաբերությունների **հումանիզացումն է:**

Միջազգային կապերը միայն այն դեպքում կարող են լիովին արտացոլել ժողովուրդների բուն շահերը և հուսալիորեն ծառայել նրանց ընդհանուր անվտանգության գործին, երբ ամեն ինչի կենտրոնում լինեն մարդը, նրա հոգսերը, իրավունքները ու ազատությունները:

Այս համատեքստում ես կկամենայի իմ երկրի ձայնը միացնել քառասուն տարի առաջ՝ 1948 թվականի դեկտեմբերի 10-ին ընդունված մարդու իրավունքների համընդհանուր դեկլարացիայի նշանակության բարձր գնահատականներին:

Այդ փաստաթուղթը այսօր էլ է հրատապ: Նրանում նույնպես արտացոլված է ՄԱԿ-ի նպատակների ու խնդիրների համապարփակ բնույթը:

Դեկլարացիայի հոբելյանը նշելու պետության համար ամենաահարմար եղանակը սեփական տանը պայմանների բարելավումն է իր քաղաքացիների իրավունքների կիրառման ու պաշտպանության համար:

Նախքան ձեզ հաղորդելը, թե այդ իմաստով մենք հատկապես ինչ ենք ձեռնարկել վերջին ժամանակներս, ես կկամենայի ասել հետևյալը.

Մեր երկիրը հիրավի հեղափոխական վերելք է ապրում: Վերակառուցման պրոցեսը թափ է առնում: Մենք սկսեցինք վերակառուցման տեսական կոնցեպցիայի մշակումից: Պետք էր գնահատել պրոբլեմների բնույթն ո մասշտաբները, իմաստավորել անցյալի դասերը և դա արտահայտել քաղաքական հետևությունների ու ծրագրերի ձևով: Դա արվեց:

Տեսական աշխատանքը, տեղի ունեցողի վերաիմաստավորումը, քաղաքական դիրքորոշումների լրամշակումը, հարստացումը, ճշգրտումն ավարտված չեն: Դրանք շարունակվում են:

Բայց սկզբունքայնորեն կարևոր էր սկսել հենց ընդհանուր համադրույթից, որը, ինչպես այժմ արդեն հաստատում է նաև անցած տարիների փորձը, ամբողջությամբ վերցրած, ճիշտ դուրս եկավ, և այն այլընտրանք չունի:

Հասարակությանը վերակառուցման պլանների իրականացման մեջ ներգրավելու համար պահանջվեց այն դեմոկրատացնել իրապես: Դեմոկրատացման նշանաբանի ներքո վերակառուցումը այժմ ընդգրկել է և քաղաքականությունը, և էկոնոմիկան, և հոգևոր կյանքը, գաղափարախոսությունը:

Մենք արմատական տնտեսական ռեֆորմ ծավալեցինք: Փորձ կուտակեցինք: Եվ նոր տարվանից արդեն ամբողջ ժողովրդական տնտեսությունը փոխադրում ենք աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների: Դա միաժամանակ նշանակում է արտադրահարաբերությունների խոր վերակառուցում և սոցիալիստական սեփականության հիմքում ընկած հսկայական ներուժի իրացում:

Դիմելով նման համարձակ հեղափոխական վերափոխումների, մենք հասկանում էինք, որ սխալներ էլ կլինեն, դիմադրություն էլ կառաջանա, նորությունը կծնի նոր պրոբլեմներ, կանխատեսում էինք նաև արգելակման հնարավորությունը առանձին օղակներում:

Սակայն երաշխիքն այն բանի, որ վերակառուցման ընդհանուր պրոցեսը անշեղորեն առաջ կընթանա և թափ կառնի, իշխանության և կառավարման ամբողջ համակարգի դեմոկրատական խոր ռեֆորմն է:

Սահմանադրության լրացումների մասին ՍՍՀՄ Գերագույն սովետի վերջերս ընդունած որոշումներով, ընտրությունների մասին օրենքի ընդունումով, մենք եզրափակեցինք քաղաքական ռեֆորմի պրոցեսի առաջին փուլը:

Եվ առանց որևէ դադարի թևակոխեցինք նրա երկրորդ փուլը, երբ կարևորագույն խնդիրն է լինելու կենտրոնի և հանրապետությունների փոխգործակցության լրամշակումը, ազգամիջյան հարաբերությունների կարգավորումը լենինյան ինտերնացիոնալիզմի սկզբունքներով, որոնք մեզ պատգամել է մեծ հեղափոխությունը, և դրա հետ մեկտեղ՝ սովետների իշխանության վերակազմումը տեղերում:



Մենք հսկայական աշխատանք ունենք կատարելու: Միաժամանակ հարկ կլինի լուծել խոշորագույն խնդիրներ:

Մենք լի ենք վստահությամբ: Մենք ունենք վերակառուցման և տեսություն, և քաղաքականություն, և ավանգարդային ուժ՝ կուսակցությունը, որը նույնպես վերակառուցվում է նոր խնդիրներին և ամբողջ հասարակության մեջ տեղի ունեցող արմատական փոփոխություններին համապատասխան:

Եվ գլխավորը՝ մեր մեծ երկրի բոլոր ժողովուրդները և քաղաքացիների բոլոր սերունդները հանդես են գալիս վերակառուցման օգտին:

Մենք հիմնավորապես խորացել ենք իրավական սոցիալիստական պետություն կառուցելու գործում: Նախապատրաստվել կամ ավարտման փուլում են գտնվում մի ամբողջ շարք նոր օրենքներ:

Ծատերը ուժի մեջ կմտնեն արդեն 1989 թվականին և, մենք հույս ունենք, կհամապատասխանեն անձի իրավունքների ապահովման տեսակետից ամենաբարձր ստանդարտներին:

Սովետական դեմոկրատիան ամուր նորմատիվ հիմք է ստանում: Խոսքը այնպիսի ակտերի մասին է, ինչպես խղճի ազատության, հրապարակայնության, հասարակական միավորումների ու կազմակերպությունների, շատ այլ բաների մասին օրենքները:

Կալանավայրերում չկան իրենց քաղաքական ու կրոնական համոզմունքների համար դատապարտված մարդիկ:

Նախատեսվում է նոր օրենքների նախագծերում մտցնել լրացուցիչ երաշխիքներ, որոնք բացառեին այդ շարժառիթներով հետապնդման բոլոր ձևերը:

Դա, հասկանալի է, չի վերաբերում նրանց, ովքեր իրական քրեական կամ պետական հանցագործություն են կատարել (լրտեսություն, դիվերսիա, ահաբեկչություն և այլն), քաղաքական ու աշխարհայացքային ինչպիսի տեսակետներ էլ որ նրանք դավանեին:

Պատրաստ է և իր հերթին է սպասում քրեական օրենսգրքի փոփոխությունների նախագիծը: Վերանայվում են մասնավորապես այն հոդվածները, որոնք կապված են պատժի առավելագույն չափի գործադրման հետ:

Մարդասիրական ոգով է լուծվում մեկնելու և մուտք գործելու պրոբլեմը, այդ թվում և ազգականների հետ վերամիավորվելու դրդապատճառներով արտասահման մեկնելու հարցը:

Ինչպես հայտնի է մերժումների պատճառներից մեկը քաղաքացիների իրազեկությունն է գաղտնիքներին. Նախապես մտցվում են գաղտնիքների իմացության վաղեմության խիստ հիմնավորված ժամկետներ:

Համապատասխան հիմնարկներում կամ ձեռնարկությունում աշխատանքի ընդունվելիս ամեն ոք իրազեկ կդարձվի այդ կանոնին: Ծագող վեճերը կարող են բողոքարկվել օրենքի համաձայն:

Դրանով իսկ վերացվում է այսպես կոչված «մերժվածների» պրոբլեմը:

Մենք մտադիր ենք ընդլայնել Սովետական Միության մասնակցությունը մարդու իրավունքների վերահսկման մեխանիզմներին ՄԱԿ-ում և համաեվրոպական պրոցեսի շրջանակներում: Մենք այն կարծիքին ենք, որ մարդու իրավունքների բնագավառին վերաբերող համաձայնագրերի մեկնաբանման ու կիրառման նկատմամբ Հաագայի միջազգային դատարանի իրավազորությունը պետք է պարտադիր լինի բոլոր պետությունների համար:

Հելսինկիի պրոցեսի համատեքստում ենք քննարկում նաև Սովետական Միության համար հաղորդումներ տվող բոլոր օտարերկրյա ռադիոկայանների հաղորդումների խանգարումների վերացումը:

Ընդհանրապես մեր հավատամքը այսպիսին է. քաղաքական պրոբլեմները լուծել միայն քաղաքական միջոցներով, մարդկային պրոբլեմները՝ միայն մարդկայնորեն:

## III.

Այժմ ամենագլխավորի՝ **զինաթափման** մասին, առանց որի գալիք դարի ոչ մի պրոբլեմ չի կարող լուծվել:

Միջազգային զարգացումն ու շփումը խեղված են սպառազինությունների մրցավազքի և մտածողության ռազմականացման հետևանքով:

Սովետական Միությունը 1986 թվականի հունվարի 15-ին, ինչպես հայտնի է, առաջ քաշեց միջուկազերծ աշխարհ կառուցելու ծրագիր: Դրա մարմնավորումը բանակցություններ վարելու իրավական դիրքորոշումներով արդեն տվել է իր նյութեղեն պտուղները:

Վաղը լրանում է միջին ու փոքր հեռահարության հրթիռների վերացման պայմանագրի ստորագրման առաջին տարեդարձը: Ես էլ ավելի մեծ գոհունակությամբ եմ ասում այն մասին, որ այդ պայմանագրի իրացումը՝ հրթիռների ոչնչացումը, նորմալ է ընթանում, վստահության և գործարարության մթնոլորտում:

Թվում էր թե կասկածելիության և թշնամանքի անխոցելի պատի մեջ ահա այդպիսի ճեղք առաջացավ: Եվ մեր աչքի առաջ ծագում է պատմական նոր իրողություն՝ **գերզինվածության սկզբունքից** շրջադարձ **դեպի պաշտպանության համար խելամիտ բավարարության սկզբունքը:**

Մենք ներկա ենք անվտանգության ապահովման նոր մոդելի կազմավորման առաջին նշույլներին՝ ոչ թե սպառազինությունների կուտակման միջոցով, ինչպես եղել է գրեթե միշտ, այլ, ընդհակառակն, փոխզիջման հիման վրա դրանց կրճատման հաշվին:

Սովետական ղեկավարությունը որոշել է մեկ անգամ էլ ցուցադրել իր պատրաստակամությունը ՝այդ առողջ պրոցեսը ամրապնդելու ոչ միայն խոսքով, այլև **գործով:**

Այսօր ես կարող եմ ձեզ հաղորդել հետևյալը. Սովետական Միությունը որոշում է ընդունել կրճատել իր զինված ուժերը:

Առաջիկա երկու տարում նրանց թվակազմը կնվազի 500 հազարով, էապես կկրճատվի նաև սովորական սպառազինությունների ծավալը: Այդ կրճատումները կկատարվեն **միակողմանի կարգով, անկախ** Վիեննայի հանդիպման մանդատով անցկացվող բանակցություններից:

Վարշավայի պայմանագրի գծով մեր դաշնակիցների հետ համաձայնեցնելով՝ մենք որոշում ենք կայացրել մինչև 1991 թվականը ԳԴՀ-ից, Չեխոսլովակիայից և Հունգարիայից դուրս բերել և կազմացրել վեց տանկային դիվիզիա:

Այդ երկրներում գտնվող սովետական զորքերի խմբերից նաև դուրս կբերվեն դեսանտագրոհային և մի շարք այլ, ներառյալ դեսանտագետանցային միավորումներ ու զորամասեր՝ սպառազինության ու մարտական տեխնիկայի հետ միասին:

Այդ երկրներում գտնվող սովետական զորքերը կկրճատվեն հիսուն հազար մարդով, իսկ սպառազինությունը՝ հինգ հազար տանկով:

Մեր դաշնակիցների տարածքում առայժմ մնացող սովետական բոլոր դիվիզիաները վերակազմավորվում են: Նրանց տրվում է այսօրվանից տարբերվող այնպիսի կառուցվածք, որը նրանցից տանկերը խոշոր չափով հանվելուց հետո կդառնա միանշանակ պաշտպանողական:

Միաժամանակ մենք կկրճատենք զորքերի անձնակազմի թիվը և սպառազինությունների քանակը ՍՍՀՄ-ի նաև եվրոպական մասում:

Իսկ ընդհանուր առմամբ մեր երկրի այդ մասում և մեր եվրոպական դաշնակիցների տարածքում սովետական զինված ուժերը կնվազեցվեն 10 հազար տանկով, 8,5 հազար հրետանային համակարգով, 800 մարտական ինքնաթիռով:

Այդ երկու տարում մենք զինված ուժերի խմբավորումը էապես կպակասացնենք երկրի նաև ասիական մասում:

Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության կառավարության հետ համաձայնեցնելով, այնտեղ ժամանակավորապես գտնվող սովետական զորքերի զգալի մասը կվերադառնա հայրենիք:

Ընդունելով սկզբունքային կարևորություն ունեցող այս որոշումները, սովետական ղեկավարությունն արտահայտում է ժողովրդի կամքը, որն զբաղված է իր ամբողջ սոցիալիստական հասարակության խոր վերափոխումով:

Մենք երկրի պաշտպանունակությունը կպահենք բանական և հուսալի բավարարության մակարդակում, որպեսզի ոչ մեկի մեջ գայթակղություն չառաջանա ոտնձգություն կատարելու ՍՍՀՄ-ի և նրա դաշնակիցների անվտանգության վրա:

Մեր այս քայլով, ինչպես և միջազգային հարաբերությունների դեմոկրատացման օգտին մեր ամբողջ գործունեությամբ մենք կցանկանայինք համաշխարհային



հանրության ուշադրությունը հրավիրել նաև մյուս հրատապ պրոբլեմի՝ **սպառազինությունների էկոնոմիկայից զինաթափման էկոնոմիկայի** անցնելու պրոբլեմի վրա:

Արդյոք ռեա՞լ է ռազմական արտադրության կոնվերսիան: Ես արդեն առիթ ունեցել եմ այդ մասին խոսելու: Մենք համարում ենք, որ, այո, ռեալ է:

Իր կողմից Սովետական Միությունը պատրաստ է՝

— տնտեսական ռեֆորմի շրջանակներում մենք պատրաստ ենք մշակելու և ներկայացնելու կոնվերսիայի մեր ներքին պլանը.

— 1989 թվականի ընթացքում փորձի կարգով պատրաստել երկու-երեք պաշտպանական ձեռնարկությունների կոնվերսիայի պլանները.

— հրապարակել ռազմական արդյունաբերությունից ազատվող մասնագետներին աշխատանքի տեղավորելու, ինչպես նաև այդ արդյունաբերության սարքավորումները, շենքերն ու կառուցվածքները քաղաքացիական արտադրության մեջ օգտագործելու մեր փորձը:

Ցանկալի է, որ բոլոր պետությունները, առաջին հերթին ռազմական խոշոր տերությունները ՄԱԿ-ին ներկայացնեն այդ հարցի վերաբերյալ իրենց ազգային պլանները:

Նաև օգտակար կլիներ կազմել գիտնականների մի խումբ, նրան հանձնարարելով խորությամբ վերլուծել կոնվերսիայի պրոբլեմներ ամբողջությամբ վերցրած և առանձին երկրների ու ռեգիոնների առնչությամբ՝ ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարին զեկուցագիր ներկայացնելու համար:

Այնուհետև այդ հարցը քննության առնել գլխավոր ասամբլեայի նստաշրջանում:

## IV.

Եվ, վերջապես, գտնվելով ամերիկյան հողում, բայց նաև հասկանալի այլ պատճառներով, ես չեմ կարող չդիմել այդ մեծ երկրի հետ մեր հարաբերությունների թեմային: Այս երկրի հյուրընկալությունը ես լիովին կարողացել եմ գնահատել ուղիղ մեկ տարի առաջ Վաշինգտոն կատարած հիշարժան այցի ժամանակ:

Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների հարաբերությունները հինգուկես տասնամյակի են հասնում: Փոխվում էր աշխարհը, փոխվում էին նաև այդ հարաբերությունների բնույթը, դերը, տեղը համաշխարհային քաղաքականության մեջ:

Այդ հարաբերությունները չափազանց երկար ժամանակ կառուցվում էին առճակատման, իսկ երբեմն էլ թշնամանքի՝ մերթ բացահայտ, մերթ սքողված նշանաբանով:

Սակայն վերջին տարիներս ամբողջ աշխարհում կարողացան թեթևացած շունչ քաշել Մոսկվայի ու Վաշինգտոնի փոխհարաբերությունների էության և մթնոլորտի մեջ տեղի ունեցած դրական փոփոխությունների շնորհիվ:

Ոչ ոք մտադրություն չունի թերագնահատելու տարաձայնությունների լրջությունը և չկարգավորված պրոբլեմների դժվարությունները; Սակայն մենք արդեն անցել ենք փոխըմբռնում ուսուցանելու տարրական դպրոցը և սեփական ու ընդհանուր շահերում հանգուցալուծումների շերտիկը:

ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը ստեղծել են հրթիռամիջուկային խոշորագույն զինանոցները և հենց նրանք կարողացան, առարկայորեն գիտակցելով իրենց պատասխանատվությունը, լինել առաջինները՝ համաձայնագիր կնքելով այդ սպառազինությունների կրճատման և դրանց մի մասի ֆիզիկական ոչնչացման մասին, սպառազինություններ, որոնք սպառնում էին ինչպես անձամբ իրենց, այնպես էլ բոլոր մյուսներին:

Երկու երկրներն էլ տիրում են ամենամեծ և ամենանուրբ ռազմական գաղտնիքներին: Բայց հենց նրանք դրեցին սպառազինությունների ինչպես ոչնչացման, այնպես էլ դրանց արտադրության սահմանափակման ու արգելքի փոխադարձ վերահսկողության հիմքը և զարգացնում են այդ վերահսկողության համակարգը;

Հենց նրանք են փորձ կուտակում ապագա երկկողմ և բազմակողմ համաձայնագրերի համար;

Մենք դա թանկ ենք գնահատում: Ընդունում և գնահատում ենք պրեզիդենտ

Ռոնալդ Ռեյգանի ու նրա վարչակազմի անդամների, ամենից առաջ պարոն Ջորջ Շուլցի ներդրած ավանդը:

Այս ամենը մի կապիտալ է, որ համատեղ ներդրվել է պատմական նշանակություն ունեցող ձեռնարկման մեջ: Այն չպետք է կորսվի կամ շրջանառությունից դուրս թողնվի:

ԱՄՆ-ի ապագա վարչակազմը նորընտիր պրեզիդենտ Ջորջ Բուշի գլխավորությամբ հանձինս մեզ կգտնի այնպիսի պարտնյորի, որը պատրաստ է առանց երկար պաուզաների, ընկրկողական շարժումների երկխոսությունը շարունակել իրատեսության, բացախոսության ու բարի կամքի ոգով, ձգտելով կոնկրետ արդյունքների հասնել օրակարգի առթիվ, որն ընդգրկում է սովետա-ամերիկյան հարաբերությունների և միջազգային քաղաքականության հանգուցային հարցերը:

Խոսքը նախ և առաջ վերաբերում է հետևողական առաջխաղացմանը դեպի ստրատեգիական հարձակողական սպառազինությունները 50 տոկոսով կրճատելու պայմանագրի կնքումը, ընդսմին պահպանելով հակահրթիռային պաշտպանության պայմանագիրը.

քիմիական զենքի վերացման կոնվենցիայի մշակմանը. այստեղ, ինչպես մեզ թվում է, նախադրյալներ կան 1989 թվականը դարձնելու վճռական.

Եվրոպայում սովորական սպառազինությունների և զինված ուժերի կրճատման շուրջ վարվող բանակցություններին:

Խոսքը նաև վերաբերում է տնտեսական, էկոլոգիական, հումանիստական պրոբլեմներին՝ ամենալայն առումով:

Միջազգային իրադրության մեջ դրական փոփոխությունները բնավ ճիշտ չէր լինի դասել միայն ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ակտիվին:

Սովետական Միությունը բարձր է գնահատում սոցիալիստական երկրների մեծ և յուրօրինակ ավանդը միջազգային իրադրության առողջացման պրոցեսում:

Վերակառուցման ընթացքում մենք մշտապես զգում ենք մյուս, ինչպես միջուկային, այնպես էլ ոչ միջուկային խոշոր պետությունների ներկայությունը:

Անփոխարինելի կարևոր կոնստրուկտիվ դեր են խաղում շատ երկրներ, այդ թվում՝ միջակ ու փոքր և, իհարկե, չմիանալու շարժումը, ինչպես նաև միջմայրցամաքային «վեցի խումբը»:

Մենք Մոսկվայում ուրախ ենք, որ իրենց ուսերին համընդհանուր պատասխանատվության բեռ վերցնելուն պատրաստ են ավելի ու ավելի մեծ թվով պետական, քաղաքական, կուսակցական ու հասարակական գործիչներ և հատկապես ցանկալի է նշել՝ գիտնականներ, մշակույթի գործիչներ, մասսայական շարժումների ու զանազան եկեղեցիների ներկայացուցիչներ, այսպես կոչված ժողովրդական դիվանագիտության ակտիվիստներ:

Այս առումով, կարծում եմ, ուշադրության է արժանի ՄԱԿ-ի հովանու ներքո կանոնավոր կերպով նաև հասարակական կազմակերպությունների ասամբլեաներ գումարելու գաղափարը:

Մենք հակված չենք հեշտացնելու աշխարհի դրությունը:

Այո, զինաթափման միտումը հուժկու ազդակ է ստացել, և այդ պրոցեսը սեփական իներցիա է ձեռք բերում: Բայց այդ պրոցեսը անշրջելի չի դարձել:

Այո, առճակատումից երկխոսության ու համագործակցության օգտին հրաժարվելու ձգտումը ուժգին է դրսևորվել: Բայց այդ ձգտումը բնավ ընդմիշտ չի ամրապնդվել միջազգային հարաբերությունների պրակտիկայում:

Այո, դեպի միջուկային զենքից ու բռնացումից զերծ աշխարհ տանող շարժումն ընդունակ է արմատապես վերափոխելու մոլորակի քաղաքական և հոգևոր դեմքը: Բայց արված են միայն ամենաառաջին քայլերը և այն էլ՝ անվստահության են հանդիպել որոշակի ազդեցիկ շրջաններում, բախվում են դիմադրության: Անցյալի ժառանգությունը և իներցիան շարունակում են գործել: Խոր հակասությունները և շատ կոնֆլիկտների արմատները դեռևս չեն վերացել:

Եվ մնում է մի այնպիսի հիմնակազմ փաստ, որ խաղաղ ժամանակաշրջանի ձևավորումը կընթանա սոցիալ-տնտեսական և քաղաքական տարբեր սիստեմների գոյության ու մրցակցության պայմաններում:



Սակայն մեր միջազգային ջանքերի իմաստը, նոր մտածողության հանգուցային դրույթներից մեկը հենց այն է, որ այդ մրցակցությանը տրվի ընտրության ազատությունը հարգելու և շահերի հաշվեկշռի պայմաններում բանական մրցության հատկանիշ:

Այդ դեպքում մրցակցությունը նույնիսկ օգտակար և արգասաբեր կդառնա համաշխարհային զարգացման տեսակետից:

Այլապես, եթե նրա գլխավոր բաղադրիչը, ինչպես մինչև հիմա, մնա սպառազինությունների մրցավազքը, ապա մրցակցությունը կլինի կործանարար:

Եվ այս բանը սկսել են ավելի ու ավելի լավ հասկանալ ավելի ու ավելի շատ մարդիկ ամբողջ աշխարհում՝ սկսած շարքայիններից մինչև լիդերները:

Հարգելի պարոն նախագահ, հարգելի պատվիրակներ:

Ես Միավորված ազգերի կազմակերպությունում իմ առաջին ելույթը ավարտում եմ նույն զգացումով, ինչով սկսել էի՝ սովետական ժողովրդի և համաշխարհային հանրության հանդեպ պատասխանատվության զգացումով:

Մենք հանդիպեցինք այնպիսի տարվա վերջին, որն այնքան շատ բան է նշանակել Միավորված ազգերի համար, և այնպիսի տարվա նախաշեմին, որից մենք բոլորս այնքան շատ բան ենք սպասում:

Ուզում ենք հավատալ, որ մեր հույսերին համահունչ կլինեն մեր համատեղ ջանքերը՝ վերջ տալու պատերազմների, առճակատման և ռեգիոնալ կոնֆլիկտների դարաշրջանին, բնության դեմ ուղղված ագրեսիային, ահաբեկչությանը, սովին ու աղքատությանը, ինչպես և քաղաքական ահաբեկչությանը:

Սա մեր ընդհանուր նպատակն է, և միայն համատեղ մենք կկարողանանք դրան հասնել:

Շնորհակալություն ձեզանից:

---

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ, ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ, ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ, ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԲՈԼՈՐ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ

Թանկագին ընկերներ։

Հենց նոր իմացա հանրապետության ժողովրդին հասած ծանր դժբախտության մասին։

Ինձ հաղորդեցին, որ տեղի է ունեցել չտեսնված ուժի երկրաշարժ, որն ունեցել է ողբերգական հետևանքներ՝ զոհվել են շատ մարդիկ։

Թե ինձ և թե ինձ հետ այստեղ գտնվող բոլոր սովետական ներկայացուցիչներին մինչև հոգու խորքը ցնցեց այդ ծանր զգացումը։

Հայաստանի ժողովրդի համար այս դժվարին ժամին ես խոր կարեկցանք եմ հայտնում ձեզ և ցավակցություն՝ մերձավորներ կորցրած ընտանիքներին։

Ես հենց նոր խոսեցի ընկեր Ն. Ի. Ռիժկովի՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի հետ։ ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի որոշմամբ, նրա գլխավորությամբ ստեղծված է հանձնաժողով, որն արդեն ձեռնամուխ է եղել դժբախտության մատնված մարդկանց ամբողջ անհրաժեշտ օգնությունը ցույց տալու, շուտափույթ գործնական միջոցների ձեռնարկմանը։

Թանկագին ընկերներ, դուք կարող եք վստահ լինել, որ փորձության այս պահին ամբողջ երկիրը ձեզ հետ է։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար,<br>ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության<br>նախագահ՝ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎ

*Քաղ. Նյու Յորք, 7 դեկտեմբերի 1988 թ.*

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ. ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ԿՈՂՄԻՑ

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը խոր ցավակցություն են հայտնում դեկտեմբերի 7-ին Հայաստանի մի շարք հյուսիսային շրջաններում տեղի ունեցած և ավերածությունների ու մարդկային զոհերի պատճառ դարձած երկրաշարժի հետևանքով զոհվածների ընտանիքներին, հարազատներին ու մերձավորներին և բոլոր տուժածներին։*

*Կառավարական հանձնաժողովին, համապատասխան մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարված է Հայկական ՍՍՀ-ի հանրապետական մարմինների հետ համատեղ բոլոր անհրաժեշտ միջոցները ձեռնարկել երկրաշարժի հետևանքները շուտափույթ վերացնելու և տուժածներին օգնություն ցույց տալու համար։*

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ

ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ, ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ԿՈՂՄԻՑ

*Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը խոր վշտով հայտնում են, որ 1988 թվականի դեկտեմբերի 7-ին Լենինականում, Կիրովականում, Սպիտակում, Ստեփանավանում և հանրապետության մի շարք այլ շրջաններում տեղի ունեցած երկրաշարժի հետևանքով կան բազմաթիվ մարդկային զոհեր։*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը խոր ցավակցություն են հայտնում զոհվածների ընտանիքներին ու հարազատներին, հանրապետության բոլոր աշխատավորներին։*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը միութենական մարմինների հետ համատեղ բոլոր միջոցները ձեռնարկում են զոհվածների և տուժածների ընտանիքներին օգնություն ցույց տալու, տարերային աղետի հետևանքները վերացնելու համար։*

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ, ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ

# ԴԻՄՈՒՄԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻՆ

*Թանկագին հայրենակիցներ,*

*Եղբայրներ ու քույրեր։*

*Մեր ժողովրդին ծանր փորձություն բաժին ընկավ։ Դժբախտություն եկավ մեր տունը։ Դեկտեմբերի 7-ին չտեսնված ուժի երկրաշարժը ավերածության հետքեր թողեց, ողբերգական հետևանքներ ունեցավ։ Տարերային աղետը առանձնակի դաժանությամբ դրսևորվեց հանրապետության երկրորդ մեծ քաղաք Լենինականում, Կիրովական քաղաքում, Սպիտակի, Ստեփանավանի, Գուգարքի, Ամասիայի, Ղուկասյանի, Արագածի և դրանց հարող շրջաններում։*

*Այդ ամենի հետևում մարդկային մեծ ողբերգությունն է, հսկայական նյութական վնասը։ Կան բազմահազար զոհեր և զգալի ավերածություններ։ Գրեթե լրիվին ավերված է Սպիտակ քաղաքը։ Տարերային աղետի գոտում շարքից դուրս են եկել կոմունիկացիաները, ընդհատվել է հեռախոսային կապը, դադարել է էլեկտրաէներգիայի, ջրի, գազի մատակարարումը։*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, հանրապետության Գերագույն սովետի նախագահությունը և Մինիստրների խորհուրդը խորը կարեկցանք և ցավակցություն են հայտնում զոհվածների ընտանիքներին ու հարազատներին, տուժածներին, մեր ամբողջ ժողովրդին։*

*Որոշում է ընդունված դեկտեմբերի 9-ը և 10-ը հայտարարել համազգային սգո օրեր։*

*Թանկագին ընկերներ։*

*Հայ ժողովուրդը իր պատմության բոլոր ժամանակներում հոգու ուժ, արիություն, տոկունություն է դրսևորել։ Նա կարողացավ դիմանալ ճակատագրի բոլոր հարվածներին, բոլոր դժվարին փորձություններին։*

*Մեր թիկունքում մեր ժողովրդի պատմությունն է, մեր նախնիների աննկուն բնավորությունը։*

*Հանրապետության բոլոր աշխատավորները՝ անկախ իրենց ազգային պատկանելությունից, կոմունիստները և անկուսակցականները, ճերմակահեր վետերանները և երիտասարդները տարերային աղետի առաջին իսկ րոպեներից իրենց դրսևորեցին որպես իսկական հայրենասերներ։ Կուսակցության Երևանի քաղկոմի կոչով տուժածներին օգնության են կանգնել հազարավոր կամավորներ։ Հազարավոր մարդիկ դարձել են կամավոր դոնորներ, իրենց կյանքի մի մասնիկը տալով հայրենակիցների կյանքը փրկելու համար։*

*Հանրապետության ղեկավարությունը բոլոր միջոցները ձեռնարկում է փլատակների տակ մնացած մարդկանց դուրս բերելու, տուժածներին սննդով, հագուստով, դեղորայքով ապահովելու համար։ Մեր որդիները, սովետական բանակի ռազմիկները առաջիններից էին, որ շտապեցին օգնելու բնակչությանը. նրանք ցուցաբերում են անձնվիրություն և ազնվություն, իրենց ամենաակտիվ մասնակցությունը բերելով փրկարար աշխատանքներին։*



*Հանրապետության համար ծանրագույն պահին անգնահատելի բարոյական աջակցություն եղան Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովի անկեղծ, մարդասիրական խոսքերը։ Հեռավոր Նյու Յորքից ստացված հեռագիրը մեզ ուժ տվեց, վստահություն ներշնչեց։ Հայաստանում երկրաշարժի կապակցությամբ Մ. Ս. Գորբաչովը ընդհատեց իր այցը և վերադարձավ հայրենիք։ Տարերային աղետը ողբերգություն է ոչ միայն Հայաստանի ժողովուրդների համար, այլև ամբողջ սովետական ժողովրդի համար։*

*Երկրաշարժի հետևանքները վերացնելու և տուժածներին օգնություն ցույց տալու ընդհանուր միութենական մասշտաբի աշխատանքների կոորդինացման համար ստեղծված է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողով՝ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովի գլխավորությամբ։ Հանձնաժողովի կազմի մեջ են ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ն. Ն. Սլյունկովը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր Դ. Տ. Յազովը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալներ Յու. Պ. Բատալինը և Լ. Ա. Վորոնինը։*

*Հանձնաժողովի անդամները Երևան ժամանելուն պես մեկնեցին աղետի շրջան և ձեռնամուխ եղան աշխատանքին։*

*Գործելու է նաև կառավարական հանձնաժողով՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ Բ. Ե. Շչերբինայի գլխավորությամբ։*

*Այս ծանր, սգալի օրերին մենք կրկին կարողացանք համոզվել, որ ապրում ենք եղբայր ժողովուրդների համերաշխ ընտանիքում։ Երկրաշարժը հանրապետության բնակչությանը հանկարծակիի բերեց։ Բայց դժբախտության մեջ մենք միայնակ չմնացինք, մեզ հետ է ամբողջ երկիրը, հանրապետությունների մեծ Միությունը, որի նյութական և բարոյական աջակցությունը մենք զգացինք մեզ հասած դժբախտության առաջին իսկ րոպեից։*

*Մոսկվայից արդեն ժամանել և աշխատանքին ձեռնամուխ է եղել բժիշկների, վիրաբույժների մի մեծ խումբ, որը գլխավորում է ՍՍՀՄ առողջապահության մինիստր Ե. Ի. Չազովը։ Տարերային աղետից տուժած շրջանների համար հատկացվում են հսկայական միջոցներ, շինանյութեր, ջեռուցիչ համակարգեր, հավաքովի տներ, տաք հագուստ, օթևանից զրկված մարդկանց ժամանակավոր բնակության համար վրաններ։ Շտապ կարգով միջոցներ են ձեռնարկվում տների, բնակարանների վերականգնման համար։ Այդ նպատակով կազմված են շինջոկատներ երկրի բոլոր հանրապետությունների ներկայացուցիչներից։ Սովետական Հայաստանի աշխատավորները միշտ էլ արձագանքել են մյուսների դժբախտությանը։ Չէ որ ուրիշի դժբախտություն չի լինում։ Իսկ այսօր ամբողջ երկիրն է շտապում մեզ ցույց տալու օգնություն։ Դա պետք է ուժ տա մեզ, ամրապնդի մեր ոգին աննախադեպ աղետի դեմ հանդիման։*

*Մենք վստահ ենք, հայ ժողովուրդը, Սովետական Հայաստանի աշխատավորները կդիմանան ճակատագրի այս հարվածին, փորձությունից դուրս կգան էլ ավելի համախմբված, էլ ավելի իմաստուն, էլ ավելի տոկուն։*

*Եվ թող ավերակներից հառնող քաղաքները դառնան տարերային աղետի զոհերի հուշարձանը։*

*Արիության ժամն է խփել մեր ժամացույցով, և թող արիությունը մեզ չլքի։*

| ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄ | ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ | ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ |
|---|---|---|

# Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ՀԱՐՑԱԶՐՈՒՅՑԸ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹՅԱՆ ԹՂԹԱԿԻՑՆԵՐԻ ՀԵՏ

Երևանից մեկնելուց առաջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Մ. Ս. Գորբաչովը հարցազրույց ունեցավ կենտրոնական հեռուստատեսության և Հայաստանի հեռուստատեսության թղթակիցների հետ:

**Հարց:** Միխայիլ Սերգեևիչ, Դուք ի՞նչ համոզման եկաք աղետի շրջաններ կատարած ուղևորությունից:

**Մ. Ս. Գորբաչով:** Ծանր արհավիրք է... Պարզապես՝ ողբերգություն: Ես այնքան մարդիկ տեսա դժբախտության մեջ, մերձավորներին, ամբողջ ընտանիքներ կորցրած մարդիկ: Այն ամենը, ինչ տեսա այս երկու օրում, պարզապես ցնցեց ինձ:

Մարդկայնորեն դժվար է դրան դիմանալ, պարզապես անտանելի է: Եվ ես մեկ անգամ էլ եմ ուզում ղեկավարության անունից, իմ կողմից, մեր ամբողջ ժողովրդի կողմից ամենաանկեղծ, խոր կարեկցանք արտահայտել այդպիսի փորձանքի մեջ ընկած ընտանիքներին, ամբողջ հայ ժողովրդին: Եվ անմիջապես ասել. նրանք արդեն զգացել են, որ մեր մարդիկ ամեն ինչ շատ մոտ են ընդունում իրենց սրտին: Ամբողջ երկիրն է ոտքի ելել: Յուրաքանչյուրը պատրաստ է ամեն ինչ անել օգնության գալու համար:

Ծանր զգացումներ են, ես ուղղակի ցնցված եմ այն ամենից, ինչ տեսել եմ: Դե, մենք ահա այժմ եղանք 20 հազարանոց մի ոչ մեծ քաղաքում՝ Սպիտակում: Ամբողջությամբ ավերված է: Լենինականը, դե, գրեթե ամբողջովին է ավերված: Այս ամենը շատ ծանր է: Բայց ես այստեղ իմացա, թե ինչպես են ամենադժվարին, առաջին գիշերը, առաջին ժամերին, երբ Լենինական քաղաքը կտրված էր, օդանավակայանը քարուքանդ, երկաթուղին այլևս չէր աշխատում, խճուղին էլ էր քարուքանդ եղել, այդ իրադրության մեջ Երևանը՝ բժիշկները, բանվորները, շինարարները, երիտասարդությունը, ուսանողները, հատկապես բժշկական ֆակուլտետների, անմիջապես բոլորը մեկնեցին այնտեղ, որպեսզի օգնության հասնեն մարդկանց: Օդաչուները բացարձակ մթության մեջ էին վայրէջք կատարում, վերցնում ծանր վիրավորներին և տեղափոխում, այստեղ նրանց վիրահատում էին, կյանք փրկում: Եվ հիմա ես տեսնում եմ ամբողջ երկիրը այնպիսի խոր սրտացավությամբ, այնպիսի անկեղծությամբ է արձագանքում մեր այս ընդհանուր դժբախտությանը, և հպարտություն եմ զգում մեր բոլոր մարդկանց համար: Նշանակում է, որքան շատ բան կա մեր ժողովուրդների մեջ ամփոփված, ինչպիսի հսկայական բարոյական ուժ ունեն նրանք:

Ես պետք է ասեմ, որ հանձնաժողովը Ն. Ի. Ռիժկովի ղեկավարությամբ, Ն. Ն. Սլյունկովի, Դ. Տ. Յազովի, ընկեր Ռիժկովի երեք տեղակալների, Հայաստանի հանրապետության ղեկավարության մասնակցությամբ արդեն մեծ աշխատանք է կատարել, բոլոր ճանապարհները բաց են: Հիմա տեխնիկան, ամբողջ օգնությունը, բոլոր ռեսուրսները գալիս են, ամեն ինչ կա: Այժմ վճռական նշանակություն կունենա գործի կազմակերպումը: Հարկավոր է նախ և առաջ օգնել ավելի արագ բացելու այս փլվածքները, որտեղ դեռ շատ ողջ մարդիկ կան: Չէ որ ամեն օր այնտեղից մարդիկ են ազատում: Ես նրանցից մի քանիսի հետ հանդիպել եմ: Ուստի առաջին խնդիրը, որ առաջադրված է, առաջինը, որ արվում է, դեռ ողջ մարդկանց փրկելն է: Նրանց, ովքեր զոհվել են, նույնպես հարկավոր է մարդավայել հանել, հրաժեշտ տալ: Չէ որ դա հասկանալի է:

Այժմ, ժամը 8-ի կողմերը այստեղ կլինի 700 ամբարձիչ, էլի մեկ օր հետո կլինի 900 ամբարձիչ, այս ամենը մասնատելու համար:

Այժմ ամեն ինչ արդեն գործարար փուլ է թևակոխել: Աշխատում են օր ու գիշեր:



Վերականգնվում է էներգամատակարարումը, ջուր է քաշվում, հարկավոր է տաքացնել այն տները, որ մնացել են: Այժմ 300 հազար բնակչության համար տաք վրաններ են բերվել, որպեսզի առայժմ տեղավորեն մարդկանց: Իհարկե, հարկավոր է հատկապես հոգ տանել երեխաների մասին, կանանց մասին: Դրա համար էլ այստեղ, Հայաստանում, Վրաստանում, Ստավրոպոլի երկրամասում, Կուբանում տասնյակ հազարավոր տեղեր են այժմ ազատված պանսիոնատներում, առողջարաններում, և նրանց սպասում են այնտեղ: Եվ արդեն այժմ սկսել են Լենինականից ու Սպիտակից ուղարկել: Նրանք մեկնում են դասարաններով, ուսուցիչների, մայրերի հետ: Այնտեղ, որտեղ հարկավոր է օգնել երեխաներին փրկելու համար:

**Հարց:** Ես կարծում եմ, Միխայիլ Սերգեևիչ, հարկավոր է, որ օգնության ահա այս հորդառատ գետը մի տեսակ բարակ առուների նման ճյուղավորվի և հասնի յուրաքանչյուրին:

**Մ. Ս. Գորբաչով:** Այո: Դուք ճիշտ եք, երեկ մենք այդ հարցը հատուկ քննարկեցինք: Որքան բան է ուղարկվել այստեղ, ընդ որում շատերը, առանց հարցնելու, ուղարկում են անհրաժեշտ բեռներ, դեղորայք, պարենամթերք, տաք հագուստ՝ այնպիսի չափերով է ամեն ինչ գալիս, որ այժմ ընդունակ չեն անգամ այդ ամենն ընդունել: Պայմանավորվեցինք, որ շտաբը հատուկ պետք է կապվի հանրապետությունների հետ, որպեսզի նրանք նախապես համաձայնեցնեն: Դե, այժմ պարենամթերք այստեղ կա, հաց թխում են, ջրով ապահովված են, վրաններով էլ: Բուժօգնությունը շարունակվում է:

Ես պետք է ասեմ, գուցեև առավել հիմտորեն գործել են բժիշկները՝ մինիստր Չազովի գլխավորությամբ: Կազմակերպվածությունն ավելի ու ավելի է մեծանում: Այս շրջանները փակել են, որովհետև ժողովուրդը շատ է, և հասկանալի պատճառներով: Մերձավորները, հարազատներն էին այստեղ գալիս, իսկ դա խանգարում էր աշխատանքների ծավալմանը: Այժմ ամեն ինչ ձեռքերն են վերցրել: Ես կարծում եմ, այժմ ավելի մեծ կարգուկանոն կա, և արդյունքներն ավելի արագ կերևան: Իհարկե, մարդկանց հետաքրքրում է քաղաքների հետագա ճակատագիրը: Այս հարցը կշոշափվել է ու քննարկվել: Իհարկե, մենք պետք է վերածնենք այդ քաղաքները: Եվ դա ես երկրի ղեկավարության անունից արդեն ասել եմ մարդկանց բոլոր քաղաքներում, որ նրանք իմանան: Դա նրանց վաղնջական հողն է, այստեղ արմատներն են, այստեղ ապրել են բոլոր սերունդները: Եվ մեզ հասկանալի է, որ մարդիկ պետք է դրա պատասխանն ստանային: Ի դեպ, Ն. Ի. Ռիժկովը երկու օր առաջ այստեղ էր հրավիրել բոլոր հանրապետությունների ներկայացուցիչներին, և նրանք պարտավորվել են, ընդ որում դա նրանց առաջարկությունն է, երկու տարում ամեն ինչ վերականգնել: Թե քաղաքները, թե ավանները, թե ձեռնարկությունները, չէ որ դրանք էլ են ավերված: Ամեն ինչ վերականգնել, որպեսզի մարդիկ կարողանան նորից վերադառնալ բնականոն կյանքի:

Իհարկե, մի բան, որ չես վերադարձնի, դա մարդկանց կորսված կյանքն է: Շատ ափսոս, ափսոս մարդիկ, բայց փորձության ժամին ես հայ ժողովրդին տեսա արիական: Թե լաց, թե արցունքներ, թե պահանջներ՝ այս ամենը չէր ջնջում այն, ինչ մենք տեսնում էինք. ինչպես էին մարդիկ անձնվիրաբար, ոչնչի առջև կանգ չառնելով, չսպասելով մինչև ամեն ինչ կազմակերպվի, ինչպես հարկն է, գործում էին, օգտագործում փեռքի տակ եղած ամեն ինչ, որպեսզի օգնության հասնեն:

**Հարց:** Մենք հարևան գյուղերում և քաղաքներում այսպիսի տեսարաններ նկատեցինք. մարդիկ հաց էին թխում, դարսում իրենց սեփական մեքենաները, բեռնախցերը, բերում, բացում էին բեռնախցերն ու բաժանում:

**Մ. Ս. Գորբաչով:** Ճիշտ է: Ես էլ եմ դա տեսել: Հենց մեքենաներից բաժանում էին տաք բոքոններ, լավաշներ: Մի խոսքով, մենք մեկ անգամ ևս տեսանք, թե ինչ հսկայական հոգևոր պաշար ունի այս ժողովուրդը:

**Հարց:** Միխայիլ Սերգեևիչ, ես ահա իրոք իմ կյանքում նման տառապանքների հազարերորդ մասն էլ չեմ տեսել, ինչպիսիք տեսա այստեղ երեք օրում:

**Մ. Ս. Գորբաչով:** Ես ոչ մի նման բան չեմ տեսել: Եվ պարզապես, անկեղծ ասած, ինձ համար անգամ դժվար է ձեզ հետ զրուցելը:

**Հարց:** Իսկ երեկ այստեղ, Երևանում, նորից հնչում են Լեռնային Ղարաբաղի լոզունգները: Այս ի՞նչ կուրություն է, չես հասկանում: Այստեղ իրոք հիշում ես բիբլիական ճշմարտությունը, որ եթե կույրը կույրին ուղեկցի, ապա երկուսն էլ կընկնեն անդունդը: Չէ որ այդ լոզունգների հետևում լավ բան չի թաքնված: Ու նորից նոր դժբախտություններ:

**Մ. Ս. Գորբաչով:** Ասեմ ազնվորեն: Ես երեկ ցնցված էի մի փաստից: Մենք

գիշերը Լենինականից վերադառնում էինք Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտե, որպեսզի զբաղվեինք գործնական հարցերի քննարկմամբ, թե ինչպես ընդլայնել մարդկանց փրկության, տեղավորման աշխատանքների մասշտաբը, ինչ անել գործնական հարցերը լուծելու և այդ դժբախտությունից ազատվելու համար: Փողոցում կանգնած էին Հայաստանի բնակիչները: Ես մի տեղ կանգ առա: Լավ զրույց էր տեղի ունենում: Մարդիկ բոլորը շատ տագնապած էին: Ցավով էին դա ընդունում: Ես նրանց ասացի, որ պարզապես ցնցված եմ տեսածիցս, ինչ փորձանք է եկել մարդկանց գլխին: Եվ հանկարծ հենց այստեղ, Երևանում, ինձ հարց են տալիս. իսկ ինչպիսին կլինեն հարաբերությունները, մենք ինչպես երկխոսություն կհաստատենք ոչ պաշտոնական կազմակերպությունների հետ: Ու նորից Ղարաբաղի թեման: Ես, գիտեք ինչ, գուցեև անգամ խիստ, բայց ասացի այն ամենը, ինչ մտածում եմ: Եվ առաջին հերթին ասացի՝ կանգ առեք: Տեսեք, թե ինչ փորձանք է եկել և ադրբեջանցիների, և հայերի գլխին, ուր են նրանց հրում, ուր են հասել, արյուն է թափվում: Այժմ այնպիսի դժբախտություն է, որ ամբողջ երկիրը, ամբողջ աշխարհն է տագնապած նրա համար, ինչ տեղի է ունեցել Հայաստանում, ինչ պատահել է հայ ժողովրդի հետ: Իսկ այստեղ մարդը Հայաստանի մայրաքաղաքում հարցնում է, թե ինչպես ենք երկխոսություն հաստատելու ոչ պաշտոնական կազմակերպությունների հետ: Այդ ինչ աստիճանի մարդը պետք է բարոյազուրկ լինի:

Ես այսօր Կիրովականում այդ մասին ուղղակի ասացի աշխատավորներին, և նրանք համաձայնեցին դրան և խնդրում էին. Միխայիլ Սերգեևիչ, պետք է այդ ամենը կանգնեցնել:

Ես կարծում եմ, որ Ղարաբաղի պրոբլեմը որպես այդպիսին կա, նա արմատներ ունի, և նա սրվեց այն պատճառով, որ նրա բնակչության նկատմամբ ինչ-որ փուլում ադրբեջանական նախկին ղեկավարությունը վերաբերվել էր սխալ, ոչ լենինյան ավանդույթների ոգով, իսկ երբեմն էլ պարզապես ոչ մարդկայնորեն: Եվ դա վիրավորել էր մարդկանց: Սա մենք դատապարտում ենք: Հենց դրա համար էլ մենք օգնության եկանք, որոշում ընդունեցինք, որ օգնենք սոցիալ-տնտեսական զարգացմանը. նման փոքր մարզի համար հատկացրինք 500 միլիոն, որպեսզի այն բարեկարգեն, որպեսզի վերացնեն մարդկանց բոլոր պրոբլեմները, կենսապայմաններ ստեղծեն, լուծեն մշակույթի, մայրենի լեզվի զարգացման, դասավանդման հարցերը, նորմալ կապեր հաստատվեն Հայաստանի հետ: Այս ամենը բնական է, այս ամենը հասկանալի է, և այդպես էլ պետք է լինի: Եվ այդպես էլ հարկավոր է գործել, դա պետք է այդպես լուծել: Բայց ավելին, կուտակվել են բազում պրոբլեմներ: Վերջերս ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանից հետո ղեկավար ընկերների հետ միասին հրավիրեցի նաև թե մեկ, թե մյուս կողմի կենտկոմի անդամներին և դեպուտատներին:

Նստել ու խոսում էինք: Մի հարյուր մարդ կլինեինք:: Ես ուղղակի ասացի. գիտեք ինչ, արդեն անդունդի եզրին եք: Այսուհետև մի քայլ էլ և՝ անդունդն է: Իսկ այդ մարդիկ ապրում են կողք կողքի, երկու ժողովուրդներն ապրել են դարերով և պետք է ապրեն: Այսուհետև նրանք ինչպե՞ս կարող են ապրել, որևէ մեկը այդ մասին մտածու՞մ է: Դրան համաձայնեցին՝ որ այսուհետև արդեն իրոք անդունդ է: Եվ խոսակցությունը գնաց դրա ըմբռնումով: Մենք պայմանավորվեցինք՝ թող թե մեկը և թե մյուսը մտածեն՝ ինչպես ինչ-որ ժամանակով հանգստացնեն Լեռնային Ղարաբաղը:

Բայց ահա այժմ այս իրավիճակը մեզ փոքր-ինչ շեղում է հունից:

Նշանակում է կա այդ պրոբլեմը: Բայց գիտեք, այժմ Ղարաբաղի թեման օգտագործում են անազնիվ մարդիկ, քաղաքական դեմագոգները, արկածախնդիրները, ավելին, կաշառակեր հանրությունը: Նրանք հո տեսնում են. վերակառուցում է տեղի ունենում, նա հասնում է Հայաստան ու Ադրբեջան, փոխվում է ղեկավարությունը, այն վերակառուցողական դիրքորոշում է գրավում: Իսկ դա նշանակում է՝ մոտենում է այն բանին, որ հարված հասցնի այդ ամբողջ հանրությանը: Այդ ամբողջ մակաբուծող հանրությանը, որը ձեռքերում է պահում ժողովրդին, ահաբեկում: Այդտեղ ստեղծել են սև բաճկոնավորներ, սպիտակ բաճկոնավորներ, մորուքավորներ՝ թե Ադրբեջանում, թե Հայաստանում: Ճնշում են գործադրում դեպուտատների վրա, ճնշում են գործադրում կառավարության վրա:

Բայց հրապարակ են նետում Ղարաբաղի լոզունգներ: Ադրբեջանի կողմից հնչում են լոզունգներ՝ կմեռնենք, բայց Ղարաբաղը չենք տա, այստեղից՝ կմեռնենք, բայց Ղարաբաղը կվերցնենք: Ղարաբաղը նրանց վաղուց պետք էլ չի, և երբեք էլ այն նրանց չի հուզել: Նրանք պայքարում են հանուն իշխանության, նրանց հարկավոր է պահպանել իշխանությունը: Բոլոր գործամոլները, բոլոր գող-ավազակները, որոնք նստած են բանվոր դասակարգի, գյուղացիության և աշխատավոր մտավորականության վզին: Ահա թե ինչի մասին է խոսքը:



Ես այդ մասին ասացի բոլորին Լենինականում և Կիրովականում: Եվ մարդիկ պաշտպանում են. ճիշտ է: Իսկ նրանք ամենից լավ գիտեն, որ դա հենց այդպես է: Ահա թե ինչի մասին է խոսքը: Իսկ լեզվի համար, իրենց ժողովրդի համար ցավի սուրբ զգացումը ահա այդպիսի տարրերն են օգտագործում թե Ադրբեջանում, թե այստեղ: Եվ արտասահմանում էլ են նրանք միմյանց դեմ լարել երկու ժողովուրդներին: Մարդիկ, երբ նրանց հետ զրուցում ես, ուղղակի ասում են. Միխայիլ Սերգեևիչ, չէ որ մենք ապրում ենք դարեր շարունակ, մեր ընտանիքներն ընդհանուր են:

Կենտկոմում այն զրույցից հետո ես մոտեցա մի խումբ դեպուտատների, ի դեպ՝ Հայաստանից: Տեսնում եմ դառնացած են, շարքային մարդիկ են՝ բանվորներ, գյուղացիներ: Մոտեցա, ասում եմ՝ ես եռանձնապես ցավում եմ ձեզ համար, դուք ապրումների մեջ եք: Այո, ասում են, Միխայիլ Սերգեևիչ: Արդեն նույնիսկ մարդ ուզում է դեպուտատի տոմսն էլ վայր դնի: Բայց օգնեցեք մեզ այդ ամենի դեմն առնելու: Իսկ գյուղացին ասում է. Միխայիլ Սերգեևիչ, ախր մենք ապրում ենք դարեդար, մենք պրոբլեմներ չունենք, այդ ոմանք ինչ-որ տեղ ինչ-որ բան չեն կարողանում կիսել: Հասկանու՞մ եք, բանն ինչ է: Ահա թե ինչի մասին է խոսքը:

Ես կարծում եմ, նրանք չեն խուսափի պատասխանատվությունից: Մենք արդեն ձեռնամուխ ենք եղել այդ գործին, այն կհասցնենք մինչև վերջ, և երկու հանրապետությունների աշխատավորների հետ միասին կարգուկանոն կհաստատենք: Իսկ Ղարաբաղի պրոբլեմը կգրավի իր տեղը, որպիսին այն պետք է լինի: Մարդիկ պետք է ապրեն այս հողի վրա, որտեղ ապրել են դարերով: Ահա մի գիտնական ապացուցում է, թե Ղարաբաղում հայ ազգի արմատներն են, մի ուրիշ գիտնական էլ ոչ պակաս հաջողությամբ ապացուցում է, թե ադրբեջանական ազգի արմատներն են: Նկատի առեք, որ բոլորը հենվում են փաստերի, պատմական փաստաթղթերի վրա: Ի՞նչ է սա վկայում: Եվ ես այդ գիտնականներին ասում եմ. դա վկայում է, որ այդ երկու ժողովուրդները միշտ էլ ապրել են այստեղ, նրանց միջև ամեն ինչ միահյուսված է, ընդհանուր են նրանց ուսուցիչներն ու աշակերտները: Շատ երգեր, ընտանիքներ ընդհանուր են, ինտերնացիոնալ: Ախր ինչպե՞ս կարելի է մարդկանց հետ այդպես վարվել:

Նրանք քաղաքական արկածախնդիրներ են, և նրանց պետք է այդպես նշավակել, մարդիկ դա պետք է իմանան: Բայց տեսեք, թե նրանք հիմա ինչ են անում: Ժողովուրդն այսպիսի վիշտ է ապրում, իսկ նրանք վախեցնում են, թե երկրաշարժը կշարունակվի, թե այն կարող է հանգեցնել ինչի ասես, և թե մենք գործում ենք անպատասխանատու կերպով: Մենք այստեղ հրավիրեցինք ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հինգ գիտնականի: Հարցնում ենք, դուք այդպիսի տվյալներ ունե՞ք: Գիտական տվյալներ չկան: Իսկ բանվորներն ամենուրեք ինձ հարցնում են: Ես ասում եմ. գիտեք, չկա այնպիսի կենտրոն, համենայն դեպս ես չգիտեմ, որն այսօր ասեր՝ երկրաշարժ կլինի, թե չի լինի: Ահա այսպիսի դատողություններ են արվում: Կամ մի ցավոտ թեմա՝ երեխաները, կանայք: Նրանք հիմա լուրեր են տարածում, թե ուզում են Ռուսաստան տանել երեխաներին և նրանց չվերադարձնել Հայաստան, կտրել ժողովրդից, թե հայերին այժմ կվերաբնակեցնեն Սիբիրում: Լսեցեք, բայց վայե՞լ է հիմա այսպիսի բանով զբաղվելը:

Ուրեմն ի՞նչ բարոյականության տեր են այս մարդիկ, հարցնում եմ ես: Մարդիկ պետք է իմանան, թե դա ինչ հանրություն է, որը, քողարկվելով ժողովրդի, ազգի նկատմամբ մտահոգություններով, այնինչ ահա թե ինչով է զբաղվում: Դա իշխանության ձգտող հանրություն է: Եվ դրա դեմը հարկավոր է առնել՝ օգտագործելով մեր թե քաղաքական, թե վարչական ամբողջ ուժը:

Աստված նրանց հետ: Միևնույնն է, նրանք չեն որոշելու այս հողի բախտը, իսկ մարդիկ, և ես ուզում եմ Կենտրոնական կոմիտեի, կառավարության անունից, ողջ սովետական ժողովրդի անունից հայ ժողովրդին հավաստիացնել, որ իրենք պետք է և կարող են այս դժվարին պահին, փորձությունների ժամին օգնություն և աջակցություն ակնկալել: Մենք ամեն ինչ կանենք, որ այս դժբախտությունից դուրս գաք էլ ավելի ամրապնդված ու համախմբված: Ես մեկնում եմ, բայց մնում է Ն. Ի. Ռիժկովի գլխավորած հանձնաժողովը, մնում են ընկեր Սլյունկովը, ընկեր Յազովը, մնում են ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի երեք տեղակալները և նրանք կշարունակեն այդ աշխատանքը վարել այնպես, ինչպես մենք այժմ այն ծավալել ենք:

**(ՏԱՍՍ)**

# Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ելույթը հայկական հեռուստատեսությամբ 1988 թ. դեկտեմբերի 17-ին

Թանկագին հայրենակիցներ, եղբայրներ և քույրեր:

Հարգելի ընկերներ:

Ես ձեզ եմ դիմում հայ ժողովրդին վրա հասած այս մեծ աղետի ժամին: Դիմում եմ ռուսերեն, ազգամիջյան հաղորդակցության, մեր եղբայրության լեզվով, քանի որ ուզում եմ, որ իմ խոսքերը լսեն թե՛ հանրապետության աշխատավորները, թե՛ բազմաթիվ փրկարարները, բժիշկները, շինարարները, ավիատորները, երկաթուղայինները, զինծառայողները, բոլոր նրանք, ովքեր փորձության դժնդակ ժամին օգնության շտապեցին մեզ մեր մեծ հայրենիքի տարբեր անկյուններից: Մեր ամբողջ երկիրը, ամբողջ աշխարհը ցնցված են աննախադեպ երկրաշարժի մասշտաբներով: Տարերքի նման ամեհի հարված մեր հողը չէր տեսել XI դարից ի վեր, երբ կործանվեց հայոց հին մայրաքաղաքը՝ Անին: Երկրաշարժի էպիկենտրոնում ցնցումների ուժը հասել է 10,5 բալի: Մեծ ավերածությունների գոտում են հայտնվել չորս քաղաք՝ Լենինականը, Սպիտակը, Կիրովականը, Ստեփանավանը և 365 գյուղական բնակավայր Ախուրյանի, Սպիտակի, Ստեփանավանի, Գուգարքի, Ամասիայի, Ղուկասյանի, Արագածի և դրանց հարող շրջաններում: Լիովին ավերվել է 58 գյուղ: 500 հազար մարդ անօթևան է մնացել:

Մեր ժողովուրդը ծանր, անդառնալի կորուստներ է կրել: Նախնական տվյալներով զոհվել են տասնյակ հազարավոր մարդիկ՝ տղամարդիկ և կանայք, ծերունիներ և երեխաներ: Մեծ է մեր ցավը, անսահման է վիշտը զոհվածների համար:

ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների խորհրդի անունից ուզում եմ մեկ անգամ ևս մեր անկեղծ, ի խորոց սրտի ցավակցությունը հայտնել զոհվածների հարազատներին ու մերձավորներին, ամբողջ հայ ժողովրդին: Թող համընդհանուր կարեկցանքը թեթևացնի վշտահարների ցավը, խոռված հոգիներում ստեղծարար ուժեր արթնացնի:

Հայ ժողովուրդը քանիցս կանգնած է եղել բնաջնջման եզրին, սակայն ամեն անգամ ոտքի է կանգնել, ավերակներից ու մոխիրներից բարձրացրել քաղաքներն ու գյուղերը, իր մեծ մշակույթը: Եվ ահա նոր մի փորձություն: Նմանը չունեցող փորձություն: Մոլորակը ցնցվեց, երբ նրան հասավ ահավոր աղետի բոթը:

Դեկտեմբերի 7-ին, տարերային աղետից անմիջապես հետո, մենք ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ Բ. Ե. Ծչերբինայի հետ ուղղաթիռով մեկնեցինք տուժած վայրերը: Ավերածությունների պատկերը վառեց մեր սրտերը: Պատմական մեծ անցյալ ունեցող Լենինական քաղաքում, որը սովետական իշխանության տարիներին վերածվեց հանրապետության իր մեծությամբ երկրորդ ինդուստրիալ կենտրոնի, փաստորեն ավերվել են բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները, բնակարանային ֆոնդի մոտ 80 տոկոսը: Ավերիչ մրրիկը չի խնայել ոչ դպրոցներն ու մանկապարտեզները, ոչ հիվանդանոցները:

Սպիտակը՝ հանրապետության երիտասարդ, բուռն աճող շրջկենտրոնը, համատարած ավերակույտ էր ներկայացնում: Դա աներևակայելի տեսարան էր. ծաղկուն, կյանքով լի քաղաքը մի ակնթարթում ջնջվել էր երկրի երեսից:



Ամբողջությամբ վերցրած Շիրակ—Լոռու գոտու քաղաքներում ու շրջաններում, ուր մոլեգնել էր տարերքի կործանիչ հարվածը, հանրապետությունը կորցրեց ավելի քան 6 միլիոն քառակուսի մետր բնակտարածություն: Ավերվեցին մոտ 6 հազար մահճակալով հիվանդանոցներ, 110 հազար աշակերտական տեղով դպրոցներ, 30 հազար տեղով մանկապարտեզներ, ինչպես նաև սոցիալ-կենցաղային, կոմունալ տնտեսության, կապի և էներգամատակարարման օբյեկտների մեծ մասը:

Շարքից դուրս են եկել երկաթուղիներ և ավտոմայրուղիներ, կամուրջներ, ուղանցույցներ, անցուղիներ, նշանակալի վնաս է հասցվել ագրոարդյունաբերական համալիրին:

Արտադրական կարողությունների ավերման պատճառով դադարեցվել է 850 միլիոն ռուբլի ընդհանուր գումարի արտադրանքի թողարկումը: Առայժմ անհնար է որոշել հանրապետության կրած կորուստի ընդհանուր գումարը: Կարող եմ ասել միայն մոտավոր թիվը: Կորսվածը վերականգնելու համար հարկ կլինի առնվազն 5 միլիարդ ռուբլի: Կարծում եմ, կյանքը լուրջ ուղղում կմտցնի այս թվի մեջ:

Երկրաշարժը աներևակայելի փորձության ենթարկեց ժողովուրդներին, մեր հանրապետությանը: Եվ դրան դիմանալու համար անհրաժեշտ է բացառիկ տոկունություն, անձնուրացություն, կոլեկտիվ մտքի արտակարգ լարում և հոգեկան մեծ ուժ: Ի պատիվ մեր ժողովրդի պետք է ասել, որ նա լիովին դրսևորեց դարերով դաստիարակված իր լավագույն հատկանիշները:

Տարերային աղետի առաջին իսկ ժամերից մեր բոլոր ջանքերը կենտրոնացված էին գլխավոր նպատակի վրա՝ արագորեն սկսել ավերակույտերի վերացումը և փրկել մարդկանց: Փլատակների տակ մնացածներին ազատելու համար շտապ կարգով մոբիլիզացվեցին մեր բոլոր հնարավորությունները:

Արդեն օրվա կեսին մի բռունցք դարձվեց հանրապետությունում առկա ամբողջ տեխնիկան և ուղղվեց դեպի տուժած քաղաքներն ու գյուղերը: Երեկոյան ավերակույտերի բացման աշխատանքներին մասնակցում էր ավելի քան 200 մեխանիզմ՝ ավտոամբարձիչներ, բուլդոզերներ, էքսկավատորներ:

Երեկոյան, Երևանի և մերձակա քաղաքների աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնությամբ կազմվեցին բազմահազարանոց շարասյուներ, որոնք անհապաղ ուղղվեցին մասնակցելու ավերակույտերի վերացման աշխատանքներին: Կուսակցության Երևանի քաղկոմը անձնական օգտագործման մեքենաների տերերին կոչ արեց անհապաղ մեկնել աղետի շրջանները և օգնել էվակուացնելու տուժածներին ու վիրավորներին: Կոմերիտմիության Կենտկոմի նախաձեռնությամբ փրկարար աշխատանքների վայրեր ուղարկվեցին ուսանողական ջոկատներ:

Որոշվեց փլատակների մաքրման աշխատանքները կազմակերպել հերթափոխային եղանակով: Հերթափոխային բրիգադների կազմը հասավ գրեթե 100 հազար մարդու: Հանրապետության գործարաններում շտապ կարգով սկսվեց անհրաժեշտ գործիքների ու հարմարանքների արտադրությունը:

Անձնվիրության, զսպվածության, կազմակերպվածության օրինակ էին ցույց տալիս տուժած շրջանների կուսակցական, սովետական աշխատողները: Նրանցից շատերը կորցրել էին ընտանիքները, զրկվել ծնողներից ու մերձավորներից: Բայց անձնական ցավը չստվերեց ընդհանուր դժբախտությունը: Նրանք երկրաշարժին հաջորդած առաջին իսկ ժամերից մարդկանց հետ էին, օգնություն էին ցույց տալիս նրանց, անում ամեն ինչ իրավիճակը վերահսկելու համար: Դա իրոք քաղաքացիական սխրանք է, որը երբեք չի մոռացվի:

Հարկ էր գործել ատամները սեղմած, ամբողջ կամքն ու հոգեկան ուժերը բռունցք դարձրած, բոլոր ռեզերվները համախմբված: Մեզանից ոչ ոք այդ աստիճան սուր իրավիճակում աշխատելու փորձ չուներ: Ուստի մենք չկարողացանք սկզբում հասնել աշխատանքների հստակ փոխկապակցման, առկա ռեզերվների շուտափույթ օգտագործման: Ջանքերը քիչ չէին, բայց երբեմն մասնատված էին, մինչև վերջ կշռադատված ու հետևողական չէին: Ժամ առ ժամ պրոբլեմները մեծանում էին ձնագնդի նման: Մենք ինքներս երբեք չէինք կարողանա հաղթահարել դրանք, եթե չլիներ ամբողջ երկրի եղբայրական օգնությունը:

Աղետի ամենաառաջին, ամենադժվարին ժամերից ամբողջ ուժով դրսևորվեցին մեր միասնության, համախմբվածության և եղբայրության ստեղծարար հնարավորությունները: Մեր մեծ տերության բոլոր ժողովուրդները ձեռք ձեռքի տվին ընդդեմ պատուհասի:

Մեզ վստահություն ներշնչեց անկեղծ կարեկցանքի ու աջակցության խոսքեր պարունակող հեռագիրը, որ Նյու Յորքից հղեց Մ. Ս. Գորբաչովը: Հայ ժողովուրդը երախտագիտությամբ ընդունեց այն փաստը, որ Միխայիլ Սերգեևիչը, իմանալով Հայաստանին հասած մեծ աղետի մասին, ընդհատեց իր արտասահմանյան ուղևորությունը և հայրենիք վերադարձավ, որպեսզի անմիջականորեն մասնակցի երկրաշարժի հետևանքների վերացման բարդ, պատասխանատու աշխատանքին: Միխայիլ Սերգեևիչը անհապաղ ժամանեց աղետի էպիկենտրոն, մեզ հետ կիսեց մեր վիշտը: Մարդկանց հետ նրա հանդիպումները ու զրույցները, բոլորին հուզող հարցերին նրա շիտակ ու ազնիվ պատասխանները, հստակորեն առաջադրված խնդիրները մեզ օգնեցին գործելու ավելի եռանդագին, ավելի մեծ կազմակերպվածությամբ: Մենք նոր ուժով զգացինք, որ այսօր Հայաստանի հետ են ամբողջ երկիրը, սովետական բոլոր մարդիկ:

Ինչպես հայտնի է, ընդհանուր միութենական մասշտաբով աշխատանքները կոորդինացնելու համար ստեղծվել է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողով՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովի գլխավորությամբ: Արդեն դեկտեմբերի 8-ի առավոտյան Նիկոլայ Իվանովիչ Ռիժկովը հանձնաժողովի անդամներ, ընկերներ Ն. Ն. Սլյունկովի, Դ. Տ. Յազովի, Յու. Պ. Բատալինի և Լ. Ա. Վորոնինի հետ ժամանեց հանրապետություն և ձեռնամուխ եղավ աշխատանքներին:

Մեր հանրապետությունն իսկույն զգաց հանձնաժողովի դերը որպես երկրի մասշտաբով բազմակողմանի ջանքերը միավորող ու կոորդինացնող ղեկավար կենտրոնի: Նրա հեղինակության ուժով օպերատիվորեն լուծվել ու լուծվում են մեզ համար մեծ կարևորություն ունեցող հարցեր: Հանձնաժողովի ու նրա գործունեության կազմակերպման համար մենք խորին երախտագիտություն ենք հայտնում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին: Երախտագիտության և հարգանքի զգացումով մենք միշտ կհիշենք մեզ մոտ՝ Հայաստանում հանձնաժողովի անդամների կատարած անձնվեր աշխատանքը:

Ընդհանուր միութենական ժողովրդատնտեսական համալիրի ուղղություն տվող բոլոր ալաքները շրջվեցին դեպի մեր հանրապետություն: Աղետի վայրերը սկսեցին հոսել զգալի մարդկային ռեսուրսներ, փոխադրամիջոցներ, մեքենաներ ու մեխանիզմներ, վառելանյութ ու սննդամթերք: Երկրի տարբեր ռեգիոններում տասնյակ գործարաններ սկսեցին իրենց արտադրանքն առաքել նախ և առաջ Հայաստանի հասցեով: Այստեղ ուղղվեցին երկրի շինարարական համալիրի ռեզերվները: Ժամանեցին և շարունակում են ժամանել փրկարար և վերականգնող ջոկատներ, հզոր շինարարական տեխնիկա, բնակելի վագոններ, շարժական էլեկտրակայաններ: Առաքվել են հազարավոր վրաններ, տաք յուրտեր, հավաքովի տներ: Ժամանակավոր կացարանները ջեռուցելու համար երկրի տարբեր քաղաքներից ուղարկվել են շարժական կաթսայատներ, դիզելային վառելանյութ, բենզին: Ստացվել է անհրաժեշտ քանակությամբ տաք հագուստ:

Այդ մարդկային և նյութական ռեսուրսները գրագետ ու արդյունավետ գործի դնելու համար Լենինականում, Սպիտակում, Կիրովականում ստեղծվեցին փրկարար աշխատանքների ամբողջ համալիրի ղեկավարման օպերատիվ շտաբներ: Դրանց կազմի մեջ մտան զորամասերի և ներքին գործերի մինիստրության ուժերի հրամանատարներ, տրանսպորտի, առևտրի, կոմունալ տնտեսության, բուժհիմնարկների ղեկավարներ: Լենինականում շտաբը գլխավորեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ Բ. Ե. Շչերբինան, մյուս վայրերում՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղարները և բյուրոյի անդամները:

Գլխավոր, ամենակարևոր հոգսը մնում էր մարդկանց փրկությունը: Թե առաջին օրը, թե երկրորդ, երրորդ, չորրորդ, հինգերորդ և հաջորդ օրերը մենք շարունակում էինք տասնյակ, հարյուրավոր տուժածներ հանել փլատակներից: Մինչև հիմա էլ մենք տեղեկություններ ենք ստանում մարդկանց փրկության մասին՝ տանջված, հյուծված, բայց ողջ: Յուրաքանչյուր, նույնիսկ մեն-միակ պահպանված կյանքը այն խոշոր գործի հաղթանակն է, որին մենք բոլորս այսօր ծառայում ենք:

Միաժամանակ ծավալվում են ինժեներային ցանցերի, ջրմուղի, էլեկտրամատակարարման, հեռախոսային կապի, ճանապարհների վերականգնման աշխատանքները:



Չեմ կարող երախտագիտության սրտալի խոսքեր չհասցեագրել զինծառայողներին: Փրկարար աշխատանքներին ամենաակտիվ մասնակցություն են բերում սովետական բանակի և ներքին զորքերի հազարավոր ռազմիկներ, զինվորական բժիշկների բրիգադներ, մեծ քանակությամբ ռազմական տեխնիկա: Զինված ուժերի, քաղաքացիական ավիացիայի ինքնաթիռներն ու ուղղաթիռները տեղափոխում են մարդկանց, բերում նյութեր ու սարքավորումներ: Գործում են դաշտային խոհանոցները, կազմակերպված է սնունդը: Լարված անընդմեջ աշխատանքի հինգ օր պահանջվեց զինվորական ճանապարհաշինարարներին Լենինական—Կիրովական երկաթգիծը գործի դնելու համար:

Ուզում եմ անկեղծ երախտագիտություն հայտնել նաև բժիշկներին, որոնք բառացիորեն անհնարինն են անում մարդկանց օգնություն ցույց տալու համար: Հանրապետություն ժամանեց մասնագետների մի մեծ խումբ՝ ՍՍՀՄ առողջապահության մինիստր Ե. Ի. Չազովի գլխավորությամբ. գրեթե 500 որակյալ բուժաշխատողներ, վիրաբույժների, վնասվածքաբանների, նյարդավիրաբույժների և վարակաբանների մասնագիտացած բրիգադներ՝ իրենց բուժհանդերձանքով, դեղորայքի և դոնորական արյան անհրաժեշտ պաշարով: ՍՍՀՄ առողջապահության մինիստրությունում ստեղծված է շտաբ, որը կոորդինացնում է վիրավորների բուժօգնության բոլոր հարցերը:

Մեծ օգնություն են մեզ ցույց տալիս ՍՍՀՄ մինիստրները, որոնք այժմ գտնվում են հանրապետությունում և արգասավոր աշխատանք են կատարում ավերված ձեռնարկությունների վերականգնման նպատակով:

Անգնահատելի է Վ. Ի. Լենինի անվան սովետական մանկական ֆոնդի գործունեությունը, որը Երևանում ստեղծել է Հայաստանի երեխաներին ու մայրերին ցույց տրվող շտապ օգնության համամիութենական շտաբ: Պատասխանատու, նվիրված աշխատանք են սկսել ՀԱՄԿԽ-ն, մինիստրություններն ու գերատեսչությունները ավերումների գոտուց մարդկանց էվակուացնելու համար: Երեխաները հայերեն դասագրքերով, դպրոցական ծրագրերով, ուսուցիչների, մայրերի, պապիկների ու տատիկների ուղեկցությամբ ճանապարհվում են երկրի լավագույն առողջարանները: Նրանք մինչև ամառ այնտեղ կգտնվեն պետության լիակատար խնամակալության տակ, կկարողանան հաջողությամբ ավարտել ուսումնական տարին, սթափվել աներևակայելի հոգեկան ցնցումից: Արհմիութենական ուղեգրերով հանգստացող 100 հազար սովետական մարդիկ կամավոր ընդհատեցին իրենց արձակուրդը և առողջարաններում ու հանգստյան տներում տեղերը զիջեցին Հայաստանում երկրաշարժից տուժածներին:

Աղետի վայրերում, ամբողջ հանրապետությունում խորին երախտագիտության զգացումով ընդունեցին հաղորդագրությունն այն մասին, որ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն հավանություն է տվել ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի առաջարկություններին Հայկական ՍՍՀ երկրաշարժից տուժած ազգաբնակչությանը խոշորամասշտաբ օգնություն տրամադրելու մասին, ինչպես նաև հաղորդումը, որ ՍՄԿԿ Կենտկոմը հատուկ որոշում է ընդունել կոմկուսի բյուջեից նույն նպատակով դրամական միջոցներ հատկացնելու մասին:

Հաշվի առնելով աղետի վիթխարի ծավալները, տուժած քաղաքացիներին կվճարվեն միանվագ նպաստներ և լրիվ կփոխհատուցվի երկրաշարժի պատճառով կորցրած ունեցվածքի արժեքը: Այդ նպատակների համար կառավարությունը հատկացրել է մոտ 2 միլիարդ ռուբլի:

Այսօր, երբ դեռ շարունակվում են փրկարար աշխատանքները, պայքար է մղվում յուրաքանչյուր կյանքի համար: Ես ուզում եմ անկեղծ երախտագիտություն հայտնել թե նրանց, ովքեր անմիջականորեն մասնակցում են տարերային աղետի հետևանքների վերացմանը, թե նրանց, ովքեր սատարում են հանրապետության ժողովրդին կարեկցանքի խոսքերով ու մարդասիրական գործերով, ովքեր կիսում են մեր ցավը, հանրապետության հասցեով ուղարկում առաջին անհրաժեշտության պարագաներ ու դրամական միջոցներ:

Մեր ժողովուրդը երբեք չի մոռանա սովետական և հարավսլավական բեռնափոխադրիչ ինքնաթիռների անձնակազմերի, զինվորականների այն մարդկային սխրանքը, որոնք, շտապելով մեզ օգնության, ողբերգաբար զոհվեցին ավիավթարից: Գլուխ ենք խոնարհում նրանց հիշատակի, նրանց հարազատների ու մերձավորների վշտի առջև:

Մարդիկ այժմ կարիք ունեն ոչ միայն բուժօգնության, ոչ միայն օթևանի: Մենք

պետք է մարդկային հոգատարությամբ ու ջերմությամբ շրջապատենք երկրաշարժից տուժած մեր համաքաղաքացիներին, ոգևորենք հուսալքվածներին, հույս ներշնչենք վհատվածներին, գթությամբ ու կարեկցանքով դարմանենք հոգեկան վերքերը:

Ամեն օր, ամեն ժամ մարդկանց հետ պետք է լինի մեր մտավորականությունը: Գիտնականների, գրողների, արվեստի գործիչների ամբողջ խմբից է կախված շատ բան և, առաջին հերթին, ժողովրդի բարոյական տրամադրվածությունը:

Զսպասել հանձնարարությունների, ցուցումների, այլ անձամբ գնալ աղետի գոտին, գնցված համաքաղաքացիներին հասցնել ճշմարտությունը, ցրել ասեկոսները, վերականգնել ավերված արմատները:

Մարդկանց պետք է զինել վաղվա օրվա վստահությամբ: Հարկավոր է համոզիչ բացահայտել մեր ծրագրերը, մեր ընդհանուր նպատակը, երկու տարում վերածնել ավերված քաղաքներն ու գյուղերը: Կառուցել հուսալի ու գեղեցիկ: Դա ավելի քան 5 միլիոն քառակուսի մետր բնակտարածություն է, ընդ որում, 1 միլիոնը՝ գյուղական վայրերում, արդեն եկող տարի պետք է կառուցվի դպրոցների և մանկապարտեզների մեծ մասը: Ինչպես բոլոր այսօրվա գործերում, այնպես էլ այդ կարևորագույն գործում մեզ հետ է ամբողջ երկիրը: Հայաստանում եղան բոլոր միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների նախագահների տեղակալները: Նրանք տեղում ծանոթացան անելիքի մասշտաբներին, մշակեցին շինարարական աշխատանքների նախապատրաստման միջոցառումներ: Բոլոր եղբայր ժողովուրդները մեզ անշահախնդիր օգնության ձեռք են մեկնում: Մենք ուս-ուսի տված կվերածնենք մեր հողը: Դրանում մենք տեսնում ենք Աշխաբադի և Տաշքենդի ինտերնացիոնալ ավանդույթների շարունակությունը, քաղաքներ, որոնք ավերակույտերից հառնեցին բարեկամության ու փոխօգնության ուժով, լենինյան ազգային քաղաքականության ուժով:

Այսօր միլիոնավոր սրտերի միջով են անցնում Հայաստանի ցավն ու հույսը: Նրանք դարձել են ոչ միայն եղբայրության ակտիվ գործոն, այլև խաղաղության գործոն, քայլ դեպի նոր քաղաքական մտածողություն: Բազմաչարչար հայոց հողը դարձավ աշխարհի բոլոր մարդկանց համագործակցության ու մարդկային կարեկցանքի էպիկենտրոն:

Մենք վկաներն ենք սովետական պետության մեծագույն միջազգային հեղինակության, «աշխարհի՝ որպես մեր ընդհանուր տան» գաղափարի լայն պաշտպանության, որը արձագանք է գտնում ոչ միայն աշխարհի միլիոնավոր մարդկանց մտքերում ու զգացմունքներում, այլև նրանց կոնկրետ գործերում:

Առաջինների թվում Հայաստանի ողբերգությանն արձագանքեցին եղբայր սոցիալիստական երկրները: Նրանք մեր հանրապետություն առաքեցին շինարարական տեխնիկա, բուժամիջոցներ, դոնորական արյուն: Սոցիալիստական համագործակցության, եղբայրության ու միասնության խորհրդանիշ դարձավ լեգենդար Ֆիդել Կաստրոյի արյունը հեռավոր Կուբայից մեզ ուղարկված դոնորական արյան խմբաքանակում:

Ֆրանսիայի կառավարությունը Երևան է ուղարկել 180 փրկարարների, բժիշկների, դեղորայք: Բժիշկներ ու փրկարարներ են եկել Շվեյցարիայից, Մեծ Բրիտանիայից, ԳՖՀ-ից, ԱՄՆ-ից: Օգնության ձեռք է մեկնել Իտալիան:

Հայաստանին օգնում են աշխարհի ավելի քան 70 երկրներ: Երևանի ու Լենինականի օդանավակայաններում արդեն բեռնաթափվել են տարբեր երկրների 100-ից ավելի ինքնաթիռներ, որոնք բերել են սարքավորումներ ու առաջին անհրաժեշտության առարկաներ՝ այն, ինչ հարկավոր է այսօր, այն, ինչ հարկավոր կլինի վաղը:

Այս դառն օրերին մենք առանձնակի ուժով զգացինք աշխարհի բոլոր անկյուններում ապրող մեր հայրենակիցների աջակցությունը, նրանց ցավն ու տագնապը Մայր հայրենիքի՝ Սովետական Հայաստանի համար:

Տարերքի դաժան հարվածը մարդկությանը վերստին հանգեցրեց այն մտքին, որ մարդկանց մերձեցման վերջին տարիներս սկսված պրոցեսը հարկավոր է ուժեղացնել: Մեզ՝ աշխարհի բնակիչներիս համար ամեն ինչ փոխկապակցված է և փոխադարձ պայմանավորված: Եվ եթե մենք հասկանում ենք միմյանց, գործում համատեղ, ապա ի զորու կլինենք լուծելու ամենադժվարին պրոբլեմները:

Ընկերնե՛ր:

Մեր ժողովուրդը հազարամյա պատմություն, հազարամյա իմաստնություն ունի: Դրանք ուսուցանում են. փորձության ժամին պետք է կարողանալ առավելագույնս



համախմբել ամբողջ տոկունությունը, եռանդը, կենսասիրությունը: Մեր ժողովուրդը հազարամյա ավանդույթներ ունի: Դրանք հուշում են. երբ մեծ դժբախտություն է տունը խուժում, գժտությունների և անգամ արդարացի վիրավորանքի ձայները պետք է մարեն, տեղը զիջելով ըմբռնմանն ու միաբանությանը:

Անափ է որդեկորույս մայրերի ու որբացած երեխաների վիշտը: Անհուն մորմոքն է համակել հայ ժողովրդի սիրտն ու հոգին: Դեռ երկար չեն ամոքվի Հայաստանի անհամար վերքերը և մեր սերունդները ցնցված հոգով կհիշեն 1988 թվականի չարաղետ դեկտեմբերի 7-ի օրը: Մեզ պետք է ուժ տա և մեր ոգին ամրապնդի սերունդների հանդեպ պարտքի զգացումը: Մենք կարող ենք կարկամել ցավից ու վշտից, բայց ընկճվելու իրավունք չունենք:

Այսօր, երբ աղետի շրջանում, հիվանդանոցներում ու հոսպիտալներում ամեն ժամ, ամեն րոպե պայքար է մղվում հանուն մարդկային կյանքի, երբ ամբողջ հանրապետությունը՝ մեծից փոքր, միասնական պոռթկումով, քուն ու դադար կորցրած աշխատում է երկրաշարժի հետևանքների վերացման համար, երբ մարդիկ չեն կարողանում զսպել արցունքները թերթեր կարդալիս և հեռուստացույց նայելիս, այլ կերպ, քան սրբապղծություն չես անվանի իրադրությունը սրելու, մարդկանց սրտերում շփոթ առաջացնելու անպատասխանատու անձանց խմբերի փորձերը:

Համաժողովրդական վշտի օրերին, երբ կշեռքի նժարներին կյանքն է ու մահը, շատ ավելի է հստակվում մարդկային ոգու վսեմության ու մտադրությունների սնոտիության հակադրությունը: Դժբախտությունը թույլ չի տա խորամանկել, այն ցույց է տալիս, թե ով ով է:

Հանրապետությունում աշխատանքները կատարվում են ամենալարված ռիթմով, շարունակ առաջանում են ոչ ստանդարտ, անսպասելի իրավիճակներ: Ոչ միշտ է հաջողվում ժամանակին ճիշտ ելք գտնել: Յուրաքանչյուրից պահանջվում է ուժերի առավելագույն լարում: Ուրեմն, այս պայմաններում ի՞նչ անուն տալ «Ղարաբաղ» կոմատեի անդամների գործողություններին, անձանց, ովքեր որոնում, գտնում են այսպիսի ծայրագույն հանգամանքներում, ավաղ, անխուսափելի վրիպումներ ու թերություններ, դրանց շուրջը բորբոքում ասեկոսներ ու հերյուրանքներ, գրգռում կրքեր: Ի՞նչ անուն կարելի է տալ նրանց, ովքեր մարդկանց փրկության, ավերակույտերի մաքրման ծանրածանր գործում, որով մենք այսօր բոլորս զբաղված ենք, խռով ու խառնաշփոթ են սերմանում, այդ ֆոնի վրա փորձում իրենց օգտակար լինելու պատրանքը ստեղծել:

Հարկավոր է ուղիղ նայել ճշմարտության աչքերին: Այդպիսի անձանց գործունեության հիմքում ընկած են քաղաքական արկածախնդրությունը, նախաձեռնությունը խլելու, բարձրագոչ ճամարտակություններով սին հեղինակություն ձեռք բերելու ձգտումը:

Ժողովրդի բոլոր սրբազան զգացմունքները, լինեն դրանք Լեռնային Ղարաբաղի պրոբլեմները, թե հոգատարությունը տարերքից տուժած երեխաների նկատմամբ, այդ ուժերի համար ոչինչ չարժեն, քան մանրադրամը մեծ քաղաքականության իրենց խաղերում: Այդպիսի ուժեր կան մեզանում, կան նաև Ադրբեջանում: Երբեմն անգամ զարմանում ես, թե որքան համահունչ են նրանք գործում: Նրանց հրահրիչ ջանքերն արդեն հանգեցրել են ազգային երկպառակության, արյունահեղության, թշնամանքի: Մարդիկ հարկադրված են տեղահան լինել Ադրբեջանից Հայաստան, Հայաստանից Ադրբեջան: Եվ եթե բնության տարերքի հանդեպ մարդն առայժմ անզոր է, ապա ազգամիջյան երկպառակության տարերքը մենք բոլորս պարտավոր ենք կանգնեցնել:

Մենք հայտնվել ենք անդունդի եզրին: Ժամանակն է սթափվել, հաղթահարել փոխադարձ վիրավորանքները, հաշտեցնել մարդկանց: Մեր ժողովուրդները դարեր շարունակ ապրել են կողք կողքի, մենք այսուհետ ևս պետք է այդպես ապրենք:

Մենք բնավ էլ Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը չենք նույնացնում «Ղարաբաղ» կոմիտեի հետ: Մենք պարզորոշ տեսնում ենք, որ Ղարաբաղի հարցի արդարացի լուծման պահանջների քողի ներքո կոմիտեականները բացահայտ պայքար են մղում իշխանության համար:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումում մենք առաջադրեցինք հանրապետությունում ուժերի համախմբման կոնստրուկտիվ ծրագիր, որն ընդունվեց և հավանության արժանացավ ժողովրդի կողմից: Սակայն ամեն անգամ, երբ շոշափելի էր դառնում միասնության հնարավորությունը, «Ղա-

ղաբաղ» կոմիտեի լիդերները ամեն ինչ անում էին, որ երկպառակությունը նորից շարունակվի, առճակատումն ուժեղանա, որ իրադրությունը հանրապետությունում էլ ավելի սրվի: Նրանք այսօր էլ ակտիվորեն շարունակում են հասարակության բարոյական առողջության խարխլման գիծը, մոռանալով, որ երբ տանդ դժբախտություն է, քաղաքակիրթ հասարակության մեջ ընդունված է լռել և օգնության ձեռք մեկնել: Հակամարտությունն ուժեղացնելը, մարդկանց հույզերը գրգռելը սոսկ անբարոյություն չէ: Մեր պայմաններում դա հանցագործություն է:

Բացահայտորեն քաղաքական արկածախնդիրների սրտովը չէ հանրապետությունում սկսված նորացման պրոցեսը: Ամբոխավարաբար օգտագործելով դեմոկրատիայի մեխանիզմը, նրանք փորձում են արգելակել մեր շարժումը, գերիշխանության հասնել: Նրանց ցինիկ կարծիքով, մեր ժողովրդի գլխին պայթած դժբախտությունը չպետք է շեղի միտինգներից, իշխանությունների վրա ճնշում գործադրելուց: Նրանց շարժիչ ուժը ոչ թե ողբն է զոհվածների համար, ոչ թե խղճմտանքը տուժածների նկատմամբ, այլ ամեն գնով տեսադաշտում մնալու, քաղաքական կարիերա անելու ձգտումը: Իրենց եսասիրական նպատակներին հասնելու համար նրանք չեն խորշում մարդկանց ազգային զգացմունքների հետ բացահայտորեն խաղալուց, ռեալ դըժվարությունները չարարկելուց:

Քաղաքական արկածախնդրությունից մինչև հոգևոր կողոպուտը ընդամենը մեկ քայլ է: Ի հայտ են եկել, օրինակ, բարոյազուրկ տարրեր, որոնք ժողովրդին ահաբեկում են նոր, էլ ավելի ահարկու երկրաշարժի հնարավորությամբ: Ինչ-ինչ մարդիկ զանգահարում են հիմնարկներ, բախում են բնակարանների դռները, նախազգուշացնում, թե նոր աղետ է լինելու, առաջացնելով խուճապ, բարոյապես ջլատելով բնակչությանը:

Վայրենի լուրեր են տարածվում այն մասին, թե իբր ուզում են Հայաստանից հանել երեխաներին, նրանց կտրել ժողովրդից, դաստիարակել՝ զրկելով իրենց արմատներից: Եվ դա իբր մի մասն է հայ ժողովրդին ոչ ավելի, ոչ պակաս՝ Սիբիրում վերաբնակեցնելու մի ինչ-որ ծրագրի:

Ընդհարումներ են հրահրվում պարեկային ծառայության ուժերի հետ, որոնց հետևանքով կան տուժածներ: Եվ դա այն ժամանակ, երբ մարդիկ այնքան հարկավոր են ինքնաթիռների բեռնաթափման, վիրավորներին խնամելու, միմյանց կորցրած հարազատների որոնման ինֆորմացիան կարգավորելու գործին օգնելու համար, երբ զինծառայողների խիստ կարիք ունեն աղետի շրջանները:

Մի՞թե մենք լիիրավ չենք պատասխանատվության կանչելու այն խելահեղներին, ովքեր երկպառակություն են մտցնում մեր շարքերում այն պահին, երբ պահանջվում են մեծագույն համախմբվածություն ու կազմակերպվածություն: Ժամանակն է վճռականորեն խափանելու ժողովրդի դժբախտությունը, տառապանքները որպես իրադրության սրման, հասարակական կարծիքի մոլորեցման պատրվակ օգտագործելու սպեկուլյատիվ փորձերը: Ժամանակն է միանշանակ գնահատական տալու բոլոր նրանց, ովքեր խանգարում են վերակառուցմանը, խափանում հանրապետության նորացման պրոցեսը:

Ոչ ոք խույս չի տալիս ճշմարտությունից: Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը կա: Որոնվում են դրա լուծման ուղիներ: Այդ մասին ուղղակի ասվեց դեկտեմբերին ՍՄԿԿ Կենտկոմում կայացած հանդիպման ժամանակ, կենտրոնական հեռուստատեսության և Հայաստանի հեռուստատեսության թղթակիցների հետ Մ. Ս. Գորբաչովի հարցազրույցում: Բայց այժմ հայ ժողովրդի համար, ամբողջ երկրի համար չկա առավել մեծ հոգս, չկա առավել կարևոր պրոբլեմ, քան երկրաշարժի հետևանքների վերացումը:

Հայոց լեռներում մոլեգնած ողբերգությունը չի կարող պասիվ հայեցողներ ունենալ: Առաջին պլանում պետք է լինի աշխատանքը և միայն աշխատանքը: Կան զոհեր, տուժածներ, որոնց օգնում են փրկվածները, ողջ մնացածները: Հենվելով եղբայրների աջակցության վրա, իսկ նրանք այսօր բառացիորեն կազմում են ամբողջ երկիրը, ամբողջ մոլորակը, մենք պետք է առանց հապաղելու օգնենք ոտքի կանգնելու նրանց, ում տապալել է տարերքը:

Հայաստանը պետք է տոկա: Դա պատգամված է նախնիների կողմից: Դա մեր դարավոր պատմության հանդեպ մեր սերնդի սրբազան պարտքն է: Պարտքը Մեսրոպ Մաշտոցի հանդեպ, Գրիգոր Նարեկացու հանդեպ, Անիի ավերակների հանդեպ, որոնք մենք, ավաղ, չենք կարող վերականգնել, Ավետիք Իսահակյանի հանդեպ, որի օրրան Շիրակը ցավի էպիկենտրոն դարձավ և որը մենք անպայման կվերականգնենք... Դա մեր պարտքն է Լենինականում, Սպիտակում, Կիրովականում, Ստեփանավանում, մեր մեծ, թե ամենափոքր լեռնային գյուղերում որբացած զավակների հանդեպ: Նրանք պետք է ապրեն ու արարեն այդ վայրերում:

Այդ պարտքը մենք պարտավոր ենք կատարել:

Երեկ Երևան զանգահարեց Մ. Ս. Գորբաչովը: Նա խնդրեց Սովետական Հայաստանի ժողովրդին հաղորդել, որ երկրաշարժի հետևանքների վերացումը երկրի ղեկավարության ուշադրության կենտրոնում է, որ օգնությունը գնալով կմեծանա: Վերականգնված օջախներ կվերադառնան կյանքը, հույսն ու վստահությունը:

Մոտ ժամանակներս համաժողովրդական քննարկման կդրվեն վերածնվող քաղաքների և գյուղերի առաջին նախագծերը: Մեր հասարակայնությունը պետք է ասի իր կշռադատած խոսքը: Նախագծերը պետք է իրենց մեջ ներդաշնակորեն ամփոփեն թե՛ արդի քաղաքաշինության առաջադիմական գաղափարները, թե՛ մեր կացութաձևի դարավոր ավանդույթները:

Բազում դժվար օրեր, զրկանքներ ու ցավեր կրած մեր ժողովուրդը կդիմագրավի նաև այս դժնդակ փորձությանը, դրանից դուրս կգա ավելի համախմբված, ավելի տոկուն, իր աշխատասիրությամբ, հոգեկան ուժով, սովետական ժողովուրդների եղբայրական օգնությամբ կհաղթահարի այդ ամենը:

Ավերակներից կհառնեն, ավելի գեղեցիկ կդառնան Լենինականը, Սպիտակը, Կիրովականը, Ստեփանավանը, մեր մյուս քաղաքներն ու գյուղերը: Կծաղկի ու կբարգավաճի մեր հինավուրց աշխարհը:

# ԵՐԿՐՈՐԴ ՓՈՒԼԸ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄՆ Է

## Մամուլի ասուլիս Երևանում սովետական և օտարերկրյա ժուռնալիստների համար

Ինչպես արդեն հաղորդվել է, դեկտեմբերի 19-ին Երևանում մամուլի ասուլիս տեղի ունեցավ սովետական և օտարերկրյա ժուռնալիստների համար: Դրան մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ն. Ն. Սլյունկովը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր Դ. Տ. Յազովը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ Յու. Դ. Մասլյուկովը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ Յու. Պ. Բատալինը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը:

Մամուլի ասուլիսը բացեց Ն. Ի. Ռիժկովը:

Տասներկու օր է անցել այն օրից, ասաց նա, ինչ տեղի է ունեցել այս արհավիրքը՝ ամենաահեղ երկրաշարժերից մեկը մեր երկրում: Դուք գիտեք, թե որքան մեծ են զոհերն ու պատճառված վնասը: Շատ տվյալներ դեռ կճշգրտվեն, բայց արդեն պարզ է, որ խոսքը տասնյակ հազարավոր զոհվածների և միլիարդներ կազմող նյութական կորուստների մասին է:

Այս երկրաշարժը ինքնըստինքյան աննախադեպ է Անդրկովկասի համար: Հայաստանը կորցրել է մոտ ութ միլիոն քառակուսի մետր բնակարանային ֆոնդ՝ այն ֆոնդի կեսից ավելին, որ կար այդ շրջանում: Անօթևան է մնացել գրեթե 514 հազար մարդ: Լրիվ ավերվել կամ լրջորեն վնասվել են արդյունաբերական և գյուղատնտեսական շատ ձեռնարկություններ: Շարքից դուրս են եկել երկաթուղիների և ավտոճանապարհների զգալի հատվածներ: Քանդվել են կամուրջներ, խափանվել կապի գծեր, շարքից լրիվ դուրս է եկել կոմունալ տնտեսությունը:

Ամենածանր ու անվերականգնելի կորուստը զոհված մարդիկ են: Երկրաշարժի զոհերի վերաբերյալ վերջնական տվյալներ առայժմ չկան: Փլատակներից անցած օրերին հանվել է 23,7 հազար զոհված, փրկվել է 15252 մարդ: Հիվանդանոց է տեղափոխվել 10380 տուժած: Մինչև դեկտեմբերի 18-ի երեկոյան հիվանդանոցներից դուրս էր գրվել 5200 մարդ, բուժումը շարունակում է 4843 մայդ:

Փրկարար աշխատանքները շարունակվում են ամբողջ թափով: Դրանց մասնակցում են հարյուր-հազարավոր մարդիկ: Հայ ժողովրդի հետ մեկտեղ այստեղ աշխատում են բոլոր ազգությունների մարդիկ: Նրանք եկել են մեր երկրի բոլոր անկյուններից, Եվրոպայից, Ամերիկայից, սոցիալիստական ու կապիտալիստական պետություններից:

Հայաստանի տուժած քաղաքների ու գյուղերի բնակիչների փրկությունը հիրավի ինտերնացիոնալ գործ է դարձել:

Հայաստանի ղեկավարությունը՝ ընկերներ Ս. Գ. Հարությունյանը, Հ. Մ. Ոսկանյանը, Ֆ. Տ. Սարգսյանը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և Մինիստրների խորհրդի նախագահությունների անդամները առաջին իսկ րոպեներից ակտիվորեն ներգրավվել են մարդկանց փրկության կազմակերպման աշխատանքի մեջ:

Ավերածությունների բնույթն այնպիսին է, որ տների ու ձեռնարկությունների փլատակները փաստորեն անհնար է մաքրել առանց հզոր տեխնիկայի: Առաջին իսկ ժամերին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության կառավարության որոշմամբ Երևանից, Հայկական ՍՍՀ մյուս քաղաքներից ու շրջաններից տուժած քա-



ղաքներ ու գյուղեր ուղարկվեցին ավտոկռունկներ, բուլդոզերներ, էքսկավատորներ: Միաժամանակ փրկարար աշխատանքներին միացան բազում հազարավոր կամավորներ: Գործի անցան առաջին բժշկական բրիգադները՝ ՍՍՀՄ առողջապահության մինիստր Ե. Ի. Չազովի ղեկավարությամբ:

Երկրի օգնությունն սկսեց ստացվել արդեն առաջին օրը: Օդային ճանապարհով մոտակա հանրապետություններից ու մարզերից բերվեցին առաջին կռունկները, ավտոմեքենաները, վթարային-փրկարար այլ տեխնիկա: Այսօր փլատակների մաքրման վրա միայն շինարարական համալիրի կազմակերպություններում զբաղված է մոտ 900 կռունկ, 250 բուլդոզեր և հազարից ավելի ինքնաթափ և այլ բեռնատար ավտոմեքենաներ:

Աղետի գոտում աշխատում է 5 հազար բուժաշխատող: Նրանք օգնություն են ցույց տվել ավելի քան 17 հազար մարդու:

Անձնվեր են աշխատում ֆրանսիացիներն ու կուբացիները, ամերիկացիներն ու լեհերը, անգլիացիներն ու ավստրիացիները, Չեխոսլովակիայի, ԳՖՀ-ի, Շվեյցարիայի, այլ երկրների քաղաքացիներ: Ավելի քան երկու հազար օտարերկրյա մասնագետներ անգնահատելի ավանդ մուծեցին սովետական մարդկանց կյանքի համար մղված պայքարում, և այդ սխրանքի համար խորին շնորհակալություն ենք հայտնում նրանց:

Այսօր կարող ենք ասել, որ հիմնականում ավարտվում է երկրաշարժի հետևանքների վերացման աշխատանքների առաջին, առավել պատասխանատու և դրամատիկ փուլը: Նրա գլխավոր նպատակն է փրկել մարդկանց կյանքը, դրան էր ենթարկված բոլոր նրանց գործունեությունը, ովքեր օգնության եկան այստեղ և տեղում ապրեցին պատահած արհավիրքը:

Դրանք սովետական բանակի, ներքին զորքերի և քաղաքացիական պաշտպանության ռազմիկներ էին, փրկարարներ, կռունկների և փոխադրամիջոցների վարորդներ, օդաչուներ, երկաթուղայիններ, կապավորներ, շինարարներ, նորոգողներ, նրանք, ովքեր պատասխանատու են հասարակական կարգի պահպանման համար, աղետի շրջանում աշխատանքների ամբողջ բարդ համալիրի կազմակերպիչներ ու կոորդինատորներ:

Տարերքի հարվածը ոչ միայն բազմաթիվ ավերածություններ պատճառեց, մի շարք դեպքերում գրեթե համատարած, այլև շարքից հանեց աղետի ընդարձակ գոտու հասարակական ու տնտեսական կառավարման ամբողջ համակարգը: Զոհվեցին շատ ղեկավարներ, մասնագետներ՝ աշխատանքի այս կամ այն տեղամասի համար բնակչության կենսագործունեության ապահովման համար պատասխանատու մարդիկ: Հոգեբանական շոկի պայմաններում դա հսկայական դժվարություններ էր առաջացնում փրկարար աշխատանքների ընդլայնման համար: Հարկավոր էր անհապաղ նոր կազմակերպական կառուցվածքներ ստեղծել ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում՝ փլատակներում մնացած տասնյակ հազարավոր մարդկանց փրկության լայնընդգրկուն աշխատանքների ծավալման համար:

Կենտրոնում, ինչպես հայտնի է, ստեղծվեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողով՝ ընդհանուր միութենական մասշտաբով երկրաշարժի հետևանքների վերացման բոլոր աշխատանքների կոորդինացման համար: Երևանում հանրապետության ղեկավար մարմինների, մինիստրությունների ու գերատեսչությունների հետ սերտ կապով գործունեություն ծավալեց կառավարական հանձնաժողովը: Աղետի վայրերում իրադրության ուսումնասիրումը հուշեց, թե կազմակերպական ինչ կառուցվածքներ պետք է ստեղծել, որպեսզի սկսի գործել կառավարման վթարային մեխանիզմը:

Լենինականում, Կիրովականում և Սպիտակում կազմված են օպերատիվ շտաբներ, որոնք գլխավորում են միութենական կառավարության և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պատասխանատու աշխատողներ: Կենդանի մնացած ղեկավար կոմունիստներից ստեղծվել են կուսակցական ղեկավարման մարմիններ, նշանակվել պատասխանատու առանձին տեղամասերում, օբյեկտներում, ինչպես նաև առավել տուժած գյուղերում:

ՍՍՀՄ պետմատը, ՍՍՀՄ պետշինը և ՍՍՀՄ պետագրոարդը, առողջապահության քաղաքացիական ավիացիայի, հաղորդակցության ճանապարհների, առևտրի և շատ ուրիշ միութենական մինիստրություններ Հայաստանում կազմակերպել են կառավարման իրենց զուգահեռ ու փոխկապակցված մարմինները, որոնք թույլ տվեցին ղեկավարությունը մոտեցնել անմիջապես աղետի վայրին:

Այդպես էին գործում նաև ՀԱՄԿԽ-ը, երկրի և հանրապետության կոմերիտ-

միությունը, հասարակական մյուս կազմակերպությունները: Դրա շնորհիվ մի քանի
օրում կազմվեց կառավարման այնպիսի մեխանիզմ, որը թույլ տվե՞ց [illegible]կերպատիվորեն
գործի դնել հսկայական մարդկային ու նյութական ռեսուրսներ և դրանք օգտագործել
հօգուտ մարդկանց փրկության:

Ցավոք, բոլոր ղեկավարները չէ, որ գտնվեցին իրավիճակի բարձրության վրա:
Երբեմն դրսևորվում էին անպատասխանատվություն ու անձեռնհասություն, անօգ-
նականություն, ցանկալին իբրև իրական ներկայացնելու սովորություն և պարզապես
աշխատելու անընդունակություն: Անցած 12 օրերը շատ հստակորեն ցույց տվեցին,
որ դժբախտության մեջ են ճանաչվում ոչ միայն բարեկամները, այլև ղեկավարները:
Դրանից, իհարկե, համապատասխան հետևություններ կարվեն:

Մենք չենք կարող չասել արիության, հիրավի, զանգվածային հերոսության մա-
սին, որ ցույց տվեցին հազարավոր կոմունիստներ և անկուսակցականներ, սովետա-
կան ու կոմերիտական աշխատողներ, տնտեսական ղեկավարներ, շարքային աշխա-
տավորներ, զինծառայողներ:

Կիրովականի ավտոմատիկայի գործարանի գլխավոր՛ ինժեներ Բալասան Մա-
ղաքյանը, հենց որ սկսվեց երկրաշարժը, վազեց դեպի դպրոց, մտավ դեռևս ջղաձգու-
թյուններից ցնցվող շենք, թևի տակ առավ լացող երեխաներին, դուրս վազեց. Հետո
էլի, կրկին ու կրկին... Երբ հերթական անգամ մտավ դպրոցի շենքը, վերջին ցնցումը
ավերեց ամբողջ առաջին հարկը և Մաղաքյանը մնաց փլատակների տակ: Մահա-
ցավ առանց գիտակցության գալու, մի ամբողջ շարք վիրահատություններից հետո:

Այդ օրը քիչ կյանքեր չփրկեցին սովխոզի կուսբյուրոյի քարտուղար Ռազմիկ
Դոխոլյանը, սովխոզի բանվոր Հովիկ Դոխոլյանը, շրջպատկոմի աշխատող Գառ-
նիկ Գոքորյանը, մշակույթի տան գեղարվեստական ղեկավար Արծրուն Գագիկյանը,
ֆիզկուլտուրայի դասատու Ավետիք Թորոսյանը:

Խոր հարգանք են ներշնչում կուսակցության Սպիտակի շրջկոմի առաջին քար-
տուղար Նորիկ Մուրադյանի և կուսակցության Լենինականի քաղկոմի առաջին քար-
տուղար Միսակ Մկրտչյանի արիությունը, հավատարմությունը կուսակցական պարտ-
քին: Նրանք կորցրեցին հարազատ մարդկանց, աշխատանքային ընկերներին, բայց
այս բոլոր ողբերգական օրերին գտնվում են կենդանի մնացածներին փրկելու պայ-
քարի բուն կենտրոնում, իրենց ինքնատիրապետմամբ, անձնվեր աշխատանքով քա-
ղաքացիականության և արիության օրինակ են ցույց տալիս: Իրենց գործերով այդ
կոմունիստները արժանացան մարդկանց անսահման հարգանքին, մասսաների իս-
կական ղեկավարներ կոչվելու իրավունքին:

Հատկապես պետք է ընդգծել այն ակնառու դերը, որ փրկարար աշխատանք-
ներում, աղետի շրջանում բնակչության կենսագործունեությունն ապահովելու և հա-
սարակական կարգը պահպանելու գործում կատարում են սովետական բանակի,
քաղաքացիական պաշտպանության, ներքին զորքերի զինվորներն ու սպաները, ՍՍՀՄ
ներքգործմինիստրության մարմինները: Ներկայումս անմիջականորեն աղետի գոտում
աշխատում են 20 հազարից ավելի զինծառայողներ, որոնց տրամադրության տակ կա
մոտ երեք հազար միավոր զանազան տեխնիկա: Երկրաշարժի օջախում զորքերը
մաքրել են 43 կիլոմետր անցումներ փլվածքներում, շուրջ 100 կիլոմետր ճանապարհ-
ներ: Ռազմիկները շատ բան արեցին բնակչության կենսապայմանները թեթևացնելու
համար: Նրանք հանձնել են 17,5 հազար վրան, 200 շարժական խոհանոց, երկու
շարժական փուռ, գործարկել երեք բաղնիքալվացքային գնացք, 75 զորային էլեկ-
տրակայան, կազմակերպել ամեն օր երկու անգամ տրվող սնունդ 37 հազար մարդու
համար:

Ռազմափոխադրական ավիացիան կատարել է 900-ից ավելի ուղերթ, որից 150-ը՝
ԱՆ—124 «Ռուսլան» և ԱՆ—22 «Անթեյ» գերծանր ինքնաթիռներով:

Սովետական բանակի ռազմիկների հետ սերտորեն կապված էին գործում ներ-
քին զորքերի զորամասերը և միլիցիայի ստորաբաժանումները, որոնց թվակազմը
աղետյալ շրջաններում ներկայումս հասնում է մոտ 5,5 հազար մարդու:

Այս օրերին հսկայական աշխատանք է կատարում մեր քաղաքացիական ավիա-
ցիան: Առաջին իսկ օրը օդաչուները 130 թռիչք կատարեցին աղետի շրջան, այնտեղ
հասցնելով յոթ հարյուր բուժաշխատողների ու փրկարարների, էվակուացնելով 2,5
հազար ծանր վիրավորների և տուժած մարդկանց: Դեկտեմբերի 9-ին սկսվեց տեխ-
նիկայի ու բեռների փոխադրումը ծանր փոխադրական ինքնաթիռներով, որոնք 1680
ուղերթ են կատարել: Ռազմափոխադրական ավիացիայի հետ համատեղ Երևանի և
Լենինականի օդանավակայաններ է հասցվում 27 հազար տոննա բեռ, այդ թվում



347 ամբարձիչ, 54 էքսկավատոր, 12 հազար վրան և շատ այլ բաներ: Այսօր ար-
դյունքներն ամփոփելիս քաղաքացիական ավիացիայի մինիստրի տեղակալը զեկու-
ցեց, որ թռիչքների և այդ երկու օդանավակայանում կատարվող վայրէջքների լար-
վածությունը նախքան երկրաշարժը եղած նորմալ իրադրության համեմատ ավելացել
է յոթ անգամ:

Ներկայումս հանրապետությունը օրական ստանում է ավելի քան երեք հար-
յուր տոննա պարենամթերք, որ կրկնակի ավելի է, քան մինչև երկրաշարժը: Իսկ
ընդհանուր հաշվով որպես անհատույց օգնություն արդեն ստացվել են մոտ հինգ
միլիոն ռուբլու պարենամթերք, սպառողական ապրանքներ: Հասկանալի է, որ հաշ-
վառումն ու բաշխումը պահանջում են հմուտ ձեռքեր և սթափ դատողություն: Տեղե-
րում այդ աշխատանքը գլխավորեցին քաղաքային, շրջանային ու գյուղական սովետ-
ների գործկոմները հասարակայնության լայն աջակցությամբ:

Փաստորեն լուծված է տուժած բնակչության կենսապահովման հետ կապված
հարցերի համալիրը: Արդեն վերականգնված է նորմալ ջրամատակարարումը Լենի-
նականում և Կիրովականում: Սպիտակում տեղական աղբյուրները օգտագործվում
են միայն մասամբ, ջուրը այստեղ հիմնականում բերովի է: Ամենուրեք մանրակրկիտ
վերահսկողություն է սահմանված ջրի որակի նկատմամբ:

Նախագծային հզորության հասավ Հրազդանի պետական շրջանային էլեկտրա-
կայանը: Էլեկտրաէներգիա է մատակարարվում Սպիտակին: Լենինականում և Կիրո-
վականում վերականգնված են էլեկտրաենթակայանները, նորոգվում, նոր էլեկտրա-
կան ցանցեր են գցվում գյուղական շրջաններում:

Լենինականում գործում է հեռախոսացանցը առաջին հարյուր հիսուն բաժա-
նորդների համար: Սպիտակում հաստատվել է քաղաքային շտաբի հեռախոսային
կապը վերականգնողական աշխատանքներ կատարող բոլոր կազմակերպությունների
հետ: Տասնմեկ շրջկենտրոններում գործարկվել են շարժական հեռախոսակայաններ,
որոնք կապում են 255 գյուղական բնակավայր: Ամենուրեք կարգավորված է կայուն
փոստային կապը:

Կարծում եմ, ձեզ հայտնի է նաև այն փաստը, որ Լենինականում, Սպիտակում,
Կիրովականում սկսել են լույս տեսնել թերթերը, որոնց թողարկումը խափանել էր
երկրաշարժը: Իսկ այսօր լույս տեսավ տեղեկագրի առաջին համարը, որն ունի
«Հույս» և «Որոնում» բաժիններ: Այդ բաժինները ծնողներին փնտրող երեխաների
և երեխաներին փնտրող ծնողների համար են: Մի խոսքով, բոլոր նրանց համար,
ովքեր երկրաշարժի ժամանակ կորցրել են կապը իրենց մերձավորների, բարեկամ-
ների հետ: Տեղեկագրի տպաքանակը 100 հազար օրինակ է: Այն հրատարակվում է
հայերեն և ռուսերեն, երկրում տարածվում է անվճար:

Պակաս կարևոր չէին տուժածներին ժամանակավոր կացարանով ապահովելու
հարցերը: Աղետի գոտու քաղաքներն ու գյուղական շրջաններն են տարվել ավելի
քան 10 հազար տարողունակ, տաք վրաններ, 28 հազար դաշտային վագոնիկներ,
հավաքովի տներ, յուրտեր: Մարդիկ հիմնականում ապահովված են տաք սննդով:

Փրկարար գործողությունների հետ միաժամանակ կատարվում է նաև բնակչու-
թյան էվակուացում: Այդ աշխատանքը ղեկավարում է ՀԱՄԿԽ-ի նախագահ Ս. Ա.
Ծալանը: Արհմիությունները կազմակերպել են էվակուացիոն կետեր, մասսայական
ինֆորմացիայի մարմինների հետ միասին բացատրական և կազմակերպական մեծ
աշխատանք են կատարում: Էվակուացիան անօթևան մնացած երեխաների, կանանց,
ծերունիների համար նորմալ կենսապայմանների ստեղծում է, մանավանդ, որ այժմ
ձմեռ է: Իսկ երեխաներին, բացի այդ, հնարավորություն է տրվում շարունակելու
ուսումը: Ինչ վերաբերում է տղամարդկանց, ապա նրանք ներգրավվում են ձեռնար-
կությունների վերականգնման աշխատանքների մեջ, նրանք են համալրել շինարա-
րական կազմակերպությունները:

Պետք է ասեմ, որ երկրաշարժի առաջին օրերին ոչ ոք չէր ուզում հեռանալ
գոտուց: Բայց փրկարար աշխատանքների անցկացմանը զուգընթաց իրադրությունը
կտրուկ փոխվեց: Դեկտեմբերի 18-ի դրությամբ էվակուացվել է մոտ 70 հազար մարդ,
այդ թվում՝ 37 հազարը՝ Հայաստանի սահմաններից դուրս: Նրանք տեղավորվել են
Վրաստանի, Կրասնոդարի, Ստավրոպոլի երկրամասերի, Ուկրաինայի և Մոլդավիա-
յի լավագույն առողջարաններում, պանսիոնատներում, հանգստյան տներում: Արհ-
միություններն իրենց վրա են վերցրել առողջարաններում նրանց նկատմամբ հոգա-
ծության ու սննդի բոլոր ծախսերը, էվակուացման շրջաններում սկսել են գործել ա-
ռաջին հայկական դպրոցները, մանկապարտեզները:

Անապայի ու Եվպատորիայի հայտնի մանկական առողջարանները մոտ օրերս

կընդունեն 7 հազար երեխաների, դաստիարակների ու ծնողների: Այսօր Կիրովականից
Անապա մեկնեց առաջին երեք գնացքը: Առաջին կոնտինգենտը՝ 700 գյուղական
բնակիչներ, ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի գործերի կառավարչության Կիսլովոդսկի,
Նալչիկի, Գագրայի և մերձմոսկովյան առողջարանները: Կարծում եմ, որ մենք առա-
ջիկա երեք-չորս օրում լիովին կավարտենք բնակչության էվակուացումը:
Տուժած քաղաքների ու գյուղերի մեծ մասում պահպանվում է սանիտարահիգիե-
նիկ կայուն իրավիճակը: Դարձյալ, ինչպես աղետի առաջին օրերին, անձնվիրաբար
են աշխատում բուժաշխատողները:
Առանձնակի ուշադրության են արժանի գյուղական շրջանները: Երկրաշարժի գո-
տում էին գտնվում 90 կոլտնտեսություն և 209 սովխոզ, 12 միջտնտեսային և 32 ար-
դյունաբերական, 52 շինարարական և ուրիշ շատ ձեռնարկություններ ու կազմակեր-
պություններ: Լրիվ ավերվել են 58 գյուղ, 21 հազար բնակելի տուն: Հարկավոր է
վերականգնել 83 դպրոց, 88 մանկապարտեզ, 84 հիվանդանոց ու բուժկետ, տասնյակ
խանութներ, փոստատներ ու հեռագրատներ, 119 ակումբ ու մշակույթի տուն:
Մեծ վնաս է հասել արտադրական օբյեկտներին: Կոտորվել է 24 հազար գլուխ
խոշոր եղջերավոր անասուն, 45 հազար ոչխար, ավելի քան 8 հազար խոզ: Ակնառու-
վում է սատկած անասունների հորումը: Մեծ վնաս է հասել ագրոարդյունաբերական
համալիրի վերամշակման ճյուղերին: Նախնական գնահատման համաձայն, հանրա-
պետության ագրոարդյունաբերական համալիրի գծով ամբողջ վնասը կազմում է մոտ
երկու միլիարդ ռուբլի:
Մեզ հաճախ են հարցեր տալիս կորուստների հատուցման առումով տուժած-
ների ֆինանսական օգնության մասին: Այդ հարցերի վերաբերյալ օրերս որոշումներ
ընդունեց ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը: Դրանք հրապարակվել են մամուլում և
անուշադրության չեն մատնում երկրաշարժից տուժած մարդկանց շահերը շոշափող
և ոչ մի հարց:
Ինչպես երևում է բնակչության հետ զրույցներից, մարդիկ երախտագիտությամբ
են ընդունում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ու սովետական կառավարության այդ
որոշումները:
Այժմ մենք մտնեցել ենք աշխատանքի երկրորդ, ավելի տևական փուլին: Դրա
վերջնական նպատակն է վերականգնել ռեգիոնի սոցիալ-տնտեսական կարողությու-
նը: Աղետի գոտում կա միութենական-հանրապետական ենթակայության ավելի քան
200 ձեռնարկություն: Երկրաշարժի ընդգրկած շրջանները կարևոր դեր են խաղում
հանրապետությանը գյուղատնտեսական մթերքի մատակարարման գործում: Դրան-
ցից շատերը խիստ տուժել են, մի քանիսը հարկ կլինի նորից կառուցել:
Հանրապետությունը ստեղծված իրավիճակից մենակ դուրս գալ չի կարող: Նրա
էկոնոմիկան, ուրեմն և սոցիալական կառուցվածքը կարող են նախատեսված եր-
կամյա ժամկետում վերականգնվել բոլոր միութենական մինիստրությունների ու գե-
րատեսչությունների, համասեռ ձեռնարկությունների աշխատավորական կոլեկտիվ-
ների ամենաակտիվ մասնակցությամբ միայն:
Այդ ասպարեզում ջանքերը միավորելու նպատակով ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյու-
րոյի հանձնաժողովը Երևանում անցկացրեց մի շարք միութենական մինիստրություն-
ների և կենտրոնական տնտեսական գերատեսչությունների ղեկավարների խորհրդակ-
ցություն՝ Հայաստանի ղեկավարության մասնակցությամբ:
Խորհրդակցությունում վճռեցին շատ գործարանների, ֆաբրիկաների, միավո-
րումների, կոլտնտեսությունների, ֆերմաների հետագա ճակատագիրը: Որոշվեցին
աշխատանքի առաջնային ուղղությունները, քննարկվեցին, թե որ ձեռնարկություն-
ներն է պետք թողնել նախկին տեղում և որոնք տեղափոխել կամ վերապրոֆիլավո-
րել:
Ուզում եմ առանձնապես ընդգծել, որ վերակառուցվելիք և վերականգնվելիք բո-
լոր ձեռնարկությունները արմատապես կնորացվեն ժամանակակից տեխնիկայի, ա-
մենաառաջավոր տեխնոլոգիայի հիման վրա: Դա կմեծացնի նրանց կարողություննե-
րը, արտադրության կուլտուրան, կոլեկտիվներին հնարավորություն կտա թողարկել
լիարժեք, մրցունակ արտադրանք: Հարկ է նշել, որ պլանավորվում է արտադրական
մասնաշենքերի մեծ մասը կառուցել թեթև կոնստրուկցիաներից, դրանք, ինչպես
ցույց է տվել կյանքը, շատ ավելի հուսալի ու ավելի ռացիոնալ են երկրաշարժային
գոտում:
Հանրապետության քաղաքաշինական պրոբլեմները, որտեղ հողը բառացիորեն
քաշով մեկ ոսկի արժի, հեշտ չեն: Հարց է ծագում. պե՞տք է արդյոք բնակելի շինու-
թյունները վերականգնել նախկին տեղում: Գիտնականների խորհրդով Սպիտակում



դրանք կտեղաբաշխվեն առավել ապահով գոտում: Հիմնականում ծրագրվում է կա-
ռուցել եռահարկ-քառահարկ շենքեր: Լենինականն ու Կիրովականը կվերականգնվեն
իրենց նախկին տարածքներում: Ընդ որում, առանձնապես կարևոր է խնամքով պահ-
պանել նրանց պատմականորեն ձևավորված տեսքը, հայկական ազգային ճարտա-
րապետության ամբողջ կոլորիտը: Մենք իրավունք չունենք սերունդներին թողնել
անդեմ երկվորյակ քաղաքներ, ուստի կառուցապատման բոլոր նախագծերը պետք է
բաց լինեն հասարակական լայն քննարկման համար: Վերջնական որոշումներ կըն-
դունվեն միայն նրանց կարծիքները հաշվի առնելով, ովքեր պետք է ապրեն վերա-
կանգնված քաղաքներում ու գյուղերում:
Հայաստանում փրկարար աշխատանքների փորձից, որոնց անցկացմանը ակտիվ
մասնակցություն ցուցաբերեցին արտասահմանյան շատ երկրներ, ջոկատներ ու մաս-
նագետներ, այս հետևությունն է արվում. խոշոր աղետների հաղթահարման համար
անհրաժեշտ է միավորել միջազգային ջանքերը: Դա կհամապատասխաներ համա-
մարդկային շահերին, որոնց գերադասությունն ավելի ու ավելի է իրեն զգալ տալիս
մեր փոխկախյալ աշխարհում: Ի՞նչ ձևով է նախընտրելի իրականացնել այդ գաղա-
փարը և ու՞մ հովանու ներքո է պետք ստեղծել միջազգային շտապ օգնության կազ-
մակերպությունը՝ դա, ըստ երևույթին, համաշխարհային ընկերակցության մասնա-
կիցների, միջազգային կազմակերպությունների բանակցությունների հարց է: Սովե-
տական Միությունը պատրաստ է լուրջ քայլեր անելու այս մարդասիրական ոլորտում:
Հայաստանի դժբախտությունը դարձել է մեր ամբողջ երկրի, բոլոր եղբայրա-
կան հանրապետությունների դժբախտությունը: Այն սուր ցավ է պատճառել միլիո-
նավոր մարդկանց սրտերին, կարեկցանքի, բարյացակամության և օգնության հասնե-
լու եղբայրական պատրաստակամության մարդասիրական զգացում է առաջ բերել:
Այդ զգացումները ծնվել են ոչ այսօր: Եվ դրանք, իհարկե, սոսկ դժբախտության
պտուղ չեն: Դա նախ և առաջ մեր ժողովուրդների ոգու ընդհանրության, նրանց ճա-
կատագրի ընդհանրության վսեմ դրսևորում է, որն ամրապնդվել է հեղափոխության
հաղթանակի համար, մեր հայրենիքի ազատության, անկախության համար, նոր հա-
սարակության, սոցիալիզմի համար մղված համատեղ պայքարում:
Կուսակցության Կենտրոնական կոմիտեի և սովետական կառավարության անու-
նից խորին շնորհակալություն եմ հայտնում ամբողջ սովետական ժողովրդին այն
բանի համար, որ Հայաստանի և ամբողջ երկրի համար դժվարին օրերին նա դըր-
սևորեց իր բնավորության լավագույն գծերը, օգնության շտապեց տուժածներին,
տալով դրա համար անհրաժեշտ ամեն ինչ:
Սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ եղբայրության առջև, որն այս
օրերին դրսևորվում է առանձնակի ուժով, չեն կարող չընկրկել վիրավորանքներն ու
անբարյացակամության զգացումները, որոնք երբեմն մնայլում են ազգամիջյան հա-
րաբերությունները: Այս րոպեներին եկեք խորհենք այն մասին, թե որքան մեծ ու
բախտորոշ է այն, ինչը մեզ համախմբում ու միավորում է, և որքան վնասակար ու
հակաբնական է այն ամենը, ինչը մեզ անջատում ու թուլացնում է:
Գտնվելով այստեղ, մենք տեսնում ենք, որ հայ ժողովուրդը, արիաբար տոկա-
լով ծանր փորձություններին, կարողանում է գնահատել բարիդրացիությունն ու բա-
րեկամությունը, եղբայրությունն ու համախմբվածությունը, որոնք բոլորիս ներշնչում են
վստահություն, ուժ ու վերակառուցման գործում հաջողության հասնելու երաշխիք:
Այնուհետև Ն. Ի. Ռիժկովը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի մյուս
անդամները պատասխանեցին թղթակիցների հարցերին:
**«Լիտերատուրնայա գազետա» թերթի** թղթակցի հարցը. Մի րոպեի ընթաց-
քում տուժեցին Հայաստանի գրեթե 400 գյուղեր, իսկ 58-ը լիովին կործանվեց: Ար-
դյոք այդ բոլոր գյուղերը լիովին կվերականգնվե՞ն:
**Ն. Ի. Ռիժկով.** ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի կարծիքն այստեղ
հաստատուն է ու միանշանակ: Պետք է վերականգնվեն բոլոր գյուղերը, որոնք տու-
ժել են մասամբ կամ ավերվել են լիովին: Սա թե՛ հանրապետության ղեկավարու-
թյան, թե՛ քաղբյուրոյի հանձնաժողովի միասնական կարծիքն է: Մենք գտնում ենք,
որ անթույլատրելի կլիներ այդ գյուղերը լքել:
**ՏԱՍՍ-ի թղթակցի հարցը.** Այստեղ աշխատում է Սովետական Միության հեռա-
գրական գործակալության բրիգադը: Մենք քանիցս եղել ենք Լենինականում և հա-
մոզվել, որ քաղաքում քիչ թե շատ պահպանվել են հնաշեն շենքերը, մինչդեռ պա-
նելային կոնստրուկցիաներից կառուցված ժամանակակից բազմահարկ տները ա-
վերվել են: Արդյոք պատասխանատվության կենթարկվե՞ն այն անձինք, որոնք կար-
գադրել էին բազմահարկ շենքերի շինարարությունը, առանց հաշվի առնելու գոտու

երկրաշարժաբանական առանձնահատկությունները: Եվ երկրորդ հարցը. դուք ինչ-
պե՞ս եք գնահատում մասսայական լրատվության սովետական միջոցների դերն ու
աշխատանքը այս օրերին:

**Ն. Ի. Ռիժկով.** Մենք հատկապես ստեղծեցինք կառավարական հանձնաժողով:
Երեք փաստաթուղթ ստորագրվեց: Հրավիրել ենք մեր երկրի խոշորագույն գիտնա-
կաններին, որոնք պետշինի նախագահի տեղակալի գլխավորությամբ պետք է ամենա-
մանրակրկիտ կերպով քննեն այդ հարցը և եկող տարվա առաջին եռամսյակում պաշ-
տոնական եզրակացություն ներկայացնեն ՍՍՀՄ կառավարությանը: Մեր կարծիքով,
այստեղ մի քանի սխալ է թույլ տրված:

Առաջին: Այն կառուցվածքի իններկանի տները, որոնք կառուցվել էին Լենինա-
կանում, չեն դիմանում երկայնակի բեռնվածությանը, այսինքն առհասարակ դրանք
չէր կարելի տեղադրել այս երկրաշարժաբանական գոտում: Երկրորդ: Այն նախնա-
կան գնահատականները, որ տալիս են մասնագետները, վկայում են, որ շատ ցածր
է եղել շինարարության որակը: Թույլ էին տրվել տեխնոլոգիայի լուրջ խախտումներ:
Սրանք զուտ նախնական գնահատականներ են: Ես արդեն ասացի, որ ստեղծվել է
կառավարական հանձնաժողով, որը եզրակացություն կտա և, անշուշտ, ամենալուրջ
հետևությունները կարվեն: Մասնավորապես այն ղեկավարների վերաբերյալ, որոնք
հանրապետությունում զբաղվել էին այդ հարցով: Կարվեն նաև համապատասխան
առաջարկություններ, որպեսզի այսուհետև նմանօրինակ վիճակ թույլ չտրվի:

Երկրորդ հարցը վերաբերում է մասսայական լրատվության օրգաններին: Մենք
շատ դրականորեն ենք գնահատում նրանց աշխատանքը: Ասել, թե ոչ մի թերություն
չկա, ըստ երևույթին, չի կարելի: Ամեն տեղ էլ թերություններ կան, բայց ընդհան-
րապես մասսայական լրատվության օրգանները լավ են աշխատել:

**«Մայակ» ռադիոծրագրի թղթակցի հարցը.** Արդյոք նպատակահարմար չէ՞ ստեղ-
ծել «արագ արձագանքման ուժեր», հենակետեր երկրի երկրաշարժունակ գոտիներում:

**Ն. Ի. Ռիժկով:** Այս օրերին հեռանկարային հարցերի քննարկման համար շատ
քիչ ժամանակ էր մնում: Փաստորեն այն չկար: Բայց, այդուհանդերձ, գտնվելով այս
իրադարձությունների հորձանուտում և տեսնելով, թե ինչ հետևանքների է հանգեցրել
տարերային աղետը, իրատեսորեն գնահատելով մեր փրկարար աշխատանքների ա-
ռավելություններն ու թերությունները, իսկ, մեր կարծիքով, շատ ու շատ դրական
բան կա մասնավորապես մեր երկրի բոլոր ուժերն ու միջոցները մոբիլիզացնելու
գործում, միևնույն ժամանակ մենք տեսնում ենք նաև թերությունները: Երբ լարվա-
ծությունն անցնի, երբ աշխատանքները նորմալ ռիթմի մեջ մտնեն, կպահանջվի շատ
լրջորեն ծանրութեթև անել այդ պրոբլեմները:Եվ ես կարծում եմ, բանը նույնիսկ
այն չէ, թե հարկավոր է ստեղծել արագ արձագանքման ինչ-որ կենտրոններ միայն,
ասենք, Միջին Ասիայի և Անդրկովկասի համար: Պետք է ստեղծել արագ արձա-
գանքման համակարգ, որն օժտված լիներ թե՛ գիտատեխնիկական, թե՛ արտադրա-
կան կարողությամբ, որպեսզի լինեին պահեստային տեխնիկա, դեղորայք, փոխա-
դրամիջոցներ, որոնք կարող էին ցանկացած ժամանակ ներգրավվել այս կամ այն
վթարային իրավիճակի վերացման գործում: Հենց որ հասնենք Մոսկվա, համապա-
տասխան ծառայություններին կհանձնարարենք ձեռնամուխ լինել նման համակարգի
մշակմանը: Ես նույնիսկ երեկ արտասահմանում աշխատող ընկերներին խնդրեցի
հավաքել այդ հարցի վերաբերյալ եղած բոլոր տեղեկությունները:

**«Կրասնայա զվեզդա» թերթի թղթակցի հարցը.** Մամուլի նախորդ ասուլիսում
Դուք ասացիք առաջին փուլում բանակի կատարած դերի մասին: Ի՞նչ նշանակու-
թյուն է հանձնաժողովը տալիս նրան երկրորդ փուլում:

**Ն. Ի. Ռիժկով.** Ես արդեն ասացի, որ հիմա մեզ մոտ աղետի գոտում աշխատում
են զինվորական ստորաբաժանումների քսան հազարից ավելի և քաղաքացիական
պաշտպանության տասը հազար զինվոր ու սպա: Իհարկե, ֆունկցիաները կփոխվեն:
Հիմա նրանք մաքրում են փլվածքները, իսկ վաղը կսկսեն նախապատրաստական
շինարարական աշխատանքներ, ապա նև բուն շինարարությունը:

**«Սովետսկայա կուլտուրա» թերթի թղթակցի հարցը.** Ինչի՞ն կհատկացվեն երկ-
րաշարժից տուժածների համար ստացվող վալյուտային միջոցները: Երկրորդ. հայտ-
նի է, որ նախկինում բնակավայրերի զարգացման ասպարեզում տիրապետում էր
սոցկուլտկենցաղի օբյեկտների վերաբերմամբ մնացորդային սկզբունքը: Կարելի՞ է
արդյոք հուսալ, որ Հայաստանի ավերված քաղաքներն ու գյուղերը վերականգնելիս
այն նորից չի դրսևորվի:

**Ն. Ի. Ռիժկով.** Վալյուտային միջոցների մասին: Դրանք կենտրոնանում են եր-



կու տեղում՝ անմիջականորեն Հայաստանում և Մոսկվայում՝ արտոնոտբանկում: Մենք
հիմա դեռևս չգիտենք, թե այդ միջոցները ինչքան կլինեն, որովհետև դեռևս շարու-
նակում են դրամական փոխադրումներ ստացվել: Ինչպե՞ս ենք մտադիր դրանք
ծախսել: Այդ հարցը քննարկել ենք Հայաստանի ղեկավարության հետ: Վալյուտային
բոլոր միջոցները, որ ստացվել են և ստացվում են պետություններից, առանձին ֆիր-
մաներից, առանձին քաղաքացիներից, մենք լիովին կհանձնենք Հայաստանի հան-
րապետությանը, լիովին, մինչև վերջին կոպեկը: Այդ փողերը մենք կենտրոնացված
կերպով չենք ծախսի, դրանք կհանձնվեն անմիջականորեն հանրապետությանը: Հան-
րապետությունը, ըստ իս, որոշել է, թե ինչպես է ծախսելու այդ միջոցները: Որոշում
է կայացվել, ճիշտ է, առայժմ նախնական, որ այդ բոլոր միջոցներով բուժսարքավո-
րումներ են գնվելու այն հիվանդանոցների, պոլիկլինիկաների, ծննդատների հա-
մար, որոնք նորից են կառուցվելու աղետյալ գոտում:

Երկրորդ հարցը վերաբերում է սոցկուլտկենցաղի օբյեկտներին: Ես կարծում
եմ, որ այստեղ ամեն ինչ ճիշտ հակառակը կլինի: Մենք պետք է սկսենք հենց սոց-
կուլտկենցաղի օբյեկտներից: Հարկավոր է առաջին հերթին կառուցել դպրոցներ, հի-
վանդանոցներ, մանկապարտեզներ, զուգահեռաբար՝ բնակարաններ: Ուստի մենք
համոզված ենք, որ հնարավոր է այդ քաղաքների ներդաշնակ զարգացում:

**ՏԱՍՍ-ի մեկնաբանի հարցը.** Հարցն ուղղվում է Նիկոլայ Նիկիտովիչ Սլյունկո-
վին: Այս բոլոր դժվարին օրերին քաղբյուրոյի հանձնաժողովը ժողովրդի հորձանու-
տում էր, շփվում էր նրա հետ, մարդկանց տեսնում գործի մեջ: Ձեր կարծիքով, իրենց
ինչպե՞ս դրսևորեցին հանրապետության կոմկուսի սկզբնական կազմակերպություն-
ները, նրա հիմնական օղակը:

**Ն. Ն. Սլյունկով.** Պետք է ասեմ, որ չնայած շատ բարդ իրադրությանը, որը
բնորոշվում է ոչ միայն ավերածությունների չափերով, այլև կուսակցական, սովետա-
կան, տնտեսական մարմինների մեծ թվով ղեկավարների, կուսակցական ակտիվի
զգալի մասի զոհվելով, հանրապետական կուսակցական կազմակերպությունն ամբող-
ջությամբ վերցրած, սկզբնական կազմակերպությունները, շրջանային կոմիտեները ի-
րենց լավագույնս դրսևորեցին: Նիկոլայ Իվանովիչ Ռիժկովը նշեց մի շարք անուններ:
Այս ողբերգական տարեգրության մեջ քիչ չեն օրինակները, որոնք լավագույնս են
բնութագրում կոմունիստներին, նրանց զսպվածությունը, տոկունությունը, խիզախու-
թյունը, ինքնատիրապետումը, անձնազոհությունը անչափելի աղետի դեմ հանդիման:

Ընկեր Մուրադյանը՝ կուսակցության Սպիտակի շրջկոմի առաջին քարտուղարը,
ընտանիքի տասնմեկ անդամ է կորցրել, բայց նա չերերաց, ողջ մնացած կոմու-
նիստների հետ գլխավորելով մարդկանց փրկության կազմակերպման, առաջին բուժ-
օգնության, նրանց կենսապահովման պայմանների ստեղծման ամբողջ աշխատանքը:
Նա անգամ չկարողացավ ներկա լինել իր մերձավորների հուղարկավորություններին՝
չէր հեռանում իր աշխատավայրից, չէր հեռանում մարդկանցից, ժողովրդից:

Դա օրինակ է այն բանի, թե ինչպիսին պետք է լինի ոչ թե պարզապես կուսակ-
ցական կազմակերպության քարտուղարը, այլ հենց կուսակցական կազմակերպու-
թյան ղեկավարը, նրա իսկական լիդերը: Ես անգամ կասեի՝ ազգային հերոսը: Այս-
պես են նրան գնահատում ոչ միայն կոմունիստները, այլև բոլոր աշխատավորները:
Հենց այդպիսի կոմունիստներ են գլխավորել ամբողջ աշխատանքը ամենաողբերգա-
կան ժամերին և օրերին:

Լենինականում էլ կուսակցական շրջանային կոմիտեի առաջին քարտուղարը,
որտեղ փաստորեն բյուրոյի անդամներ ողջ չեն մնացել, նույն կերպ է գործել: Գործ-
կոմի նախագահը, կոմունիստը, որը նույնպես կորցրել է ընտանիքը, դարձյալ մնաց
շարքում: Այդպիսի օրինակներ շատ են: Մենք քիչ բնակավայրեր չենք այցելել, որ-
տեղ ողջ մնացած կոմունիստները առաջինն են դուրս եկել մարդկանց փրկելու և
հեռացել են վերջինը:

Չի կարելի, կարծում եմ, այստեղ չհիշել նաև կուսակցության Երևանի քաղա-
քային կոմիտեի, քաղաքի շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպու-
թյունների, կոմունիստների աշխատանքը: Արհավիրքից արդեն մի քանի ժամ հետո
ավելի քան 7 հազար մարդ տեխնիկայով եկավ աղետի վայրը և սկսեց փրկարար
աշխատանքները: Դրանց այնուհետև մասնակցեց ավելի քան 70 հազար մարդ:

Շատ բարդ վիճակ է ստեղծվել գյուղական վայրերում, քանի որ սկզբում բոլոր
ուժերը նետվել էին խոշոր քաղաքներ: Այստեղ էլ կոմունիստները նախաձեռնություն
հանդես բերեցին, ստանձնեցին շեֆությունը, կոնկրետ օգնություն են ցույց տալիս
տուժած շրջաններին, գյուղական շրջկոմներին: Այդ ազնիվ աշխատանքին մասնակ-
ցում են Երևանի շրջանային կոմիտեներն ու սկզբնական կուսակցական կազմակեր-

պությունները: Երբ որոշակի դժվարություններ էին առաջանում բեռների հոսքի մշակման գործում, որոնք այժմ առանձնապես ինտենսիվորեն են ստացվում, երբ որոշակի օգնություն էր պահանջվում բեռնաթափման կազմակերպման գործում, օպերատիվ կերպով շտաբ ստեղծվեց, և կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեն իր վրա վերցրեց այդ աշխատանքի կազմակերպման պատասխանատու առաքելությունը: Կարելի է բերել այսպիսի տասնյակ, հարյուրավոր, հազարավոր օրինակներ...

**«Սոցիալիստիչեսկայա ինդուստրիայի» թղթակցի հարցը.** Ե՞րբ կդրվի առաջին տան հիմնաքարը, որքա՞ն ռեալ ժամանակ կպահանջվի քաղաքների ու գյուղերի վերականգնման համար:

**Ն. Ի. Ռիժկով.** Երբ կավարտենք, ասեմ՝ երկու տարի հետո: Իսկ ահա թե առաջին հիմնաքարը երբ կդրվի, թող Յու. Պ. Բատալինը պատասխանի:

**Յու. Պ. Բատալին.** Առաջին եռամսյակին՝ հաստատ. մենք այժմ ստեղծել ենք երկրի և Հայաստանի գիտնականներից բաղկացած հանձնաժողով, որը մի քանի օրվա ընթացքում մեզ վերջնական որոշում կներկայացնի, թե որ տեղամասերում կարելի է տներ կառուցել և ինչ երկրաշարժադիմացկունության: Իսկ ինչ վերաբերում է ցածրահարկ տներին, ինդուստրիալ և փայտե վահանադետալներին, այդ տները կկառուցվեն հունվարին:

**Արմենպրեսի հարցը.** Իսկ եթե արտասահմանյան շինարարական ֆիրմաները ցանկություն հայտնեն կառուցել Հայաստանում, համաձայնություն կտրվի՞:

**Ն. Ի. Ռիժկով.** Նման մասնակցությունը մենք չենք բացառում: Նախնական խոսակցություններ են եղել Իտալիայի ներկայացուցիչների հետ: Նրանք ցանկություն են հայտնել մասնակցել Սպիտակի շրջանի գյուղերից մեկի շինարարությանը: Այժմ, ըստ երևույթին, այս հարցը ծանրութեթև է արվում Իտալիայի կառավարության կողմից: Եվ ես կասեմ, որ կաթողիկոս Վազգեն Առաջինի հետ մեր զրույցի ընթացքում նա ասաց, որ մտադիր է Հյուսիսային և Հարավային Ամերիկայում աշխատանք կատարել, որպեսզի հայկական համայնքները կարողանան նյութական ու ֆինանսական ռեսուրսները համակենտրոնացնել Ստեփանավանի վերականգնման համար: Եթե լինի առանձին պետությունների կամ ֆիրմաների բարի կամքը օգնություն ցույց տալու առանձին օբյեկտների կամ որոշ շրջանների շինարարության գործում, մենք շնորհակալ կլինենք դրա համար:

Ճիշտ այդպիսի առաջարկություններ քննարկվեցին նաև Կարմիր խաչի լիգայի գլխավոր քարտուղարի հետ կայացած զրույցի ժամանակ: Մենք շնորհակալություն հայտնեցինք ուղարկված դեղորայքի, տաք հագուստի ու վրանների համար և հաղորդեցինք, որ այժմ այստեղ դրանց պակասը չի զգացվում: Ըստ երևույթին, դրանք պետք կլինեն այլ երկրներում: Դրա հետ մեկտեղ մենք երախտագիտությամբ արձագանքեցինք զրույցի ընթացքում արված առաջարկությանը Հայաստանում որոշ օբյեկտներ կառուցելու համար այն միջոցների մոբիլիզացման մասին, որոնք ստանում է Կարմիր խաչը: Դրանք կարող էին լինել այնպիսի օբյեկտներ, ինչպես շարժունակությունը կորցրած մարդկանց հատուկ հոսպիտալ և պրոթեզների պատրաստման գործարան կամ փաբրիկա:

Երեկ մենք զրույց ունեցանք ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարի ներկայացուցչի հետ: Ու նորից նկատառումներ հայտնվեցին, որ նման օբյեկտների շինարարությունը, բացի իր մարդասիրական էությունից, կլինի նաև միջազգային լավ հարաբերությունների խորհրդանիշ:

**Պետհեռուստառադիոյի թղթակցի հարցը Ս. Գ. Հարությունյանին.** Հայաստանը, նրա տնտեսական պոտենցիալը նյութական ինչպիսի՞ ավանդ են մուծում երկրաշարժի հետևանքների վերացման գործում:

**Ս. Գ. Հարությունյան.** Դժվար է ասել, թե Հայաստանն ինչ վիճակում կլիներ այժմ, եթե այս դժվարին օրերին մեզ իր ուսով նեցուկ չլիներ մեր մեծ տերությունը: Մեր ժողովրդի երախտապարտ հիշողության մեջ ընդմիշտ կպահպանվեն ընդհանուր համերաշխությունը, երկրի բոլոր ծայրերից և ամբողջ աշխարհից մեզ օգնության մեկնված ձեռքերը:

Այս օրերին մենք բազմաթիվ նամակներ, հեռագրեր, հեռախոսազանգեր ենք ստանում: Մարդիկ իրենց անկեղծ երախտագիտությունը, շնորհակալությունն են հայտնում մեր երկրի բոլոր ժողովուրդներին, մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեին, Մ. Ս. Գորբաչովին, որը ընդհատեց այցը, անմիջապես եկավ այստեղ, հանրապետություն, եղավ իրադարձությունների էպիկենտրոնում, բազմաթիվ հանդիպումներ ունեցավ Լենինականի, Սպիտակի, Կիրովականի բնակչության հետ: Եվ այդ



հանդիպումները մեզ համար անգնահատելի նշանակություն ունեցան, որովհետև վստահություն ներշնչեցին խուճապահար հոգիներին, լավատեսությամբ համակեցին մեր բնակչությանը, Հայաստանի աշխատավորներին:

Ես պետք է ասեմ, որ մեզ՝ հանրապետության ղեկավարներիս համար, օրինակ է հանդիսանում նաև ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի գործունեությունը, որն առանց ձեռքերը ծալելու աշխատեց այս բոլոր օրերին, ժամերին, ես կասեի՝ անգամ րոպեներին: Այսօր մենք մի կերպ երկու ժամ գտանք, որպեսզի լինենք Երևանում, հանդիպում ունենանք քաղաքի բնակչության հետ: Մինչև հոգու խորքը հուզված էինք շնորհակալության այն անկեղծ խոսքերից, որ այսօր քաղաքի բնակիչներն արտահայտում էին մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի, հանձնաժողովի, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հասցեին այս օրերին կատարած աշխատանքի համար:

Ես կցանկանայի Հայաստանի ժողովրդի, հանրապետության աշխատավորության անունից շնորհակալության խոսքեր հասցեագրել համաշխարհային ընկերակցությանը, բոլոր երկրներին ու ժողովուրդներին, որոնք օգնության ձեռք մեկնեցին Հայաստանին: Հայաստանի դժբախտության էպիկենտրոնը այսօր ըստ էության դարձել է հումանիզմի, գթասրտության ու մարդկայնության էպիկենտրոն: Ինչ վերաբերում է մեր հանրապետության կոնկրետ մասնակցությանը երկրաշարժի հետևանքների վերացմանը, ապա, բնականաբար, կմոբիլիզացվեն հանրապետության բոլոր ռեզերվները, բոլոր ռեսուրսները:

**«Իզվեստիա» թերթի թղթակցի հարցը.** Այնուամենայնիվ, արդյոք հնարավորություն կա՞ կանխատեսելու երկրաշարժը:

**Ն. Ի. Ռիժկով.** Այս օրերին մենք, իհարկե, հանդիպումներ էինք ունենում գիտնականների հետ: Այստեղ է գտնվում ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ Ն. Պ. Լավերովը. Նա երկրի առաջատար գիտնականներից մեկն է: Նա հրավիրել է մի շարք մասնագետների, և նրանք ամեն օր պարզում են, վերլուծում այն ամենը, ինչ տեղի է ունենում կապված երկրաշարժի հետ: Խոշոր երկրաշարժից հետո մարման գծով անպայման շարունակվում են ցնցումները, արդեն եղել են հազարից ավելի այդպիսի ցնցումներ: Այսպես, երեկ՝ օրվա ընթացքում դրանց թիվը հասել է 22-ի: Այդ պատճառով էլ ժողովուրդը անհանգստացած է, թե արդյոք չի՞ կրկնվի մեծ երկրաշարժը: Գիտնականներն ասում են, որ այդ գոտում ամեն ինչ, ինչպես նրանք են արտահայտվում, ընթանում է սցենարով, այսինքն՝ որոշակի օրինաչափություններով, որ բնորոշ են նման ուժեղ երկրաշարժերին: Ահա ձեզ գիտնականների կարծիքը:

Ինչ վերաբերում է կանխատեսումներին, ապա ինչքան ես կարողացել եմ ինձ համար հետևություններ անել, ընդհանրապես, ըստ երևույթին, այսօր որոշ հնարավորություններ կան ստացվող բոլոր տվյալների խոր վերլուծության դեպքում կանխագուշակել որոշ երևույթներ: Տվյալ դեպքում պետք է, իհարկե, շատ մանրակրկիտ քննել, և գիտնականներն այժմ մշակում են բոլոր տվյալները, որպիսիք ուներ թե՛ Հայաստանի, թե՛ մեր երկրի մյուս ռեգիոնների երկրաշարժաբանական ծառայությունը: Մեզ իրենց ծառայություններն են առաջարկել ֆրանսիացիները, ամերիկացիները, մենք տեղադրել ենք կատարյալ ապարատներ:

Արդյոք բարելավման կարիք ունի՞ մեր երկրի երկրաշարժաբանական ծառայության աշխատանքը: Անշուշտ, այո: Կարծում եմ, հարկ կլինի լրջորեն աշխատել այդ հարցի վրա: Այստեղ, կարծում եմ, կա երկու պրոբլեմ. առաջինը երկրաշարժաբանական ծառայության տեխնիկական վերազինումն է, և երկրորդ, ըստ երևույթին պետք է հստակ լինի բոլոր ծառայությունների աշխատանքը: Պետք է այնպիսի ծառայություն ստեղծել, որը կարողանա վերլուծել առաջացող երկրաշարժաբանական իրավիճակը և նախազգուշացումներ տալ: Թեպետև, ինչքան երևում է գիտնականների տեղեկություններից, նրանց մոտ շատ-շատ են «սպիտակ բծերը», որոնք նրանք, ցավոք, առայժմ չեն կարող բացատրել:

**Նեշնլ փաբլիկ ռեյդիոյի թղթակցի հարցը.** Լենինականում ես տեսա էլի շատ կանանց ու երեխաների, արդյոք նրանք մնալու՞ են այնտեղ, երբ սկսվի վերակառուցվել քաղաքը:

**Ն. Ի. Ռիժկով.** Երբ մենք տեսանք ավերածությունների աստիճանը և այդ շրջաններում ստեղծված իրավիճակը, մենք հանրապետության ղեկավարների հետ միանգամայն հստակ հետևություններ արեցինք. այդ շրջանից պետք է դուրս բերել երեխաներին, կանանց ու ծերունիներին, իսկ տղամարդկանց թողնել տեղում, որպեսզի առաջին փուլում զբաղվեն փրկարար աշխատանքներով, իսկ այնուհետև ընդգրկվեն

նաև շինարարության մեջ: Հենց որ սկսեն երևան գալ առաջին տները, մարդիկ կըսկըսեն գալ ու նորից ապրել հարազատ քաղաքում: Շատերը կվե[illegible]նան նաև իրենց ձեռնարկությունները, որոնք կվերականգնվեն:

**«Ոգնի» հանդեսի հարցը.** Նիկոլայ Իվանովիչ, թույլ տվեք անկեղծորեն Ձեզ շնորհակալություն հայտնել Ձեր ծանր ու ազնիվ աշխատանքի համար: Ասացեք, Ձեր մեջ որոշակի պատկերացում կա՞ր մեր ժողովրդի մասին և այս ժամանակամիջոցում արդյոք փոխվե՞ց այն:

**Ն. Ի. Ռիժկով.** Այսօր այդ հարցին ես արդեն պատասխանել եմ փողոցում, երբ մենք մի երկու ժամ գտանք դիտելու Երևանը:

Ամենուրեք, ուր մենք հայտնվում էինք, շատ ժողովուրդ կար և, իհարկե, զրույցներ էին ծայր առնում: Մինչ այդ ոչ մի անգամ Հայաստանում չէի եղել: Աշխատանքի բերումով ճանաչում էի հայաստանցի ընկերների: Ես, իհարկե, պատկերացում ունեի ձեր ժողովրդի մասին: Բայց այս օրերը շատ ավելի խոր ըմբռնում տվեցին: Տեսա նրա համախմբվածությունը, տեսա, թե նա ինչ արիաբար էր տոկում ցավին, թե ինչպիսին էր փոխօգնությունը: Այս ողբերգությունից հետո էլ ավելի մեծ հարգանքով եմ վերաբերվում հայ ժողովրդին:

**ՏԱՍՍ-ի լրագրողի հարցը՝ ուղղված Դ. Տ. Յազովին.** Դուք ինչպե՞ս կգնահատեիք մեր ռազմիկների դերը երկրաշարժի հետևանքները վերացնելու գործում:

**Դ. Տ. Յազով.** Կկամենայի նշել, որ առաջինը տարերքի հետ առավել կազմակերպված գոտեմարտի բռնվեցին հենց ռազմիկները: Նրանք մաքրում էին փլվածքները, չնայած որոշ զինծառայողների ընտանիքներ տուժել էին, նրանք լրիվ կազմով քաղաքում էին: Նրանց օգնությամբ հաջողվեց օպերատիվորեն կազմակերպել սննդի կետեր, ծավալել եղած վրանները: Այնուհետև, Ն. Ի. Ռիժկովի ցուցումից հետո մեծ քանակությամբ վրաններ փոխադրվեցին օդով: Զինծառայողները օգնում էին տեղադրել դրանք բնակավայրերում, հաց, սննդամթերք էին տանում քաղաքներ, ավաններ ու գյուղեր: Կարծում եմ, որ նրանք պատվով կատարեցին իրենց խնդիրը:

**Էն Բի Սի հեռուստաընկերության թղթակիցը** հետաքրքրվում է, թե ինչպես և երբ կկառուցվեն աղետի ենթարկված քաղաքները:

**Ն. Ի. Ռիժկով.** Ինչ վերաբերում է քաղաքների կառուցմանը, ես արդեն ասացի. երկու քաղաք՝ Լենինականը և Կիրովականը կկառուցվեն իրենց սահմաններում: Բայց կկառուցվեն այլ կառուցվածքի շենքեր: Սպիտակի հարցը դեռևս չի լուծված: Ահա Յու. Պ. Բատալինը հիմա զբաղվում է այդ հարցով: Քաղաքը գտնվում է բեկվածքի հենց կենտրոնում՝ տրամախաչվածքում: Հիմա աշխատում են և՛ նախագծողներ, և՛ երկրաշարժաբաններ: Նրանք պետք է ասեն, թե Սպիտակում որտեղ կարելի է և որտեղ չի կարելի կառուցել:

**«Սովետական Հայաստան» թերթի թղթակցի հարցը.** Ի՞նչ ռեսուրսների հաշվին է վերականգնվելու տուժած շրջանը: Հարցը տրվում է Յու. Դ. Մասլյուկովին:

**Յու. Դ. Մասլյուկով.** Հայաստանի վերականգնումը և երկրաշարժի հետևանքների վերացումը իրականացվելու են այն ռեսուրսների ու միջոցների հաշվին, որ ունեն մյուս միութենական հանրապետությունները, մինիստրությունները, գերատեսչությունները: Այսպիսով, Հայաստանի վերականգնմանը կմասնակցի ամբողջ երկիրը: Այսպիսի որոշում է ընդունված: Այժմ այդ առթիվ հինգ որոշում է նախապատրաստվում: Դրանք կքննակվեն, հավանաբար, այս շաբաթվա վերջում:

**Ճապոնական «Մայնիտի» թերթի թղթակցի հարցը.** Վերջին ժամանակներս սրությամբ էր ծառացած Լեռնային Ղարաբաղի հարցը: Նրա բնույթը արդյոք փոխվե՞ց երկրաշարժից հետո:

**Ս. Գ. Հարությունյան.** Դուք գիտեք, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանից հետո Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամների մասնակցությամբ հանդիպում ունեցավ Հայաստանից և Ադրբեջանից ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատների հետ: Շատ հանգամանալի խորհրդակցություն էր, ազգամիջյան հարաբերությունների հետ կապված, այդ թվում և Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ հարցերի ազատ, անկեղծ քննարկում: Պայմանավորվածություն ձեռք բերվեց, որ միութենական երկու հանրապետությունների ներկայացուցիչները հանդիպումներ կունենան, համատեղ բազմակողմանիորեն կքննարկեն այդ պրոբլեմը մեկ անգամ ևս, որպեսզի գտնեն նրա փոխզիջողական լուծումը:

Սակայն տարերային աղետի պատճառով մենք, բնականաբար, չկարողացանք մեկնել այդ հանդիպմանը, և այն հետաձգվեց: Այժմ մեր բոլոր հոգսերը, մեր բոլոր ջանքերը նպատակամղված են այն բանին, որ նախ և առաջ փրկենք մարդկանց,



վերացնենք երկրաշարժի ծանրագույն հետևանքները, կարգավորենք մարդկանց նակատագիրը: Իսկ Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը կա, այն ոչ ոք չի թաքցնում, այն փոխզիջողական մոտեցում, փոխզիջողական լուծում է պահանջում: Դրա մասին մենք կմտածենք, կաշխատենք դրա վրա: Կաշխատենք ոչ թե առճակատման ոգով, այլ բարիդրացիության ոգով:

**Ն. Ի. Ռիժկով.** Այս երկու ժողովուրդները պետք է ապրեն հաշտ ու խաղաղ: Նրանք դարեր շարունակ միասին են ապրել և պետք է շարունակեն միասին էլ ապրել: Այստեղ ուրիշ այլընտրանք չկա: Հարցը պետք է լուծել փոխզիջումների, փոխադարձաբար ընդունելի քաղաքական լուծումներ գտնելու միջոցով: Կարծում եմ, այդ երկու հանրապետությունները այդպիսի լուծում կգտնեն:

**(ՏԱՍՍ)**

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ

*ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն դեկտեմբերի 28-ին կայացած նիստում լսեց Մ. Ս. Գորբաչովի ինֆորմացիան ՄԱԿ կատարած այցի և Նյու Յորքում ԱՄՆ-ի ղեկավարության հետ ունեցած հանդիպումների մասին: Լիովին հավանություն տալով այդ ուղևորության քաղաքական արդյունքներին, քաղբյուրոն նշեց, որ այն եղավ միջազգային կյանքի կարևորագույն իրադարձություններից մեկը:*

*Սովետական Միության զինված ուժերի ու սպառազինությունների կրճատման մասին, միջազգային անվտանգության ամրապնդմանը և ռեգիոնալ կոնֆլիկտների կարգավորմանը վերաբերող բանակցություններում գործերի հետագա առաջխաղացման մասին սովետական ղեկավարի ելույթում առաջ քաշված կոնստրուկտիվ նախաձեռնությունները ստեղծում են այնպիսի կոնկրետ գործողությունների գործարար. հագեցած ծրագիր, որոնց նպատակն է արագորեն էական առաջադիմության հասնել աշխարհում առավել մեծ չափով մեծահոգություն հարուցող հարցերում:*

*Այդ ծրագրի մեջ իրենց զարգացումն են գտել ՍՄԿԿ XXVII համագումարի գաղափարները՝ միջազգային անվտանգության համապարփակ սիստեմի ստեղծման մասին, որը պետք է զուգորդված լինի հասարակական առաջադիմության ապահովման հետ քսանմեկերորդ դարի շեմին առաջացած պայմաններին և իրողություններին համապատասխան. պետությունների համագործակցության ընդլայնման և քաղաքական ու հասարակական ուժերի ամենալայն սպեկտրի հետ երկխոսության ընդլայնման մասին:*

*Նյու Յորքում Ռ. Ռեյգանի և Ջ. Բուշի հետ կայացած զրույցները հավաստեցին այն բացառիկորեն կարևոր նշանակությունը, որ երկու կողմերը տալիս են սովետա-ամերիկյան հարաբերությունների կոնստրուկտիվ հաջորդայնությանը, կայունությանը և կանխատեսելիությանը: Այս կապակցությամբ նշվեց հետագա առաջընթացի գործնական հնարավորությունը այն հիմնական ուղղություններով, որոնք կազմում են ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև զարգացող երկխոսության օրակարգի էությունը:*

*Նիստում ընդգծվեց մեր այն գծի անսասանությունը, որը նպատակամղված է ՄԱԿ-ի դերի բարձրացմանը որպես համաշխարհային քաղաքականության եզակի միջոցի, որը հսկայական նշանակություն ունի քաղաքակրթության զարգացման մեջ խաղաղ ժամանակաշրջանի ձևավորման համար:*

*Առաջնորդվելով համաշխարհային հանրությանը առաջարկված կուրսի հետևողական կենսագործման անկեղծ մտադրությամբ, ինչպես նաև ելնելով սովետական զինված ուժերի ու սպառազինությունների միակողմանի կրճատման հայտարարված միջոցառումների ճշգրիտ, լիակատար և հրապարակային իրագործման անհրաժեշտությունից, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավար կոմունիստներին հանձնարարեց սեղմ ժամկետներում ավարտել դրանց պրակտիկ իրագործման կոնկրետ պլանների մշակումը:*

ընդհանուր մակերեսով բնակելի տներ, դպրոցներ, նախադպրոցական հիմ-
նարկներ, հիվանդանոցներ, պոլիկլինիկաներ: Գյուղերում կկառուցվեն ավելի
քան 1,6 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով տներ, արտադրա-
կան շինություններ: ՍՍՀ Միության մինիստրություններին ու գերատեսչու-
թյուններին հանձնարարվում է վերականգնել և կառուցել ավելի քան 130 ար-
դյունաբերական ձեռնարկություն, ինչպես նաև բնակարաններ, սոցիալական
ոլորտի օբյեկտներ:

Հայկական ՍՍՀ-ի ղեկավարությունը քաղբյուրոյին ինֆորմացիա տվեց
այն մասին, որ խոշորամասշտաբ օգնություն ցույց տալու վերաբերյալ ՍՄԿԿ
Կենտկոմի ու սովետական կառավարության միջոցառումները խոր շնորհակա-
լության զգացումով ընկալվեցին աղետի շրջանների բնակչության, ամբողջ
հայ ժողովրդի կողմից:

Վերլուծելով Հայաստանում կատարվող փրկարար աշխատանքների ըն-
թացքը և դրանից անելով անհրաժեշտ հետևություններ, ՍՄԿԿ Կենտկոմի քաղ-
բյուրոն նպատակահարմար գտավ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում առաջար-
կություններ նախապատրաստել այնպիսի միասնական պետական համակարգ
կազմավորելու մասին, որը ժամանակին ապահովի գործողությունների նախա-
կազմավորելու մասին, որը ժամանակին ապահովի գործողությունների նախա-
պատրաստումն այնպիսի միասնական պետական համակարգ կազմավորելու
մասին, որը ժամանակին ապահովի գործողությունների նախապատրաստումն
ի դեպս արտակարգ պայմանների, բոլոր անհրաժեշտ հատուկ ծառայություն-
ների հստակ կոորդինացումը և փոխադարձ կապը: ՍՍՀՄ գիտությունների ա-
կադեմիային, հեղինակավոր այլ կազմակերպությունների հանձնարարական է
տրված հանգամանորեն վերլուծել երկրի սեյսմիկ ծառայության գործունեու-
թյունը, առաջարկել նրա աշխատանքի բարելավման արմատական միջոցա-
ռումներ: Նշվեց, որ համամարդկային շահերի տեսակետից նպատակահարմար
է երկրաշարժերի կանխատեսման և խոշոր տարերային աղետների ու կատաս-
տրոֆաների հետևանքների վերացման ջանքերի միավորումը միջազգային
մասշտաբով:

Ի գիտություն ընդունվեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ինֆորմացիան
այն մասին, որ մոտ ժամանակներս քննության կառնվեն Հայաստանի կոմ-
կուսի Կենտկոմի ու Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՍՍՀՄ գիտու-
թյունների ակադեմիայի, ՍՍՀՄ ատոմային էներգետիկայի մինիստրության և
առաջատար մասնագետների առաջարկությունները Հայաստանի ատոմային
էլեկտրակայանի հետագա գոյության մասին և կընդունվի համապատասխան
որոշում:

Պատշաճը մատուցելով անձնվիրությանն ու գթասրտությանը, փրկման ու
վերականգնման աշխատանքների վճռական ծավալմանը, ՍՄԿԿ Կենտկոմի
քաղբյուրոն դրա հետ մեկտեղ խստապահանջ ուշադրություն հրավիրեց նաև
այն լուրջ դասերի վրա, որ անհրաժեշտ է քաղել պատահածից, արտակարգ
իրավիճակում գործողությունների ձեռք բերված փորձից:

Ողբերգությունն ապրածներին, ամբողջ եղբայրական հայ ժողովրդին
վերստին դիմելով վշտի ու քաջալերանքի խոսքերով, ՍՄԿԿ Կենտկոմի քաղ-
բյուրոն հաստատ վստահություն հայտնեց, որ ամբողջ երկրի հետ միասին
մեր ժողովուրդների ընդհանուր ընտանիքում Սովետական Հայաստանի աշխա-
տավորները, որոնք հայտնի են իրենց աշխատասիրությամբ ու կենսակայու-
նությամբ, երկու տարում ավերակույտերից կբարձրացնեն քաղաքներն ու գյու-
ղերը:

Դա կլինի թե հիշատակ անժամանակ գնացածներին և թե հոգածություն
ներկա և գալիք օրվա մասին:

Հայկական ՍՍՀ-ում եղած երկրաշարժի հետևանքների վերացման ՍՄԿԿ
Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի կազմի մեջ լրացուցիչ մտցվեցին Հա-
յաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը և
ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ Բ. Ե. Շչերբինան:

Նիստում քննարկվեց մեքենաշինության առաջանցիկ զարգացման և գի-
տատեխնիկական առաջադիմության հիման վրա ճյուղի արմատական վերա-
կառուցման վերաբերյալ ավելի վաղ ընդունված որոշման կատարման վիճա-
կը: Նշվեց, որ կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների ձեռ-
նարկած միջոցների շնորհիվ որոշակի որակական փոփոխություններ են կա-
տարվել թողարկվող մեքենաների ու սարքավորումների կառուցվածքի մեջ,



արագացել է մեքենաշինական արտադրանքի նորացումը, աճել է ժամանա-
կակից համաշխարհային նվաճումների մակարդակին համապատասխանող
կարևորագույն տեխնիկայի բաժինը:

Դրա հետ մեկտեղ մեքենաշինության զարգացման վերաբերյալ ընդուն-
ված հիմնարար որոշումների կատարման վիճակը ընթացիկ տասներկուերորդ
հնգամյակում չի կարելի բավարար համարել: Կենտրոնական գերատեսչու-
թյունների, մեքենաշինական և այլ մինիստրությունների ղեկավարները սկզ-
բունքային դիրքեր չեն բռնել մեքենաշինության արդիականացման ծրագրի ա-
ռաջադրաքների կատարման ասպարեզում, մեքենաշինական համալիրի հա-
մար սահմանված գերակայությունները գործնականում չեն ապահովել ին-
վեստիցիաների ծավալները որոշելիս, ժամանակակից տեխնիկայի արտա-
դրության, մեքենաշինական ձեռնարկությունների ու գիտական կազմակերպու-
թյունների շինարարության ու կառուցման ռեսուրսներ հատկացնելիս:

Մեքենաշինությունը որակապես նոր տեխնոլոգիական հիմքի վրա փոխա-
դրելու աշխատանքը անբավարար տեմպերով է կատարվում: Մեքենաշինու-
թյան գիտատեխնիկական պոտենցիալի զարգացումը, հետազոտությունների և
մշակումների ծավալների աճի պլանավորվող տեմպերը էապես հետ են մնում
կյանքի պահանջներից:

Մեքենաշինական մինիստրությունների, միավորումների ղեկավարներն ի-
րենց գործունեության ոճը դանդաղ են վերակառուցում ՍՄԿԿ XXVII համա-
գումարի, XIX կուսակցական կոնֆերանսի պահանջներին համապատասխան,
վատ են օգտագործում արմատական տնտեսական ռեֆորմի ընձեռած հնարա-
վորությունները:

Ուշադրություն հրավիրվեց այն բանի վրա, որ անթույլատրելի է ամեն մի
շեղումը մեքենաշինության արդիականացման ծրագրի գերակայության գործ-
նական ապահովումից, հաշվի առնելով դրա տնտեսական ու սոցիալական ա-
ռանձնահատուկ նշանակությունը, որոշիչ դերը գիտատեխնիկական առաջադի-
մության արագացման, էկոնոմիկայի ինտենսիվացման և ժողովրդական տըն-
տեսության վերազինման մեջ: Քաղբյուրոն ի գիտություն ընդունեց, որ ՍՍՀՄ
Մինիստրների խորհրդի մեքենաշինության բյուրոն, ՍՍՀՄ պետպլանը, ՍՍՀՄ
գիտտեխպետկոմը, համապատասխան կենտրոնական գերատեսչություններն
ու մինիստրությունները ինքնաքննադատաբար վերլուծում են եղած խաթա-
րումների պատճառները, մշակում են 1989 թվականի առաջին կիսամյակում
մեքենաշինության առաջանցիկ զարգացումն ապահովող արմատական միջո-
ցառումների ծրագիր, մեքենաշինության գիտաարտադրական պոտենցիալը
տասներեքերորդ հնգամյակում ժամանակակից պահանջներին համապատաս-
խանեցնելու ծրագիր:

Կենտկոմի քաղբյուրոն քննարկեց աշխատանքային խմբի հաղորդումները
տեղական ինքնակառավարման և տեղական տնտեսության մասին ՍՍՀՄ օ-
րենքի նախագծի նախապատրաստման ընթացքի մասին: Օրինագիծը, որի
պատրաստումը պետք է ավարտվի եկող տարվա առաջին կիսամյակում, ի
նկատի է առնվում դնել համաժողովրդական քննարկման:

Նիստում քննարկվեցին Չինական Ժողովրդական Հանրապետության՝
պաշտոնական այցով Սովետական Միություն եկած արտաքին գործերի մի-
նիստր Ցյան Ցիչենի հետ Մ. Ս. Գորբաչովի ունեցած զրույցի և Է. Ա. Շևարդ-
նաձեի վարած բանակցությունների արդյունքները: Նշվեց, որ սովետա-չինա-
կան հարաբերությունները երկու կողմերի ջանքերի շնորհիվ շարունակում են
հետևողականորեն զարգանալ երկու դրացի սոցիալիստական երկրների բարե-
կամության ու համագործակցության ամրապնդման ուղղությամբ: Այցի ար-
դյունքները վկայում են, որ ՍՍՀՄ-ի և ՉԺՀ-ի քաղաքական երկխոսության մեջ
սկսվել է որակապես նոր փուլ: Սկզբունքային համաձայնություն է ձեռք բե-
րվել բարձր մակարդակի սովետա-չինական հանդիպում անցկացնելու մասին:

Քննարկվեցին Պորտուգալիայի կոմկուսի տասներկուերորդ համագումարի
առթիվ Վ. Ա. Մեդվեդևի գլխավորությամբ ՍՄԿԿ-ի պատվիրակության Պոր-
տուգալիա կատարած ուղևորության արդյունքները: Գոհունակությամբ ար-
ձանագրվեց, որ Սովետական Միության կոմկուսի և Պորտուգալիայի կոմկուսի
միջև զարգանում են կայուն, եղբայրական հարաբերություններ, որոնք հիմ-
նըվում են արդիականության հիմնական պրոբլեմների առթիվ երկու կուսակ-
ցությունների հայացքների լայն միասնության վրա: Նշվեց Պորտուգալիայի

պրեզիդենտ Մ. Սուարեշի հետ կայացած կարծիքների փոխանակման դրական բնույթը, որը հավաստեց սովետա-պորտուգալական երկխոսության շարունակման կարևորությունը որպես Եվրոպայում միջազգային համագործակցության էական տարրի:

Նիստում լսվեց Է. Ա. Շևարդնաձեի ինֆորմացիան Ճապոնիա, Ֆիլիպիններ և ԿԺԴՀ կատարած այցի արդյունքների մասին: Նշվեց, որ Ճապոնիայի, Ֆիլիպինների և ԿԺԴՀ-ի բարձրաստիճան ղեկավարները դրական են գնահատում Կրասնոյարսկում արտահայտված նախաձեռնությունները, որոնք անմիջականորեն վերաբերում են Ասիա-խաղաղօվկիանոսյան ռեգիոնին, և ողջունում են այն կարևորագույն առաջարկությունները, որոնցով Մ. Ս. Գորբաչովը հանդես եկավ ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի 43-րդ նստաշրջանում:

Ընդգծվեց, որ Տոկիոյում տեղի ունեցած զրույցների ու կոնսուլտացիաների ընթացքում ՍՍՀՄ-ը և Ճապոնիան պարզորոշ կերպով իրենց մտադրությունը հայտնեցին ավանդ ներդնելու միջազգային իրադրության առողջացման, սովետա-ճապոնական հարաբերությունների բարելավման և այդ նպատակներով քաղաքական երկխոսության ընդլայնման, դրա մակարդակի բարձրացման պրոցեսի մեջ: Հավաստվեց Սովետական Միության պատրաստակամությունը՝ ճապոնական կողմի հետ համատեղ ջանքերով նոր գլուխ սկսել Ճապոնիայի հետ հարաբերությունների զարգացման պատմության մեջ: Նշվեց, որ Ֆիլիպինների ղեկավարների հետ կայացած կարծիքների փոխանակումը և այդ ընթացքում ձեռք բերված համաձայնությունները կնպաստեն երկու երկրների փոխըմբռնման ու համագործակցության բարելավմանը, սովետա-ֆիլիպինյան կոնտակտների հետագա ակտիվացմանը:

Կորեայի աշխատավորական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար, Կորեական Ժողովրդադեմոկրատական Հանրապետության պրեզիդենտ Կիմ Իր Սենի հետ Է. Ա. Շևարդնաձեի զրույցները և այդ երկրի այլ ղեկավարների հետ վարած բանակցությունները խորացրին փոխըմբռնումը, ցուցադրեցին երկու կողմերի ձգտումը երկկողմ հարաբերությունների հետագա ամրապնդման նկատմամբ, Կորեական թերակղզում, ամբողջությամբ վերցրած Ասիա-խաղաղօվկիանոսյան ռեգիոնում լիցքաթափման, իրադրության ընդհանուր բարելավման հասնելու նպատակով փոխըմբռնումը մեծացնելու նկատմամբ:

---



# ԱՅՍՕՐ ԿԱՐԴԱԼՈՎ ԼԵՆԻՆԻՆ

**Ա. ՍԻՄՈՆՅԱՆ**

ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ առանձնապես կարևորվում է Վ. Ի. Լենինի աշխատություններին դիմելը, նրա դատողությունների ու եզրահանգումների հետ հաղորդակցվելը: Կյանքը հրամայաբար պահանջում է լենինաբար վերլուծել այսօրվա կյանքի պրոցեսները, համարձակորեն ու սթափ զննել մեր դինամիկ ժամանակաշրջանի բարդ ու հակասական երևույթները:

Սոցիալիստական շինարարության վերընթացի բոլոր փուլերում մենք մշտապես դիմել ենք Լենինին: Սակայն դա դեռ չի նշանակում, որ դրանից միշտ արվել են պատշաճ եզրակացություններ: Անհատի պաշտամունքի տարիներին Լենինի մահվան տարելիցներին նվիրված զեկուցումները խորհրդանշանակ խորագրեր էին կրում՝ «Այսքան տարի առանց Լենինի», «Ստալինի ղեկավարությամբ առա՜ջ դեպի կոմունիզմի հաղթանակը»: Բայց որքանով էին դրանք ստեղծագործաբար իմաստավորում լենինյան գաղափարները տվյալ ժամանակաշրջանի հրատապ խնդիրների համար՝ դժվար է միանշանակ պատասխան տալ: Բազում ելույթներում ու հրապարակներում առաջնորդի անունն ու գործերը հիշատակվում էին սոսկ տվյալ պահի սոցիալ-քաղաքական ձեռնարկումները մեխանիկորեն հիմնավորելու և արդարացնելու համար: Պատեհ ու անպատեհ առիթներով մեջբերվում էին լենինյան ձևակերպումները, որոնք սահմանվել էին բոլորովին այլ իրողությունների համար: Նման շարադրանքները վերացական էին, բացակայում էին գործնական հետևությունները: Վլադիմիր Իլյիչը, եթե կենդանանար ու կարդար իր ուղղափառ հետնորդների տեսական մարզանքները, նա ոչ միայն կզայրանար, այլև կզարմանար, որ նման տեսաբանները հեռու են դիալեկտիկայից, ի վիճակի չեն կենդանի կյանքի բարդ ու հակասական երևույթներից անելու անհրաժեշտ ու ճշմարիտ եզրակացություններ: Բանը հասել էր նրան, որ արհամարվել ու անտեսվում էր վիճակագրությունը, փաստերի վերլուծությունը: Քննադատությունն անանուն էր, անհասցե: Գիտականության ամենամեծ չափանիշը ցիտատները տարանջատող ամենակարճ տարածքն էր: Ասում էին սովորել Լենինից, բայց դա արվում էր ոչ լենինաբար: Չմոռանանք, որ առաջնորդի գործերը տոգորված են վիճաբանությամբ, իրական կյանքից վերցրած փաստերով: Լենինի աշխատությունները գիտականության, օբյեկտիվության ու բարեխղճության մարմնացում են: Մենք, ցավոք սրտի, ուսուցանելիս ավելի շատ ուշադրությունը սևեռում ենք նրա գործերում պարփակված ինֆորմացիայի և հետևությունների վրա, հպանցիկ անդրադառնալով, թե ինչպես էր Վլադիմիր Իլյիչը բանավիճում իր ընդդիմախոսների հետ, ինչպես էր կարողանում հիմնավորել սեփական դատողություններն ու եզրահանգումները: Բավական է հիշատակել Լենինի մի քանի աշխատությունները, որոնք գիտականության դասական նմուշներ են. «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում», «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ», «Իմպերիալիզմը, որպես կապիտալիզմի զարգացման բարձրագույն ստադիա»: Նշված գրքերը պատմականի և տրամաբանականի, բնագիտական օրինաչափությունների, տնտեսական երևույթների վերլուծության ու եզրահանգման այնպիսի ինքնատիպությամբ են օժտված, որոնք միայն ու միայն բնորոշ են Լենին-հեղինակին:

---

*ՍԻՄՈՆՅԱՆ ԱՐԱՄ ՍԻՄՈՆԻ— Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագիր:*

Հիրավի, Լենինը կաբինետային գիտնական չէր, նրա խոսքն ուղղված էր աշխատավոր զանգվածներին: Այդ է պատճառը, որ նրա գրական լեզուն գրքային չէ, հարուստ է ժողովրդական ասացվածքով, բառ ու բանով: Լինելով սեփական ժողովրդի հարազատ զավակը, նա ամփոփել է իր երկրում ժողովրդական բանահյուսության ու գեղարվեստական գրականության այնքան խորիմաստ ու դիպուկ նմուշներ, որոնք սոցիալական իմացության հզոր կռվան են, կյանքի ճանաչման անփոխարինելի միջոց: Անհրաժեշտ է գիտակցել, որ Լենինի երկերի անսպառ գանձարանում ամփոփված մտքերում ու դատողություններում այնքան խորիմաստ ծրագրային հիմնադրույթներ կան, որոնց, ցավոք սրտի, մենք ինչպես հարկն է չենք անդրադարձել: Իր երկար ու բովանդակալից կյանքի վերջին շրջանում Մարիետա Շահինյանը տագնապ բարձրացրեց, որ այսօր Լենինին քիչ են կարդում: Իր մտահոգությունը հիմնավորելու համար իմաստուն գրողը վկայակոչում էր հետևյալ փաստը: Նա եղել էր բազմաթիվ գրադարաններում, թե՛ կենտրոնական, թե՛ շրջանային, որտեղ լենինյան հատորներին ընթերցողները չէին դիմել, չէին խորհրդակցել Իլյիչի հետ:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը, այնուհետև կուսակցության XXVII համագումարը, համամիութենական XIX կուսկոնֆերանսը նոր փուլ նշանավորեցին մեր հեղափոխական առաջընթացի ճանապարհին: Կյանքում ու աշխատանքում լենինյան նորմերի վերականգնումը առավել կարևորում է Իլյիչի աշխատություններին դիմելը, նրա տեսական զինանոցից օգտվելը: Այսօր կարդալ Լենինին՝ նշանակում է նրա դրույթներով ու սկզբունքներով ղեկավարվել կյանքի հեղափոխական պրոցեսում, լինել առաջավորի ու առաջադիմականի ջատագովը:

Լենինը մշտապես այժմեական է: Դա բխում է նրա հեղափոխական ուսմունքից, սոցիալական իրականության սթափ վերլուծության կարողությունից: Դրա վկայությունը նրա գործերում բովանդակած մտքերի կենսունակությունն է, այսօրվա այրող հարցերին արձագանքելը: Այսօր կուսակցությունը խնդիր է դրել տեսականորեն ու գործնականորեն լիովին վերականգնել սոցիալիզմի լենինյան կոնցեպցիան: Հեղափոխական մաքրման և վերածնման մեր հույսը անհատի, մարդկային գործոնի ակտիվացման միջոցով սոցիալիզմի հսկայական սոցիալական ռեսուրսները բացահայտելն է: Վերակառուցման շնորհիվ սոցիալիզմը կարող է ու պետք է լրիվ չափով օգտագործի իր՝ որպես ռեալ հումանիզմի, մարդուն ծառայող ու նրան վեհացնող կարգերի, հնարավորությունները:

Լենինը նշում էր, որ Հոկտեմբերին հաջորդած առաջին օրերին բանվորներն ու գյուղացիները դեռևս «երկչոտ» են, դեռևս բավականաչափ վճռական չեն, դեռ չեն ընտելացել այն բանին, որ հենց իրենք պետք է իրենց ձեռքը վերցնեն կառավարման բոլոր լծակները: Հիմա էլ մենք ականատես ենք, թե մարդիկ որքան դժվարությամբ են ընտելանում նոր իրադրությանը, ապրելու և բոլոր հարցերը դեմոկրատական մեթոդներով լուծելու հնարավորությանն ու անհրաժեշտությանը: Հիմա էլ կան «երկչոտներ», որոնք գործում են հետ նայելով, վախենում են պատասխանատվությունից, տակավին գերի են հնացած կանոններին ու հրահանգներին: Օրվա հրամայականն է՝ մարդկանց ինքնուրույնության ու պատասխանատվության բարձրացումը, սրտացավ վերաբերմունքը արտադրական ու հասարակական գործերի նկատմամբ, ինքնահսկումը և ինքնակառավարումը անձնական ու հասարակական ոլորտներում:

Այս առնչությամբ հարկ է նշել, որ ինքնակառավարման զարգացումն ապահովվում է նախ և առաջ հասարակական մարմինների միջոցով, որոնք լայն հնարավորություն են ընձեռում անհատի քաղաքացիական պարտականությունների դրսևորման համար:

Ըստ Լենինի դեմոկրատիան չի կարող սահմանափակվել քաղաքականության ոլորտով: Այն ընդգրկում է նաև մարդկային հարաբերությունների բոլոր բնագավառները: Հիրավի, սոցիալիզմը մարդկանց կարծիքների ու դատողությունների, փոխհարաբերությունների, գործունեության մեծացող բազմազանության հասարակություն է: Հարկ է շեշտել, որ ամեն մարդ ունի իր սոցիալական փորձը, գիտելիքների, կրթվածության իր մակարդակը, իրականության ընկալման իր առանձնահատկությունները: Այստեղից էլ կարծիքների, համոզմունքների, գնահատականների լայն ընդգրկում, որը պահանջում է դրանց ուշադիր հաշվառում, համադրում: Սոցիալիստական պրակտիկան հիմնվում է հասարակական կարծիքի, այլազանության, հոգևոր կյանքի հարստության վրա: Բացախոսության պայմաններում հրապարակայնորեն քննարկվում են բարդ ու դժվարին պրոբլեմներ, արտահայտվում իրարամերժ կարծիքներ ու տեսակետներ: Դրանք սոցիալիստական պլյուրալիզմի դրսևորումներն են:



Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում, վերակառուցումը, մեր կյանքի բոլոր կողմերի արմատական նորացումը աներևակայելի են առանց կտրուկ շրջադարձի դեպի մարդկային կոնկրետ կարիքներն ու պահանջմունքները: Ժամանակը ստիպում է նորովի նայել սոցիալական ոլորտի զարգացման պրոբլեմներին, խորապես իմաստավորել այդ ոլորտի հարաճուն նշանակությունը:

Հանրապետությունում սոցիալական ոլորտի զարգացման մեջ ստեղծված իրադրությունը արմատական բեկում է պահանջում: Վերջինս առաջնահերթ է դարձնում խորապես կշռադատված, ուժեղ սոցիալական քաղաքականություն կենսագործելու անհրաժեշտությունը: Խնդիր է դրվում երկու հազար թվական թևակոխել բնակչության կենսամակարդակի սկզբունքորեն նոր ստանդարտներով: ՍՄԿԿ XXVII համագումարի տնտեսական անի սոցիալական վերակողմնորոշման գիծը պետք է դառնա հանրապետության կառուցվածքային և ինվեստիցիոն ամբողջ քաղաքականության առանցքը: Հայաստանի կուսակցական կազմակերպության այս դիրքորոշման մեջ բացահայտ դրսևորվում է լենինյան հումանիզմը:

Պլենումում նշվեց, որ լուրջ մտահոգություն ու տագնապ է հարուցում էկոլոգիական իրադրությունը հանրապետությունում, հատկապես Երևանում, Կիրովականում, Հրազդանում, Ալավերդիում ու Արարատում: Անհետաձգելի խնդիր է արմատապես փոխել վերաբերմունքը շրջակա միջավայրի նկատմամբ, հանրապետության աշխատավորների մեջ դաստիարակել էկոլոգիական բարձր կուլտուրա, վճռականորեն արմատախիլ անել էկոլոգիական նորմաների ու կանոնների խախտումների նկատմամբ ձեռնարկությունների որոշ ղեկավարների անտարբեր վերաբերմունքի ցուցաբերման փաստերը: Այսօր պահանջվում է խորապես գիտական, կշռադատված քաղաքականություն վարել էկոլոգիական կայուն հավասարակշռության, էկոլոգիական համակարգի բոլոր տարրերի բնական վերարտադրության ապահովման համար: Այս առընչությամբ հասունացել է անհրաժեշտությունը հանրապետությունում մշակելու հեռանկարային, բազմակողմանիորեն հիմնավորված բնապահպանական ծրագիր, որը հենվի երկարաժամկետ սոցիալ-տնտեսական զարգացման ընդհանուր կոնցեպցիայի վրա:

Սոցիալիզմի կատարելագործման արդի փուլը պահանջում է արմատական շրջադարձ դեպի ժողովրդական զանգվածների աճող պահանջմունքների բավարարումը այնպիսի տնտեսական ռեֆորմի պլանաչափ իրականացման հիման վրա, որն ապահովում է սոցիալիզմի պատմական առավելությունների բացահայտումը՝ ժողովրդի համար և ժողովրդի ձեռքերով նյութական ու կուլտուրական բարիքների բարձր մակարդակ ստեղծելու գործում: Տնտեսական ռեֆորմի այնպիսի ասպեկտները, ինչպիսիք են հանրային սեփականության հիմքի վրա սոցիալիստական ձեռնարկությունների ինքնուրույնության զարգացումը, տնտհաշվարկը, ինքնածախսածածկումը, ինքնաֆինանսավորումը, կոոպերացիայի զանազան ձևերի, անհատական աշխատանքային գործունեության զարգացումը, մասսաների, բոլոր կոլեկտիվների ու յուրաքանչյուր անհատի ստեղծագործական ակտիվության բարձրացումը և այլն, նպատակ են հետապնդում պլանաչափորեն, նպատակասլաց և առավելագույն չափով օգտագործել արդի գիտատեխնիկական հեղափոխության տվյալները՝ բարձրորակ և միևնույն ժամանակ խնայողական արտադրական ապարատ ստեղծելու համար, որն ի վիճակի կլինի բավարարելու ողջ ժողովրդի հարաճուն խելամիտ պահանջմունքները:

Կուսակցության XXVII համագումարը հատկապես շեշտեց սոցիալական արդարության սկզբունքի իրականացման հարցը: Այժմ, երբ սոցիալիստական հասարակությունը հաղթահարում է այն հակասությունները, որոնք անհամատեղելի են սոցիալական արդարության սկզբունքի հետ, առավել այժմեական է հնչում լենինյան այն դրույթը, թե սոցիալիստական հեղափոխության ընթացքում մարդու կողմից մարդու շահագործման ոչնչացումը սոցիալական արդարության սկզբունքի հաստատման գլխավոր պայմանն է: Աշխատավորների հիմնական զանգվածը նյութական և հոգևոր բարիքներն սկսում է ստանալ ըստ աշխատանքի, հասարակության ընդհանուր հասույթում իր կատարած ներդրմանը համապատասխան: Ճիշտ է, դեռևս Լենինի օրոք հարկ եղավ սոցիալական արդարության սկզբունքից շեղվել: Բուրժուական և այլ մասնագետներին ներգրավելու համար Լենինն առաջարկում էր նրանց համար սահմանել բարձր աշխատավարձ: «Սովետական իշխանության հերթական խնդիրները» աշխատության մեջ Լենինն այն ժամանակվա պայմաններում հնարավոր էր համարում ժողովրդական աշխատանքը ղեկավարելու նպատակով գիտության, տեխնիկայի, պրակտիկ փորձի զանազան բնագավառներից ներգրավել առաջնակարգ

գիտնականների և մասնագետների՝ նրանց համար մեծ առավելություններ նախատեսելով աշխատավարձի հարցում (տե՛ս ԵԼԺ, հ. 36, էջ 221):

Ինդուստրացման տարիներին արդյունաբերության նոր ճյուղերի արագ զարգացումը խթանելու համար կուսակցությունը գիտակցաբար բարձր ռոճիկ էր նշանակում արտադրության կազմակերպիչներին, գիտնականներին, ինժեներներին: Հիմնականում նման մոտեցում էր ցուցաբերվում նաև սոցիալիստական կուլտուրայի բոլոր ոլորտների զարգացումը խրախուսելու նպատակով: Նշենք նաև, որ տարիների ընթացքում խզում առաջացավ մեր երկրի բնակչության տարբեր խմբերի աշխատանքի վարձատրման գործում: Օբյեկտիվ պատճառներից զատ, տեղ գտան սուբյեկտիվ սխալներ, որոնք անհամատեղելի էին սոցիալական արդարության սկզբունքների հետ: Դրանք արտահայտվեցին կուսմաքսիմումի վերացմամբ, աշխատանքի վարձատրման գործում մեծ խզման խորացմամբ, չարդարացված արտոնությունների սահմանմամբ, հասարակական ֆոնդերի օգտագործման ոչ ճիշտ կառուցվածքի հաստատմամբ և այլն: Մոռացվեց Լենինի այն զգուշացումը, թե «բարձր ռոճիկների այլասերող ազդեցությունն անվիճելի է...» (նույն տեղը, էջ 222): Կյանքը հաստատեց Լենինի զգուշացման ճշմարտացիությունը:

Կուսակցության սոցիալական քաղաքականությունն այսօր ուղղված է ցածր վարձատրվողների աշխատավարձը միջին վարձատրվողների աշխատավարձի մակարդակին և վերջիններիս՝ բարձր վարձատրվողների մակարդակին մոտեցնելուն: Սոցիալիստական մաքսիմումը կոչված է ապահովելու մարդկանց բարեկեցության նորմալ աճ, անհատի համակողմանի զարգացում: Միաժամանակ այն պետք է բացառի նրանց հարստացումը, որն ինչպես վկայում է մեր կյանքը, հանգեցնում է կադրերի այլասերման: Սոցիալիստական մաքսիմումը բացառում է միլիոններ դիզելը, որովհետև ոչ մի անսահմանափակ աշխատավարձ և ոչ մի լրացուցիչ անհատական աշխատանք հնարավորություն չի ընձեռում ունենալու այնպիսի կուտակումներ, որոնք ծնում են մակաբուծություն՝ իր բոլոր դրսևորումներով: Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում, մեզանում հենց բարոյական մթնոլորտը դարձավ խիստ տագնապալից: Բարոյական զարգացման որոշ ուղղություններում մենք ոչ միայն չկարողացանք ամրապնդել նվաճված դիրքերը, այլև նույնիսկ նահանջեցինք՝ ազատություն տալով մանրբուրժուական դրսևորումներին: Տարածում գտան սոցիալիստական սեփականության հափշտակումները, կաշառակերությունը, «ստվերային էկոնոմիկան», ամենաթողությունը, սպեկուլյացիան, հովանավորչությունը, աչքակապությունը, հավելագրումները, սոցիալական արդարության սկզբունքների խախտումները: Այս ամենը մեթոդաբար խարխլում էր բարոյական հիմքերը, կործանարար ազդեցություն գործում հանրապետության բարոյական կլիմայի վրա՝ հարուցելով նրա առողջ ուժերի օրինական վրդովմունքը, առաջացնելով սոցիալական անտարբերություն, սասանելով ղեկավար կադրերի հեղինակությունը, անվստահություն սերմանելով պաշտոնական խոսքի նկատմամբ:

Լենինյան այն ցուցումը, որ տեսության արժեքավորությունը ճշգրիտ պատկերն է «այն բոլոր հակասությունների, որոնք տեղի են ունենում կյանքում», հաճախ պարզապես անտեսվում էր: Ինչպես ասվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում, սոցիալիզմի մասին տեսական պատկերացումները շատ բանով մնում էին 30—40-ական թվականների մակարդակի վրա, երբ հասարակությունը լուծում էր միանգամայն այլ խնդիրներ: Զարգացող սոցիալիզմը, նրա շարժիչ ուժերի և հակասությունների դիալեկտիկան, հասարակության իրական վիճակը գիտական խոր հետազոտությունների օբյեկտ չդարձան: Ավելացնենք նաև, որ տեղի ունեցավ հասարակության կազմակերպման պրակտիկայում հաստատված ձևերի յուրատեսակ բացարձակացում: Օրինակ, ստեղծվել էր սոցիալիստական արտադրական հարաբերությունների քարացած պատկեր, թերագնահատվում էր դրանց դիալեկտիկական փոխգործակցությունը արտադրողական ուժերի հետ: Հասարակության սոցիալական կառուցվածքը պատկերվում էր սխեմատիկորեն՝ որպես նրա տարբեր խավերի ու խմբերի հակասություններից ու բազմապիսի դինամիկությունից զուրկ:

Սոցիալիզմի մասին լենինյան դրույթները, ասվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում, մեկնաբանվում էին պարզունակ ձևով, հաճախ ամլացվում էին դրանց տեսական խորությունն ու նշանակությունը: Սա վերաբերում է նաև այնպիսի արմատական պրոբլեմների, ինչպիսիք են հանրային սեփականությունը, դասակարգային և ազգամիջյան հարաբերությունները, աշխատանքի չափը և սպառման չափը,



կոոպերացումը, տնտեսավարման մեթոդները, ժողովրդապետությունը և ինքնակառավարումը, պայքարը բյուրոկրատական խեղաթյուրումների դեմ, սոցիալիստական գաղափարախոսության հեղափոխական վերափոխիչ էությունը, ուսուցման ու դաստիարակության սկզբունքները, կուսակցության և հասարակության առողջ զարգացման երաշխիքները:

Նահանջելով Լենինից, ստեղծվել էր սոցիալիստական հասարակության մասին մի պատկերացում, թե իբր այն զերծ է արատներից ու հակասություններից, իսկ ինչ վերաբերում է դժբախտություններին ու թերացումներին՝ ապա դրանք հանգեցվում էին անցյալի վերապրուկներին: Ստեղծվել էր պատրանք, թե իբր սոցիալիզմն անընկալունակ է բացասական միտումների դրսևորման, մանրբուրժուականության աշխուժացման նկատմամբ: Հաճախ սոցիալիզմի օբյեկտիվ օրենքները դիտվում էին համաշխարհային զարգացման համատեքստից դուրս: Շատ բաներում պարզունակացված էին նաև կանխատեսումները կապիտալիստական կարգի զարգացման, նրա կենսունակության սահմանների, գոյատևելու հնարավորությունների մասին: Իրոք, այս ամենը հեռու է լենինյան ըմբռնումից ու մոտեցումից:

Այսօր խիստ հրատապ է հասարակական կյանքի զանազան կողմերի փոխգործողության վերլուծության նկատմամբ ամբողջական, կոմպլեքսային մոտեցման լենինյան պահանջը: Վերջինս ենթադրում է հաշվի առնել արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների, քաղաքականության ու էկոնոմիկայի, ցենտրալիզմի ու դեմոկրատիայի, անձնական և հասարակական շահերի, նյութական ու հոգևոր աշխարհի փոխադարձ բարդ կապը և այլն:

Այժմ, երբ ողջ հասակով դրվել է մարդկային գործոնի պրոբլեմը, խիստ հրատապ է դառնում մարդ-անհատի բազմակողմանի ուսումնասիրությունը: Ոչ թե ինչ-որ մի իդեալականացված անհատ, այլ իրական, կոնկրետ ժամանակի կենդանի մարդ իր բոլոր առնչություններով ու կապերով: Հարկ է նկատել, որ տակավին չեն ուսումնասիրվում մարդու բնախոսական ու հասարակական հիմքերի դիալեկտիկական միասնությունը, սոցիալ-հոգեբանական առանձնահատկությունները:

ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում միանգամայն տեղին նշվեց, որ մենք պետք է թանկ գնահատենք մեր պատմության յուրաքանչյուր էջը, քանզի դա մեր պատմությունն է, որ մենք նրանից խույս տալու իրավունք չունենք: Հրատապ խնդիր են ժողովրդի պատմական հիշողության բացերը լրացնելը, անցյալի մի շարք հասարակական ու մշակութային դեմքերի մարքսիստական գնահատումը: Չէ՞ որ կան դեմքեր, որոնք ոչ միանշանակ, հասարակական-քաղաքական բարդ իրադրության մեջ, սոցիալական ու ազգային ազատագրության համար հայ ժողովրդի մղած պայքարի շատ ծանր պայմաններում օբյեկտիվ պատմական պրոցեսների ոչ ճիշտ ընկալման հետևանքով պատշաճ արժեքավորման չեն արժանացել: Այստեղ տեղին է մեջբերել պլենումում բանաստեղծ Հրաչյա Հովհաննիսյանի ելույթից հետևյալ տողերը: «Ինձ միշտ զայրացրել է, թե ինչու՞ բուլղարական, սերբական, մակեդոնական, ալբանական, հունական, արաբական, քրդական ապստամբությունները օսմանյան կայսրության դեմ, ինչու՞ իտալական, հունգարական, չեխական խռովությունները ավստրիական կայսրության դեմ համարվում էին առաջադիմական, ինչու՞ այդ շարժումների ղեկավարները և մասնակիցները համարվում էին հեղափոխական, իսկ երբ հարցը վերաբերում է բազմաչարչար հայ ժողովրդին, ապա բերաններս ջուր ենք առնում և խուսափում պատմությունը լրիվ ու մանրամասն ներկայացնելուց: Ինչու՞ հայդուկ, ֆիդայի, կամավոր, կտրիճ, տոհմիկ հայորդիներ անվանումները մեզանում հատուկ զգուշությամբ ու շշուկով են արտասանում, երբեմն նաև անարգվում, երբ նման հասկացությունները և՛ բուրժուական, և՛ սոցիալիստական երկրներում պատմական մեկնաբանության և քաղաքական խրախուսանքի են արժանանում, արժանանում են արձանների և բարի հիշատակության: Մի՞թե հայերս մեր ազնիվ և արյունոտ պայքարում այն նույն նպատակը չէինք հետապնդում, ինչ բուլղարները, հույները, սերբերը, լեհերը, իտալացիները և մյուսներն էին անում արդի, անցյալ և նախանցյալ դարերում: Մարքսիզմի դասականները նմանօրինակ շարժումներին բազմիցս անդրադարձել են և հատուկ պատգամներ են կտակել մեզ: Բայց ահա հայկական նիհիլիզմի, հայկական մտավախության, հայկական նեղմիտ դոգմատիկայի ուրվականը, հայ քաղաքական ֆիլիստերը միշտ գլուխ են բարձրացնում և արգելակում կամ ծայրահեղ դեպքում հազիվ լսելի շշնջում, զգույշ, մեկ էլ տեսար, ի՞նչ գիտեմ՝ ինչ, որտեղ, մի օր, հանկարծ ոտքդ քարին կխփես, գլուխդ պատին: Զարմանալի է, ցավալի, անհանդուրժելի»:

Վերաբերմունքը արդիականության նկատմամբ շատ բանով բնորոշվում է անցյալի հանդեպ դրսևորվող մոտեցումով: Այն, թե ինչպես է մարդը տեսնում ներկան, անհրաժեշտորեն առնչվում նրա հետ, թե ինչպես է նա ընկալում ներկայի ծագման պատմությունը: Նման վերաբերմունքը էական նշանակություն ունի ապագայի հանդեպ հարաբերությունների ձևավորման գործում, քանզի անընդհատ է բոլոր ժամանակների կապը: Այժմ հույժ հրատապ է դարձել օբյեկտիվորեն, առանց խեղաթյուրումների շարադրել մեր երկրի անցած պատմությունը, գիտականորեն մեկնաբանել նրա բարդ, դժվար վերծանելի էջերը, համակողմանի ներկայացնել նոր կյանքի հաստատման համար մղված պայքարի տարեգրությունը:

Բնութագրելով սոցիալական իրականության առանձնահատկությունը՝ Կ. Մարքսը նշել է հասարակական ձևերի մարդկային բնույթը: Եթե բնական աշխարհը չի կարելի հասկանալ պատմությունից դուրս, ապա սոցիալական իրականությունն առավել ևս չի կարելի առանձնացնել բուն սուբյեկտից՝ պատմության գործող անձից: կային գործունեության դրսևորման ու գոյության ձև: Ընդ որում, ոչ թե մարդը գոյակային գործունեության դրսևորման ու գոյության ձև: Ընդ որում ոչ թե մարդը գոյությունի ունի սոցիալական ձևերի ու հաստատությունների համար, այլ, ընդհակառակը, դրանք գոյություն ունեն մարդու համար ու կոչված են ծառայելու նրա ստեղծարար նպատակներին:

Հարկավոր է իմանալ, թե կյանք մտնող սերունդների գիտակցության, վարքագծի, գաղափարաբարոյական դիրքորոշումների վրա ինչպես է ներազդում մեր սոցիալիստական իրականությունը, որտեղ համատեղ ապրում ու գործում են սերունդներ, որոնք աճել ու դաստիարակվել են սոցիալիզմի պայմաններում, նոր սերունդների տնտեսական, սոցիալ-քաղաքական, գաղափարախոսական պայմանները նպաստում են նրանց գիտակցության մեջ ներարկելու սոցիալական հավասարության ու արդարության գաղափարներ: Դրա համար անհրաժեշտ են աշխատանքի նոր գործնական մեթոդներ, քանի որ լուսավորչական մեթոդներով կարելի է իրականացնել հայեցողական ուսուցում: Ակտիվ քաղաքացիներ կարող են դաստիարակվել միայն գործնական աշխատանքում, հասարակական կյանքում՝ սոցիալիստական սկզբունքների հաստատմամբ ու զարգացմամբ:

Սերունդների հաջորդայնության ապահովման մեխանիզմը կոչված է մարդկանց համար հնարավորություն ստեղծելու, որպեսզի նրանք գործնականում համոզվեն սոցիալիստական իդեալների ու արժեքների կենսունակության ու ճշմարտացիության մեջ: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, անհրաժեշտ է մարդկանց ներառնել տարբեր հասարակական ոլորտներում՝ սկսած սկզբնական բջիջներից: Ապահովել նրանց մասնակցությունը սոցիալական վերափոխումներին, հասարակական ու պետական կառավարմանը: Հասարակությունը պետք է իրազեկ լինի կյանք մտնող սերընդի հույզերին, նպատակների, պահանջմունքներին ու հետաքրքրություններին, խորամուխ լինի այն հարցում, թե ինչն է էապես ներգործում սոցիալիստական սերունդների ձևավորման վրա, ինչն է արգելակում, դժվարացնում այն:

Այսօր այդ աշխատանքի առանձնահատկությունները պայմանավորված են մարդու հարաճուն հասարակական հետաքրքրություններով ու պահանջմունքներով, տարբեր սերունդների ներկայացուցիչների արժեքային կողմնորոշիչների ու նախասիրությունների փոփոխություններով: Տեղին է հիշատակել, որ սովետական մարդկանց նոր սերունդներն անմիջականորեն չեն մասնակցել դասակարգային պայքարին, երկարացել է երիտասարդության սոցիալական հասունացման ժամանակաշրջանը: Դեռևս առկա են չհաղթահարված արատավոր երևույթներ, այդ թվում մասնավոր սեփականատիրական հոգեբանության վերապրուկներ, խնամառություն և այլն:

Կոմունիստական կուսակցությունը, հենվելով Վ. Ի. Լենինի ուսմունքի, սոցիալիզմի նվաճումների վրա, վիթխարի ստեղծարար աշխատանք է կատարել ազգային հարցի լուծման ասպարեզում: Հիրավի, դրա արդյունքները սոցիալիզմի ակնառու նվաճումներն են, որոնք հարստացրել են համաշխարհային քաղաքակրթությունը: Սովետական ժողովուրդը հանդես է գալիս որպես որակապես նոր սոցիալական և ինտերնացիոնալ հանրություն, որը զոդված է տնտեսական շահերի, գաղափարախոսության և քաղաքական նպատակների միասնությամբ: Բայց, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, մեր նվաճումները ազգային պրոցեսների անպրոբլեմայնության պատկերացումներ չպիտի ստեղծեն: Հակասությունները ներհատուկ են ամեն մի զարգացման, դրանք անխուսափելի են նաև այդ ոլորտում: Գլխավորն է տեսնել դրանց մշտապես ծագող ասպեկտներն ու կողմերը, որոնել ու ժամանակին ճիշտ պատասխաններ տալ կյանքի առաջադրած հարցերին: Մանավանդ որ այստեղ դեռևս իսպառ չեն վերացված ու երբեմն հիվանդագին կերպով իրենց զգալ են տալիս ազգային ներփակվածության, տեղայնության ձգտումը, խնամառուական տրամադրությունները: Այդ պրոբլեմներից է Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը, որի արմատները սկիզբ են առնում պատմական, սոցիալական, տնտեսական, մշակութային, էթնիկական գործոնների բարդ միահյուսումից, անցյալում ազգային քաղաքականության խեղաթյուրումներից: Այդ իսկ պատճառով էլ, ինչպես Երևանում նշեց Մ. Ս. Գորբաչովը, մենք օգնության եկանք, որոշում ընդունեցինք, որ օգնենք սոցիալ-տնտեսական զարգացմանը, նման փոքր մարզի համար հատկացրինք 500 միլիոն ռուբլի, որպեսզի այն բարեկարգեն, որպեսզի վերացնեն ստեղծված բոլոր պրոբլեմները, կենսապայմաններ ստեղծեն, լուծեն մշակույթի, մայրենի լեզվի զարգացման, դասավանդման հարցերը: Նորմալ կապեր հաստատեն Հայաստանի հետ: Այսօր մեր առջև բացվում են ԼՂԻՄ-ի հետ կապերի համակողմանի զարգացման, նրան սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և մշակութային բազմակողմանի օգնություն ցույց տալու լայն հնարավորություններ:

Հաշվի առնելով ղարաբաղյան պրոբլեմի բարդ բնույթը, անհրաժեշտ է հաստատակամորեն փնտրել այդ հարցին վերաբերող դիրքորոշումների մերձեցման փոխզիջողական ուղիներ:

... Այդ սպասումների պայմաններում մեր տանը դեկտեմբերի 7-ին չտեսնված ուժի երկրաշարժը ավերածության հետքեր թողեց, ողբերգական հետևանքներ ունեցավ: Անսահման է մեր վիշտը: Հարազատների և մերձավորների մահը անդառնալի կորուստ է: Մեզ սփոփում է այն իրողությունը, որ իր պատմության բոլոր ժամանակներում հայ ժողովուրդը դրսևորել է հոգու ուժ, արիություն, տոկունություն: Նա կարողացավ դիմանալ ճակատագրի բոլոր հարվածներին, բոլոր դժվարին փորձություններին: Տարերային աղետը ողբերգություն է ոչ միայն Հայաստանի ժողովուրդների, այլև ամբողջ սովետական ժողովրդի համար: Հայաստանում պատահած աղետը հսկայական արձագանք առաջացրեց ամբողջ մոլորակում: Դա հիրավի քաղաքական նոր մտածողության արդյունք է, երբ առաջին պլան են քաշվում համամարդկային արժեքները:

Այդ ծանրագույն պահին Նյու Յորքից Հայաստանի աշխատավորությանը դիմեց Մ. Ս. Գորբաչովը, որն ընդհատեց իր այցը և վերադարձավ հայրենիք, եղավ երկրաշարժից ավերված շրջաններում: Արհավիրքի հետևանքները վերացնելու և տուժածներին օգնության ձեռք մեկնելու ընդհանուր միութենական մասշտաբի աշխատանքների կոորդինացման համար ստեղծված է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողով՝ սովետական կառավարության նախագահ Ն. Ի. Ռիժկովի գլխավորությամբ: «Այս ծանր, ազալի օրերին,— ասված է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների խորհրդի դիմումի մեջ,— մենք կրկին կարողացանք համոզվել, որ ապրում ենք եղբայր ժողովուրդների համերաշխ ընտանիքում: Երկրաշարժը հանրապետության բնակչությանը հանկարծակիի բերեց: Բայց դժբախտության մեջ մենք միայնակ չմնացինք, մեզ հետ է ամբողջ երկիրը, հանրապետությունների մեծ Միությունը, որի նյութական և բարոյական աջակցությունը մենք զգացինք մեզ հասած դժբախտության առաջին իսկ րոպեից»:

Տարերային աղետից տուժած շրջանների համար հատկացվում են հսկայական միջոցներ, շինանյութեր, ջեռուցիչ համակարգեր, հավաքովի տներ, տաք հագուստ, օթևանից զրկված մարդկանց ժամանակավոր բնակության համար վրաններ: Այդ նպատակով կազմված են շինջոկատներ՝ երկրի բոլոր հանրապետությունների ներկայացուցիչներից: Սովետական Հայաստանի աշխատավորները միշտ էլ արձագանքել են մյուսների դժբախտությանը: Իսկ այսօր ամբողջ երկիրն է շտապում մեզ ցույց տալու օգնություն: Դա պետք է ուժ տա մեզ, ամրապնդի մեր ոգին աննախադեպ աղետի դեմ հանդիման: Հայ ժողովուրդը, հանրապետության բոլոր աշխատավորները կդիմանան ճակատագրի այս հարվածին, փորձությունից դուրս կգան է՛լ ավելի համախմբված, իմաստուն ու տոկուն:

Այսօր էլ մեր կուսակցությունը հետևում է լենինյան ավանդույթին. առանձնակի զգայունություն և շրջահայացություն այն ամենին, ինչը վերաբերում է ազգային քա-

ղաքականությանը, շոշափում է յուրաքանչյուր ազգի և ազգության շահերը, մարդկանց ազգային զգացումները և միևնույն ժամանակ սկզբունքային պայքար ազգային սահմանափակվածության ու պարծենկոտության, նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների դեմ, ինչպիսի զգեստ էլ, որ դրանք կրեն: Կոմունիստների առաջնահերթ խնդիրն է անշեղորեն հետևել լենինյան իմաստուն պատգամներին, դրանք ստեղծագործաբար կիրառել նոր պայմաններում, անսահման ուշադիր սկզբունքային լինել ազգային հարաբերություններում՝ հանուն սովետական եղբայր ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման:

Այսօր Վ. Ի. Լենինին,· նրա մտքերին ու գաղափարներին դիմելը սոսկ հարգանքի տուրք չէ, ոչ միայն նրա հեղինակության ընդունում: Դա հրամայական ձգտում է արդի պայմաններում վերակոչելու, առավելագույնս վերակոչելու լենինիզմի ոգին, մեր կյանքում հաստատելու լենինյան նորմերը: Լենինը մշտապես սովորեցնում էր, որ հեղափոխական պայքարի հաջողությունը մեծապես պայմանավորվում է այն տրամադրությամբ, որ կառաջացնի կուսակցությունը:

Լենինի կյանքը սխրագործություն է, որն անցել է ստեղծագործման մեջ, հեղափոխական պայքարում, գաղափարական ու քաղաքական կռիվներում: Նա իր մեջ մարմնավորել է պրոլետարական հեղափոխականի ամենաակնառու գծերը՝ հզոր միտք, ամեն ինչ հաղթահարող կամք, սրբազան ատելություն դեպի ստրկությունն ու ճնշումը, հեղափոխական կրքոտություն, հետևողական ինտերնացիոնալիզմ, անսահման հավատ զանգվածների ստեղծագործական ուժերի նկատմամբ, կազմակերպչական վիթխարի հանճար: Իրոք, լենինի կյանքն ու գործը միաձուլվել են բանվոր դասակարգի և կոմունիստական կուսակցության պայքարի հետ:

Այսօր կարդալով Լենինին, մենք նորից ու նորից սովորում ենք մեր մեծ առաջնորդից, ձգտում ենք նմանվել նրան, նրա պես հավատարիմ լինել կոմունիստական կուսակցությանը, նրա ներքին ու արտաքին քաղաքականությանը:

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՖԵԴԵՐԱՑԻԱՅԻ ԴԵՄՈԿՐԱՏԱՑՈՒՄԸ

**Ն. ԱՅՎԱԶՅԱՆ**

Այսօր, երբ ամբողջ հասակով մեկ ծառացած է սոցիալիստական հասարակության դեմոկրատացման խնդիրը, առանձնահատուկ նշանակություն է ստանում, մասնավորապես, սովետական ֆեդերացիայի ու նրա սուբյեկտների՝ սուվերեն սովետական սոցիալիստական հանրապետությունների փոխհարաբերությունների կատարելագործումը:

Առաջին պլան է մղվում ՍՍՀ Միության իշխանության ու կառավարման բարձրագույն մարմինների և միութենական հանրապետությունների համապատասխան մարմինների հարաբերությունների դեմոկրատացումը: Բավական է ՍՍՀ Միության կազմավորման մասին պայմանագրի 1-ին հոդվածը և ՍՍՀՄ 1924 թվականի սահմանադրության 1-ին հոդվածը համեմատել համապատասխանաբար ՍՍՀՄ 1936 թվականի և 1977 թվականի սահմանադրությունների 14-րդ և 73-րդ հոդվածների հետ, որոնք սահմանում են ՍՍՀՄ պետական իշխանության ու կառավարման բարձրագույն մարմինների իրավասությանը վերաբերող հարցերի շրջանը, որպեսզի համոզվենք, թե աստիճանաբար ինչպես են ուժեղացել միութենական սկզբունքները ֆեդերացիայի ու նրա սուբյեկտների փոխհարաբերություններում: Դա վերաբերում է ինչպես օրենսդրական իրավասության, այնպես էլ կառավարչական գործունեության ոլորտներին: Օրինակ, ՍՍՀՄ 1924 թվականի սահմանադրությանը համապատասխան (հոդվ. 1), որը լրիվ ընդգրկում է ՍՍՀՄ կազմավորման մասին պայմանագրի տեքստը, ՍՍՀ Միության իրավասությանը, ի դեմս պետական իշխանության ու կառավարման նրա բարձրագույն մարմինների, վերաբերում էին «դատարանակազմության ու դատավարության, ինչպես նաև քաղաքացիական ու քրեական օրենսդրության հիմունքների սահմանումը», «աշխատանքի մասին հիմնական օրենքների սահմանումը» (կետեր «ծ» և «կ»): ՍՍՀՄ 1936 թվականի սահմանադրությունը, դրա հետ միասին, ՍՍՀ Միության տնօրինությանն էր վերապահում նաև «օրենսդրությունը միութենական քաղաքացիության մասին», «օրենսդրությունը օտարերկրացիների իրավունքների մասին», «ամուսնության և ընտանիքի մասին օրենսդրության հիմունքների սահմանումը», «ներման մասին ընդհանուր միութենական ակտերի հրապարակումը» (հոդվ. 14, կետեր «ն», «շ», «ղ»):

Իսկ ՍՍՀՄ 1977 թվականի սահմանադրությունը ՍՍՀ Միության տնօրինությանն է վերապահում «ՍՍՀՄ ամբողջ տարածքում օրենսդրական կարգավորման միասնության ապահովումը, ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների օրենսդրության հիմունքների սահմանումը»:

Ներկայումս ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների սահմանադրությունները, ինչպես նաև միութենական ու հանրապետական ընթացիկ օրենսդրությունը չեն որոշում միութենական հանրապետությունների գերագույն սովետների հետ ՍՍՀՄ գերագույն սովետի փոխհարաբերությունների հիմնական պարամետրերը: ՍՍՀՄ սահմանադրության միայն 73-րդ հոդվածը սահմանում է, որ ՍՍՀ Միության տնօրինությանն է վերապահվում «պետական իշխանության և կառավարման

---

*ԱՅՎԱԶՅԱՆ ՆՈՐԻԿ ԱՆՈՒՇԱՎԱՆԻ— իրավաբանական գիտությունների դոկտոր, ԵրՊՀ-ի պետական, վարչական և միջազգային իրավունքի ամբիոնի դոցենտ:*

հանրապետական ու տեղական մարմինների կազմակերպման և գործունեության ընդհանուր հիմունքների սահմանումը» (կետ 3):

Դրա հետ մեկտեղ չի կարելի չնշել, որ միութենական հանրապետությունների պետական իշխանության բարձրագույն մարմինները հաճախ գործում են միատեսակ, հաճախ գերագույն սովետների նստաշրջանների օրակարգերը տարբեր հանրապետություններում պարունակում են միևնույն հարցերը, ինչը խոսում է նրանց աշխատանքում եղած որոշ միօրինակության մասին:

Համանման դրություն գոյություն ունի ՍՍՀՄ գերագույն սովետի նախագահության և միութենական հանրապետությունների գերագույն սովետների նախագահությունների փոխհարաբերություններում: Վերջիններիս կողմից հրապարակված նորմատիվ հրամանագրերի մեծ մասը ընդունվում է ի կատարումն ՍՍՀՄ գերագույն սովետի նախագահության համապատասխան հրամանագրերի, ինչը, մեր կարծիքով, չի կարելի օրինաչափ համարել, քանի որ դա էապես ազդում է հանրապետության ինքնուրույնության վրա:

«Ազգամիջյան հարաբերությունների մասին» XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի ընդունած բանաձևում միութենական հանրապետությունների ինքնուրույնության զարգացման առումով հանձնարարվում է ընդլայնել միութենական հանրապետությունների իրավունքները ՍՍՀ Միության և սովետական հանրապետությունների իրավասության սահմանազծման, կառավարչական մի շարք ֆունկցիաների ապակենտրոնացման, դրանք տեղերին հանձնելու, տնտեսության, սոցիալական ու մշակութային զարգացման, բնության պահպանության ոլորտում ինքնուրույնության և պատասխանատվության ուժեղացման միջոցով (տե՛ս **Սովետական Միության կոմունիստական կուսակցության XIX համամիութենական կոնֆերանսի բանաձևերը:** «Հայաստան» հրատ., Եր., 1988, էջ 43):

«ՍՍՀՄ սահմանադրության (հիմնական օրենքի) փոփոխությունների և լրացումների մասին» ՍՍՀՄ 1988 թվականի դեկտեմբերի 1-ի օրենքը հաշվի չի առնում XIX կուսկոնֆերանսի վերոհիշյալ հանձնարարականները և պահպանում է գոյություն ունեցող կենտրոնացումը ինչպես օրենսդիր, այնպես էլ կարգադրիչ իշխանության բնագավառում: Ճիշտ է, ՍՍՀՄ գերագույն սովետի «Պետական շինարարության բնագավառում քաղաքական ռեֆորմի իրագործման հետագա քայլերի մասին» 1988 թ. դեկտեմբերի 1-ի որոշմամբ առաջարկվում է ապահովել ՍՍՀՄ ազգային պետական կառուցվածքի հասունացած հարցերի լուծմանը վերաբերող առաջարկությունների խոր մշակումը, «ի նկատի ունենալով հանրապետությունների իրավասությունն ընդլայնելու, ՍՍՀ Միության ու միութենական հանրապետությունների փոխհարաբերություններում ավելորդ կենտրոնացումը վերացնելու...», նախատեսվում է առաջարկություններ նախապատրաստել ՍՍՀ Միության և հանրապետությունների իրավասությունը սահմանազատելու վերաբերյալ՝ «ելնելով նրանց քաղաքական ու սոցիալ-տնտեսական շահերի առավել լրիվ ապահովումից, ազգամիջյան հարաբերությունների ներդաշնակումից, ամբողջ երկրի հետագա զարգացման խնդիրները առավելագույն չափով հաշվի առնելուց»: Սակայն սովետների հեղինակության բարձրացման ուղիների որոնման առումով, նկատի ունենալով հետհոկտեմբերյան առաջին տասնամյակների փորձը, օրենքը վավերացնում է ՍՍՀ Միության պետական իշխանության բարձրագույն մարմնի եռօղակ կառուցվածքը (սովետների համագումար, գերագույն սովետ և գերագույն սովետի նախագահություն):

Բայց որպեսզի այդ մոդելը արդյունավետորեն գործի նաև միութենական հանրապետությունների մակարդակով, մեր կարծիքով, անհրաժեշտ է ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների պետական իշխանության բարձրագույն մարմինների փոխհարաբերությունները կառուցել ՍՍՀՄ 1924 թվականի սահմանադրության 1-ին կետի դրույթներին համապատասխան:

Էական դեմոկրատացման կարիք ունի նաև կառավարման պրոցեսը սովետական ֆեդերատիվ պետության մեջ: Դա նախ և առաջ վերաբերում է պետական կառավարման միութենական-հանրապետական մակարդակին: Սովորաբար հենց այդ մակարդակում էլ բախումներ են առաջանում ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների միջև:

Հայտնի է, որ միութենական հանրապետության մինիստրների խորհրդի իրավական դրությունը որոշվում է հանրապետության սահմանադրությամբ ու նրա մասին եղած օրենքով: Միևնույն ժամանակ, ելնելով սովետական պետության ֆեդերատիվ կառուցվածքից, միութենական հանրապետության կառավարության գործունեությունը կանոնակարգվում է նաև ընդհանուր միութենական նորմատիվ ակտերով: Մասնավորապես, ճյուղային և տերիտորիալ կառավարման կազմակերպչի դերը կատարելով համամիութենական մասշտաբով, ՍՍՀՄ մինիստրների խորհուրդն իր որոշումներում սահմանում է հարաբերությունների կարգը ՍՍՀՄ մինիստրությունների ու գերատեսչությունների և միութենական հանրապետությունների կառավարությունների միջև:

ՍՍՀՄ կառավարման պետական իշխանության բարձրագույն մարմինների նորմաստեղծ գործունեության պրակտիկայի ուսումնասիրումը վկայում է, որ ընդունված միութենական ակտերում հստակորեն սահմանագծված չեն ընդհանուր միութենական մինիստրությունների և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների լիազորությունների սահմանները: Իսկ հաշվի առնելով գերատեսչական իրավաստեղծության շարունակվող ակտիվությունը, հրատապ է մնում նաև միութենական հանրապետությունների կառավարությունների և ՍՍՀՄ մինիստրությունների, պետական կոմիտեների փոխհարաբերությունների կարգավորման պրոբլեմը:

Իրավաբանական գրականության մեջ քանիցս առաջարկություններ են արվել այդ հարաբերությունների իրավական հիմքերի կարգավորման մասին, ընդհանուր միութենական մինիստրությունների կողմից միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների առաջարկությունների քննարկման ընթացակարգի օրենսդրական վավերացման մասին: ՍՍՀՄ մինիստրությունների ու գերատեսչությունների և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների փոխհարաբերությունների ընդհանուր սկզբունքները պահանջում են, որ միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների իրավասության պրոբլեմը շոշափող այս կամ այն հարաբերության գերատեսչական նորմատիվ կարգավորման պրոցեսում համապատասխան նորմատիվ ակտի նախագիծը ներկայացվի ՍՍՀՄ մինիստրների խորհուրդ: Իրենց նորմատիվ ակտերով ՍՍՀՄ մինիստրությունները ու գերատեսչությունները չպետք է մտնեն միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների լիազորությունների ոլորտը, որոնք արդեն սահմանված են ՍՍՀՄ կամ միութենական հանրապետությունների պետական իշխանության ու կառավարման բարձրագույն մարմինների կողմից: Միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների ակտերի և հանրապետական իրավասությունը շոշափող գերատեսչական ակտերի միջև բախումներ առաջանալու դեպքում հարցը պետք է լուծվի հանրապետական օրենսդրության օգտին: Դա ՍՍՀՄ կառավարման կենտրոնական ճյուղային և միջճյուղային մարմիններին պարտավորեցնում է նորմաստեղծության պրոցեսում հաշվի առնել միութենական հանրապետությունների օրենսդրությունը:

Առանձին հետաքրքրություն է առաջացնում միութենական-հանրապետական կառավարման ոլորտների դեմոկրատացման պրոբլեմը: ՍՍՀՄ սահմանադրության 135-րդ հոդվածում գրված է, որ «միութենական-հանրապետական մինիստրությունները և ՍՍՀՄ պետական կոմիտեները իրենց հանձնարարված կառավարման ճյուղերը ղեկավարում կամ միջճյուղային կառավարումն իրականացնում են, որպես կանոն, միութենական հանրապետությունների համապատասխան մինիստրությունների, պետական կոմիտեների, այլ մարմինների միջոցով...»: Իսկ ՍՍՀՄ մինիստրությունների մասին ընդհանուր կանոնադրության 7-րդ կետում մատնանշվում է, որ «ՍՍՀՄ մինիստրությունը, միութենական հանրապետությունների համանուն մինիստրությունները, նրանց ենթակա ձեռնարկությունները, կազմակերպությունները և հիմնարկությունները կազմում են համապատասխան մինիստրության միասնական համակարգը»: Դա հանգեցնում է նրան, որ ՍՍՀՄ մինիստրություններն ու գերատեսչությունները շատ բաներում որոշում են միութենական հանրապետության մինիստրությունների ու գերատեսչությունների իրավասությունը, այդ թվում՝ միութենական հանրապետությունների մինիստրությունների համար ղեկավար նշանակություն ունեցող իրավական նորմերի ընդունման միջոցով:

Սակայն հայտնի է, որ, նախ, միութենական հանրապետությունների նույնանուն մինիստրություններն ու պետական կոմիտեները կառավարման նրանց մարմիններն

են. կանոնադրությունները այդ մարմինների մասին հաստատվում են միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների կողմից և նրանց իրավասության մեջ յուրաքանչյուր փոփոխություն պետք է կատարվի համապատասխան միութենական հանրապետության մինիստրների խորհրդի կողմից կամ նրա համաձայնությամբ: Իսկ, երկրորդ, և սա ավելի էական է վերակառուցման գաղափարի իրացման լույսով, ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումն ընդգծեց բոլոր մակարդակներում ղեկավարման առավելապես վարչական մեթոդներից առավելապես տնտեսական մեթոդների, կառավարման լայն դեմոկրատացման անցնելու անհրաժեշտությունը: Նման մոտեցումն ընդգրկում է. միավորումների ու ձեռնարկությունների ընքնուրույնության սահմանների շեշտակի ընդլայնում, նրանց փոխադրում լրիվ տնտհաշվարկի, էկոնոմիկայի կենտրոնացված ղեկավարման արմատական վերակառուցում, այսինքն՝ կենտրոնի վճռական ազատում ստորադաս տնտեսական օղակների օպերատիվ գործունեությանը միջամտելուց, պլանավորման, գնագոյացման, ֆինանսավարկային մեխանիզմի արմատական ռեֆորմ, գիտատեխնիկական առաջադիմության, արտաքին տնտեսկան կապերի կառավարման վերակառուցում և այլն:

«Պետական ձեռնարկության (միավորման) մասին» ՍՍՀՄ օրենքը գործնականորեն հիշյալ ֆունկցիաների լուծումը վերապահեց տնտեսական կառավարման սկզբնական օղակին, ինչը օբյեկտիվորեն հանգեցրեց կառավարման ապարատի ինչպես կառուցվածքային, այնպես էլ ֆունկցիոնալ վերակառուցման: Այժմ մինիստրությունների ու գերատեսչությունների ֆունկցիաների շեշտակի կրճատման կապակցությամբ տեղի է ունենում պետական կառավարման բազմաթիվ միապրոֆիլ կենտրոնական մարմինների միաձուլման պրոցես՝ ինչպես միութենական, այնպես էլ հանրապետական մակարդակներով: Միութենական հանրապետությունների միութենական-հանրապետական մինիստրությունները ռեալ կառավարչական ֆունկցիաներ չունեն տնտեսական կազմակերպությունների նկատմամբ, թեև նրանք երբեմն ապօրինաբար միջամտում են ձեռնարկությունների ու միավորումների տնտեսական գործունեությանը:

Միութենական հանրապետության պետական կառավարման կենտրոնական ճյուղային մարմինների ազդեցության թուլացման պրոցեսը կավարտվի, մեր կարծիքով, ռեգիոնալ տնտհաշվարկի սկզբունքի իրականացմամբ, այսինքն՝ երբ միութենական հանրապետությունները կանցնեն լրիվ տնտհաշվարկի:

Հաշվի առնելով վերը շարադրվածը, հարց է ծագում. լրիվ տնտեսական հաշվարկի պայմաններում, երբ միութենական հանրապետությունների միութենական-հանրապետական մինիստրություններն ու գերատեսչությունները ռեալ կառավարչական ֆունկցիա չունեն տնտեսական կազմակերպությունների նկատմամբ, նպատակահարմա՞ր է արդյոք պահպանել ՍՍՀ Միության պետական կառավարման կենտրոնական մարմինների միութենական-հանրապետական օղակը: Մեզ թվում է, որ տեսական ու գործնական կարևոր նշանակություն ունեցող այս հարցը պահանջում է իրավագետ գիտնականների, տնտեսագետների և կուսակցական ու սովետական մարմինների սևեռուն ուշադրությունը:

Միաժամանակ հայտնի է, որ ՍՍՀՄ-ի կազմավորման մասին պայմանագրով (հոդվ. 11) սովետական ֆեդերացիայի սուբյեկտները՝ սովերեն սովետական միութենական հանրապետությունները, նախատեսել են ընդամենը 10 միութենական ժողովրդական կոմիսարիատներ, որոնցից 5-ը (արտաքին գործերի, ռազմական և ծովային գործերի, արտաքին առևտրի, հաղորդակցության ճանապարհների, փոստի և հեռագրերի) ընդհանուր միութենական, իսկ 5-ը (բանգյուղտեսչության, ժողովրդական տնտեսության գերագույն խորհրդի, աշխատանքի, պարենի, ֆինանսների)՝ միութենական-հանրապետական: Իսկ ներկայումս ՍՍՀՄ-ում գործում են ավելի քան 80 միութենական մինիստրություններ ու պետական կոմիտեներ (տե՛ս ՍՍՀՄ մինիստրների խորհրդի մասին օրենքի 23, 24, 25 և 26 հոդվածները):

Պետական իշխանության չափից ավելի կենտրոնացումը ընդհանուր միութենական մարմինների ձեռքում բացասաբար է ազդել նաև ազգային հարաբերությունների վրա սովետական ֆեդերացիայի շրջանակներում, հանգեցրել դրանց սրման: Ուստի, այդ ժամանակաշրջանում, մեր կարծիքով, անհետաձգելի մշակում, հետազոտում ու լուծում պահանջող ամենահրատապ հարցը ազգերի ինքնորոշման



իրավունքն է: Այս կարևորագույն հարցը մշակել էին Վ. Ի. Լենինն ու նրա զինակիցները Հոկտեմբերյան հեղափոխության նախօրյակին և սովետական իշխանության առաջին տարիներին: Հետագայում այդ հարցը լուսաբանվում էր գերազանցապես պատմական տեսանկյունից, այլ ոչ թե որպես սովետական պետական շինարարության կարևորագույն պրոբլեմներից մեկը:

Մինչդեռ, ինչպես նշվում է XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի բանաձևերում, «սովետական մարդկանց բազում սերունդների ջանքերի արդյունքը եղավ հանրապետությունների եզակի միությունը: Նրա դրոշին գրված է՝ ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների ինտերնացիոնալ միություն, ազգերի ինքնորոշման իրավունք, ազգային մշակույթների վերածնում ու զարգացում...» **(ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի բանաձևերը, էջ 41)**:

Ազգերի ինքնորոշման իրավունքն ընդգրկում է երեք հիմնական բաղադրամաս.

ա) սեփական կամքի արտահայտմամբ կառավարման համապատասխան տիպ ու ձև ընտրելու իրավունքը.

բ) սեփական կամքի արտահայտմամբ իր ազգային պետականության ձև ընտրելու իրավունքը.

գ) սեփական կամքի արտահայտմամբ, այս կամ այն ազգային պետության հետ միանալու և նրանցից անջատվելու իրավունքը:

Պատմությունը ցույց է տալիս, որ ներկայումս ՍՍՀ Միության տարածքում ապրող ազգերը և ազգությունները կամովին ընտրել են զարգացման սոցիալիստական ուղին:

Ինչ վերաբերում է ազգային պետականության ձևերի ընտրությանը, ապա պետք է նկատել, որ ոչ բոլոր ազգերը և ազգություններն են հնարավորություն ունեցել այդ բանն անել սեփական ժողովուրդների կամքի արտահայտմանը համապատասխան: Եթե այն ազգերը, որոնց անուններով կոչված են տասնհինգ միութենական հանրապետությունները, կամովին ընտրել են իրենց ազգային պետականության ձևը, ապա այդ բանը չի կարելի լրիվ չափով ասել այն ազգերի և ազգությունների մասին, որոնք միավորվել են սովետական ինքնավարության ձևում: Ինքնավարության այս կամ այն ձևի ընտրությունը որոշվում էր ոչ թե համապատասխան ազգերի կամքի արտահայտմամբ, այլ, ավելի շուտ, այնպիսի գործոններով, ինչպես տվյալ ազգի կամ ազգության բնակչության քանակը, ազգային տարածքի մեծությունն ու նրա աշխարհագրական դիրքը, սոցիալ-տնտեսական ու մշակութային զարգացման մակարդակը և այլն. Ուստի սովետական ազգային-պետական շինարարության ընթացքում 15-ից ավելի ինքնավար մարզեր վերակազմվեցին Ինքնավար ՍՍՀ-ների (Բուրյաթական, Կաբարդինա-Բալկարական, Կարելական, Կալմիկական, Կիրգիզական, Կարա-Կալպակյան, Կոմի, Մարիակա , Մորդվական, Հյուսիս-Օսեթական, Տուվայի, Ուդմուրդիայի, Չեչենա-Ինգուշական, Չուվաշական և այլն), և մի շարք նոր միութենական հանրապետություններ ('Ղազախական, Կիրգիզական, Մոլդավական, Տաջիկական, Թուրքմենական, Ուզբեկական) համապատասխան Ինքնավար Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների վերակազմվելու միջոցով մտան ՍՍՀ Միության կազմի մեջ:

Սովետական ֆեդերացիայի զարգացման պատմությունը ցույց է տալիս, որ նրա կառուցվածքում վերջին էական փոփոխությունը տեղի ունեցավ 1940 թվականին, երբ ՍՍՀ Միության կազմի մեջ մտան մերձբալթյան հանրապետությունները՝ Լատվիան, Լիտվան, Էստոնիան: Այդ ժամանակից անցել է մոտ կես դար, որի ընթացքում տեղի է ունեցել սովետական ազգերի և ազգությունների տնտեսական, մշակութային, կադրային վերելք, օրինաչափորեն զարգացել է նրանց ազգային ինքնագիտակցությունը: Այդպիսի պայմաններում, մեր կարծիքով, մի շարք ժողովուրդների ազգային պետականության ներկայումս գոյություն ունեցող ձևերն այժմ հետ են մնում նրանց զարգացման ռեալ պրոցեսից: Իսկ պետականության իրենց սպառած ձևերի պահպանումը կարող է լուրջ խոչընդոտ լինել ազգերի հետագա առաջադիմության ճանապարհին: Այստեղից էլ այդ ձևերի կատարելագործման անհրաժեշտությունը, ինչը կարող է հանգեցնել սով'տական ֆեդերացիայի կառուցվածքային կատարելագործման:

Այդպիսի կատարելագործումը, մեր կարծիքով, կարելի է իրականացնել հե-
տևյալ ուղղություններով.

1) Ինքնավար հանրապետություններին հնարավորություն տալ իրենց ժողո-
վուրդների կամքի արտահայտման հիման վրա վերակազմվել միութենական հան-
րապետությունների և մտնել ՍՍՀՄ կազմի մեջ որպես նրա սուբյեկտներ: Դա հնա-
րավորություն կտա կենդանացնել ՍՍՀՄ սահմանադրության 73-րդ հոդվածի 1-ին
կետը, որտեղ ասված է, որ ՍՍՀ Միության տնօրինությանը ենթակա է ՍՍՀՄ կազ-
մի մեջ նոր հանրապետությունների ընդունումը, միութենական հանրապետություն-
ների կազմում նոր ինքնավար հանրապետությունների և ինքնավար մարզերի կազմ-
ման հաստատումը»: ՍՍՀՄ հիմնական օրենքի այս կետը արդեն գրեթե 50 տարի է
ինչ մնացել է անգործ:

2) Մի շարք ինքնավար մարզերի և ինքնավար օկրուգների թույլ տալ իրենց
ժողովուրդների կամքի արտահայտման հիման վրա վերակազմվելու համապատաս-
խանաբար ինքնավար հանրապետությունների և ինքնավար մարզերի:

3) Հարկավոր է հոգ տանել այն մասին, որ իրենց պետական կազմավորում-
ները չունեցող ազգերին և ազգություններին հնարավորություն տրվի միավորվելու
սովետական ինքնավարության ձևերից մեկի մեջ, քանի որ մեր երկրում ապրում են
100-ից ավելի ազգեր և ազգություններ, բայց կա ընդամենը միայն 53 ազգային-
պետական կազմավորում:

4) Սովետական ֆեդերացիայի հետագա զարգացմանը կնպաստեր տարածքա-
յին նոր սահմանազատումը միութենական հանրապետությունների միջև (այդպիսի
սահմանազատում, այն էլ ոչ լիարժեք կերպով իրականացվել է միայն 1924 թվա-
կանին Միջին Ասիայի հանրապետությունների նկատմամբ) այն հաշվով, որ նույն
ազգի հարևանությամբ ապրող բնակչությունը հնարավորություն ստանա միավոր-
վելու իր արմատական ազգի հետ:

Այնուհետև, ազգի ինքնորոշման իրավունքի դրսևորումներից մեկն է նրա իրա-
վունքը՝ սեփական կամքի արտահայտմամբ միանալու այս կամ այն ազգի հետ՝
պետական կազմավորման մեջ կամ անջատվել նրանից:

Հայտնի է, որ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո անկախ սովետական
հանրապետությունները կամավոր ու իրավահավասար հիմունքներով միավորվե-
ցին ՍՍՀ Միության մեջ, որը վավերագրվեց ՍՍՀ Միության կազմավորման մասին
1922 թվականի դեկտեմբերի 30-ի պայմանագրում, այնուհետև ՍՍՀՄ 1924 թվակա-
նի սահմանադրության մեջ: Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է, որ ռուս ժողովրդի
հանրապետությունն իր կողմը գրավի այլ ազգեր ոչ թե բռնությամբ, այլ բացառա-
պես կամավոր համաձայնությամբ (տե՛ս Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 34, էջ 478—479):

Սովետական ֆեդերացիայի այս սկզբունքները վավերագրված են նաև ՍՍՀՄ
կազմավորման մասին դեկլարացիայում, որտեղ ասված է, որ «այս միությունը
իրավահավասար ժողովուրդների կամավոր միավորում է» և որպես միավորման
կամավորության երաշխիք դեկլարացիան յուրաքանչյուր միութենական հանրապե-
տության համար ապահովել է Միությունից ազատ կերպով դուրս գալու իրավունքը:
Այդ իրավունքը հետագայում ամրագրվեց ՍՍՀՄ 1924 թվականի սահմանադրության
մեջ (հոդվ. 4), 1936 թվականի սահմանադրության մեջ (հոդվ. 17) և 1977 թվա-
կանի սահմանադրության մեջ (հոդվ. 72):

Այդ հարցը այլ կերպ լուծվեց այն ազգերի և ազգությունների համար, որոնք
միավորվել էին սովետական ինքնավարության այս կամ այն ձևի մեջ: Նրանք ինք-
նորոշման իրենց իրավունքը իրականացնելու հնարավորություն ստացան միայն այն
միութենական հանրապետության տարածքի սահմաններում, որի կազմի մեջ
գտնվում էին: Եվ քանի որ չի եղել միավորման ազատություն, ապա նրանց համար
նախատեսված չէր նաև անջատման սահմանադրական իրավունքը: Դրանով իսկ
խախտվում է միավորված սուբյեկտների, այսինքն՝ միութենական հանրապետության
և նրա կազմում գտնվող ինքնավար կազմավորման իրավահավասարությունը: Այս-
տեղից էլ այն հակասությունները, որոնք կան մեր ֆեդերացիայի ազգամիջյան հա-
րաբերություններում:

Այն փաստը, որ ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների սահմանադրու-
թյունները, ինչպես նաև «ՍՍՀՄ սահմանադրության (հիմնական օրենքի) փոփո-
խությունների ու լրացումների մասին» օրենքը չեն պարունակում միութենական



հանրապետությունների կողմից ինքնավար կազմավորումների դուրս գալու հնարա-
վորության նորմ, մեր կարծիքով, չի նշանակում, որ վերջինները զրկված են այդ-
պիսի իրավունքից: ՍՍՀՄ սահմանադրության 70-րդ հոդվածի դրույթը ազգերի
ազատ ինքնորոշման մասին ամբողջությամբ ու լիովին վերաբերում է նաև սովետա-
կան ինքնավարության ձևերին, քանի որ լենինյան մոտեցումն ինքնորոշման հար-
ցին չի ճանաչում մեծ ու փոքր ազգեր, անկախ նրանց տարածքի չափից, բնակ-
չության թվաքանակից, էկոնոմիկայի, մշակույթի զարգացածության աստիճանից և
այլն:

Ազգերի ինքնորոշման իրավունքը հռչակել էր դեռ իշխանության գլուխ անցած
բուրժուազիան. դրան համապատասխան ազգը սուվերեն է, ինքն է որոշում իր բախ-
տը՝ անկախ այն տարածքից, որի վրա ապրում է: Այդ սկզբունքն ավելի խոր կեր-
պով դրվեց սոցիալիստական ազգերի ինքնորոշման հիմքում՝ Հոկտեմբերյան սոցիա-
լիստական մեծ հեղափոխությունից հետո: Այս սկզբունքն օրենսդրորեն վավերա-
գրվեց սովետական պետության առաջին իսկ դեկրետներում: Այսպես, Վ. Ի. Լե-
նինի կողմից գրված և սովետների համառուսաստանյան II համագումարում 1917
թվականի նոյեմբերի 8-ին ընդունված «Հաշտության մասին» դեկրետում ասված է.
«Անեքսիա կամ ուրիշների հողերի հափշտակում ասելով սովետական կառավարու-
թյունը հասկանում է, համաձայն ընդհանրապես դեմոկրատիայի և հատկապես աշ-
խատավոր դասակարգերի իրավագիտակցության, փոքր կամ թույլ ժողովրդի յու-
րաքանչյուր միացում մեծ կամ ուժեղ պետության, առանց այդ ժողովրդի ճշտորոշ,
պարզ և կամովին հայտնած համաձայնության կամ ցանկության, անկախ նրանից,
թե երբ է այդ բռնի միացումը կատարվել, անկախ նաև նրանից, թե ինչ չափով
զարգացած կամ հետամնաց է բռնի միացվող կամ տվյալ պետության սահմաննե-
րում բռնի պահվող ազգը: Վերջապես, անկախ նրանից՝ արդյոք, Եվրոպայում, թե
հեռավոր անդրօվկիանյան երկրներում է ապրում այդ ազգությունը» (Сборник нор-
мативных актов по Советскому государственному праву. М., Юрид. лит., 1984,
стр. 9):

Պատմությունը ցույց է տալիս, որ այդ գաղափարների պահպանումը աջակցել
է սովետական ֆեդերացիայի զարգացմանն ու ամրապնդմանը: Այսպես «Միջին
Ասիայում սովետական հանրապետությունների սահմանազատման և Ուզբեկական
ՍՍՀ-ի ու Տաջիկական ՍՍՀ-ի՝ ՍՍՀ Միության մեջ մտնելու մասին, ՍՍՀՄ կենտ-
գործկոմի 1924 թվականի հոկտեմբերի 27-ի որոշման մեջ ասված է. «Լսելով զե-
կուցումը... «Թուրքեստանի Կիրգիզական մասը ՌՍՖՍՀ-ի կազմի մեջ մտնող Կիր-
գիզական Ինքնավար ՍՍՀ-ին միացնելու մասին», ՍՍՀՄ կենտգործկոմը հաստա-
տում է, որ աշխատավոր ժողովրդի կամքի ազատ արտահայտումը բարձրագույն
օրենք է և հանձնարարում է ՍՍՀՄ Միության կենտգործկոմի նախագահությանը
իրականացնել նոր կազմավորվող հանրապետությունների ձևակերպումը Միջին
Ասիայում...» (СЗ СССР, 1924, № 9, стр. 187):

Հատկանշական է նաև Մոլդավական ՍՍՀ-ի կազմավորման օրինակը: Այս-
պես, «Միութենական Մոլդավական ՍՍՀ-ի կազմավորման մասին» 1940 թվականի
օգոստոսի 2-ի ՍՍՀՄ օրենքում գրված է. «Ընդառաջելով Մոլդավական ԻՍՍՀ-ի մոլ-
դավական բնակչության հետ Բեսարաբիայի մոլդավական բնակչության վերամիա-
վորման մասին Բեսարաբիայի աշխատավորների և Մոլդավական ԻՍՍՀ-ի աշխա-
տավորների ցանկություններին և ղեկավարվելով ազգությունների ազատ զարգաց-
ման սովետական սկզբունքով, ՍՍՀՄ գերագույն սովետը որոշում է կազմավորել
Սովետական Մոլդավական Սոցիալիստական Հանրապետություն»: (Ведомости Вер-
ховного Совета СССР, 1940, № 28):

Սովետական ֆեդերացիայի կազմակերպման լենինյան այս սկզբունքներն ա-
ռանձնապես հրատապ են մեր օրերում՝ սովետական քաղաքական սիստեմի վերա-
կառուցման ու դեմոկրատացման ժամանակաշրջանում: Առավել ևս, որ բոլոր միու-
թենական հանրապետությունների ու ինքնավոր կազմավորումների աշխատավոր-
ների ազգային ինքնագիտակցության աճը, ազգային հարաբերությունների բնույթը
երկրում պահանջում են ձեռնարկել անհետաձգելի միջոցներ այն հաշվով, որ սովե-
տական ֆեդերացիայի շրջանակներում բացառվի մեկ ազգի ենթարկումը մեկ այլ
ազգի, որ դեմոկրատական հիմունքներով լուծվեն ինքնավար կազմավորումներում
ապրող ազգերի միավորման ու անջատման խնդիրները:

Բնականաբար, գործող սահմանադրության շրջանակներում անհնար է լուծել այդ խնդիրները: Անհրաժեշտ է էապես նորացնել ՍՍՀՄ սահմանադրության III բաժինը, որը նվիրված է ազգային-պետական կառուցվածքի պրոբլեմներին: Այդ կապակցությամբ հարկավոր է սահմանադրական կարգով բոլոր ինքնավար կազմավորումները դուրս բերել հանրապետական ենթակայությունից, դրանք դարձնելով ազգային-պետական կազմավորումներ ՍՍՀՄ-ի կազմում: Դա կհամապատասխաներ ինքնավարության ստատուսի վերանայման մասին XIX կուսկոնֆերանսի որոշմանը և վերջ կդներ ավտոնոմիզացիայի ստալինյան պլանի սխալներին:

ՍՍՀՄ սահմանադրության մեջ առաջարկված փոփոխությունները մտցնելու շնորհիվ կհաղթահարվեն հակասությունները առանձին հոդվածների միջև (հոդվածներ 70, 72, 78 և այլն), որոնք խոչընդոտում են առաջացող ազգամիջյան պրոբլեմների լուծմանը:

ՍՍՀՄ սահմանադրության 78-րդ հոդվածը ներկա տեսքով պահպանելու դեպքում, երբ միութենական հանրապետությունների կազմի մեջ մտնող ինքնավար կազմավորումները փաստորեն զրկված են իրենց կարծիքը հայտնելու իրավունքից՝ իրենց հետ կապված այդ հանրապետությունների տարածքը և սահմանները փոփոխելու դեպքում, կարող են կուրյոզներ առաջանալ, երբ այդ կազմավորումները կարող են մեկ հանրապետությունից մեկ ուրիշին հանձնվել առանց այդ ինքնավար կազմավորումների գիտության ու համաձայնության: Բացի դրանից, եթե միութենական հանրապետությունը սահմանադրության 72-րդ հոդվածի համաձայն դուրս գա ՍՍՀՄ-ի կազմից, նա իրավունք կունենա իր հետ տանելու նաև ինքնավար կազմավորումները հակառակ նրանց կամքի:

Այդ կապակցությամբ, հարկավոր է, մեր կարծիքով, ՍՍՀՄ սահմանադրության մեջ հատուկ վերապահում անել, որ ազգերի ինքնորոշման իրավունքի բոլոր բաղադրամասերը իրականացվում են հանրաքվեի միջոցով՝ տվյալ ազային-պետական կազմավորման շրջանակներում կամ հոծ բազմությամբ ապրող ազգի և ազգության շրջանում:



# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԻՆՖՐԱԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

**Վ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ**

ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԱԳԱՑՈՒՄԸ, արտադրանքի որակի և հասարակական արտադրության արդյունավետության արմատական բարելավումը ենթադրում են երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի կառուցվածքի օպտիմալացում: Այդ կոմպլեքսի անկապտելի բաղադրամասն է կազմում արտադրական ինֆրակառուցվածքը: Վերջինիս կազմավորման օբյեկտիվ հիմքն է աշխատանքի հասարակական բաժանումը, արտադրության հանրայնացման ծավալումը, արտադրողական ուժերի զարգացման որոշակի մակարդակը:

«Աշխատանքի բաժանումը հենց սկզբից պարունակում է աշխատանքի պայմանների, աշխատանքի գործիքների ու նյութերի բաժանում...» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Երկեր, հ. 3, էջ 88): Վ. Ի. Լենինը նշել է, որ աշատանքի հասարակական բաժանումը տանում է դեպի ժողովրդական տնտեսության առանձին և ինքնուրույն ճյուղերի ավելացման, «նույնիսկ արդյունքը սպառման համար պատրաստելու առանձին գործողությունները» հատուկ ճյուղի վերածվելու (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 3, էջ 21): Արտադրական ինֆրակառուցվածքն էլ հենց կոչված է կատարելու արտադրանքի վերջնական «պատրաստման» և այն արտադրողական սպառման հասցնելու գործողությունները:

Տնտեսագիտական գրականության մեջ արտադրական ինֆրակառուցվածքի կատեգորիայի սահմանման և նրա ճյուղերի դասակարգման մասին տարբեր կարծիքներ կան: Չնայած դրան, չի կարելի համաձայնել այն մտքի հետ, թե «նյութական արտադրության զարգացումը և ինֆրակառուցվածքը անկարելի է միմյանցից սահմանազատել, քանի որ գնալով նրանց փոխադարձ կապն ուժեղանում է» («Вопросы экономики». 1984, № 10, էջ 56): Իրոք որ աշխատանքի հասարակական բաժանման զարգացմամբ և մասնագիտացմամբ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի փոխադարձ կապն ու փոխկախվածությունը գնալով ավելի է ուժեղանում, բայց դրանից ամենևին էլ չի հետևում, թե դրանք դադարում են գոյություն ունենալ առանձին, և թե միմյանցից դրանց «զատելն անկարելի է»: Ընդհակառակը, պետք է դրանք հստակ տարբերակել, քանի որ միայն այդ դեպքում արտադրական ինֆրակառուցվածքն իր ամբողջությամբ և նրա առանձին ճյուղերը համապատասխան տեղ կգրավեն պլանավորման պրակտիկայում և կդադարի դրանց նկատմամբ «մնացորդային» սկզբունքի կիրառումը:

Ո՞րն է արտադրական ինֆրակառուցվածքի էությունը, ինչպիսի՞ն է նրա բաղադրակազմը, ո՞րն է նրա նպատակային ֆունկցիան:

Արտադրական ինֆրակառուցվածքը էկոնոմիկայի մի հատուկ ոլորտ է, որն իրենից ներկայացնում է ճյուղերի ու ենթաճյուղերի մի կոմպլեքս և որոնց ֆունկցիոնալ խնդիրն է, Կ. Մարքսի բնորոշմամբ, «ընդհանուր պայմանների» ստեղծումը վերարտադրության անընդհատ ու արդյունավետ ընթացքի համար:

Կ. Մարքսի խոսքերով ասած՝ լայն առումով աշխատանքի միջոցներին են «պատկանում **բոլոր նյութական պայմանները** (ընդգծումը մերն է— Վ. Հ.), որոնք անհրա-

*ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ ՎԼԱԴԻՄԻՐ ԿԱՐԱՊԵՏԻ— Վ. Յա. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների մանկավարժական ինստիտուտի քաղաքատնտեսության ամբիոնի վարիչ, տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր:*

ժեշտ են, որպեսզի պրոցեսը կարողանա ընդհանրապես կատարվել: Դրանք ուղղակի չեն մտնում պրոցեսի մեջ, բայց վերջինը առանց դրանց կամ բոլորովին անհնարին է, կամ կարող է տեղի ունենալ թերի կերպով» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 191):

Սովորաբար արտադրական ինֆրակառուցվածքի մեջ հասկացվում են տրանսպորտը, կապը, արտադրամիջոցների մեծածախ առևտուրը, նյութատեխնիկական մատակարարումը, էլեկտրաէներգիայի, նավթի, գազի, ջերմության ու ջրի մատակարարումը, պահեստային տնտեսությունը, արտադրության ինֆորմացիոն և գործնական սպասարկումը: «... Ինֆրակառուցվածքի պրոբլեմների վերաբերյալ վերջին տարիների տնտեսագիտական գրականության վերլուծությունը ցույց է տալիս, որ ինֆրակառուցվածքի տարրերի կազմի մասին կարծիքների լիակատար միասնություն դեռևս չկա...»: (М. Мелихов. Вопросы статистического изучения инфраструктуры. «Вестник статистики», 1987, № 5, էջ 25): Հարկ է արտադրության պրոցեսի ընդհանուր պայմանների թվին դասել նաև բնապահպան օբյեկտների համակարգը, այսինքն այն ամենը, ինչը, պահպանելով ու վերականգնելով մարդուն շրջապատող միջավայրը, ապահովում է հասարակական վերարտադրությունը, բարձրացնում նրա սոցիալ-տնտեսական արդյունավետությունը:

Ժողովրդական տնտեսության մեջ արտադրական ինֆրակառուցվածքի տեղի ու դինամիկայի մասին որոշ պատկերացում են տալիս տրանսպորտի և կապի գծով հետևյալ ցուցանիշները: Երկրում համախառն հասարակական արդյունքի մեջ այս ճյուղերի տեսակարար կշիռը 1970 թվականից մինչև 1986 թվականը 4-ից հասել է 4,8 տոկոսի, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 1,7-ից 2,7 տոկոսի: Արտադրական հիմնական ֆոնդերում համապատասխանաբար 13,6-ից 13,8 և 12,9-ից 13,4 տոկոսի: Ժողովրդական տնտեսության մեջ զբաղվածների թվով՝ 8-ից հասել է 9 տոկոսի և անփոփոխ է մնացել 7 տոկոսը: Կապիտալ ներդրումների մեջ ՍՍՀՄ-ում եղել է 9,5 տոկոս ութերորդ հնգամյակում և 12,4 տոկոս՝ տասնմեկերորդ հնգամյակում: Մեր հանրապետությունում նույն ժամանակամիջոցում ներդրումների ծավալը 6,8-ից հասել է 10 տոկոսի:

Բերված փաստական նյութը ցույց է տալիս նախ տվյալ ցուցանիշներով մեր հանրապետության հետ մնալը միութենական մակարդակից և ապա այն, որ վերջին տասնհինգ տարիների ընթացքում այդ ճյուղերի բաժինը փոխվել է շատ աննշան:

Արտադրական ինֆրակառուցվածքի նկատմամբ ուշադրության անբավարար լինելը հասցրել է ժողովրդական տնտեսության պահանջմունքներից նրա հետ մնալուն, էկոնոմիկայի զանազան ոլորտների միջև համաչափության խախտման, արտադրական ռեսուրսների մեծ կորուստների և, որպես հետևանք, հասարակական արտադրության բարձրացման ցածր տեմպերի: Նման վիճակը մասամբ բացատրվում է ինֆրակառուցվածքի թերագնահատմամբ, նրա, իբրև մի ինչ որ երկրորդական բանի նկատմամբ վերաբերմունքով. իբր գլխավորը համարվել է արտադրանքի թողարկումն ավելացնելը, իսկ ստեղծված բարիքները պահպանելու, դրանք որակով ու անկորուստ տեղ հասցնելու համար անհրաժեշտ պայմաններ ստեղծել կարելի է նաև հետո:

Պահեստարաններ, ճանապարհներ կառուցելու և դրանք ժամանակակից տեխնիկայով հագեցնելու համար բավարար միջոցներ չեն հատկացվել: Իրականում պրակտիկան ցույց է տալիս, որ նոր շինարարությունը, արտադրական կարողությունների ավելացումը չեն կարող փոխհատուցել կորուստները, ընդ որում դրանք անհամեմատ ավելի թանկ են նստում, քան այդ կորուստների վերացման համար կատարվող ներդրումները:

Այդպիսի վերաբերմունք սուր կերպով դրսևորվեց նաև տասնմեկերորդ հնգամյակում: Այսպես, եթե 1986 թվականին 1980 թվականի համեմատությամբ կապիտալ ներդրումների ծավալը արդյունաբերության մեջ աճել է 33 տոկոսով, իսկ տրանսպորտի և կապի բնագավառներում՝ 26 տոկոսով, ապա մեր հանրապետությունում այն կրճատվել է 4,3 տոկոսային կետով: Միայն արդյունաբերության գծով, փոխադրումների պահանջարկը ոչ լրիվ բավարարելու հետևանքով, վնասը կազմել է 6,5 միլիարդ ռուբլի: Երկաթուղային բեռնափոխադրումների ժամանակ ածխի կորուստները տարեկան հասնում են 186 միլիոն ռուբլու, երկաթինը՝ 40 միլիոն ռուբլու: Արտադրված ցեմենտի շուրջ 10, հանքային պարարտանյութերի 17, աղյուսի 8—11 տոկոսը կորչում է երկաթուղային փոխադրումների ժամանակ: Վ. Ի. Լենինի անվան Համամիութենական գյուղատնտեսական գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Վ. Տիխոնովի հաշվարկներով աճեցված ու հավաքված արտադրանքի



ոչ պակաս քառորդը անվերադարձ կորչում է «հետգյուղատնտեսական» փուլերում՝ փոխադրումների ու պահպանման վատ վիճակի հետևանքով: Ըստ էքսպերտ գնահատումների երկրի կորուստները, կապված ինֆրակառուցվածքի անբավարար վիճակի հետ, ութսունական թվականների սկզբին կազմել են հասարակական արտադրանքի 6—8 տոկոսը: Մեր հանրապետությունում վիճակն ավելի բարվոք չէ: Դրանից հետևում է, որ եթե Հայաստանի հասարակական արտադրանքը 1985 թվականին գնահատվում էր 13,6 միլիարդ ռուբլի (փաստացի գործող գներով), ապա ուրեմն կորուստների արժեքը կազմել է մեկ միլիարդ ռուբլի: Դրանք համադրելով կապիտալ ներդրումներին՝ կտեսնենք, որ ինֆրակառուցվածքից բխող կորուստները երկարատև կապիտալ ներդրումների ընդհանուր գումարի համեմատությամբ 50—60 տոկոս են կազմում: Պահեստների, շտեմարանների, սառնարանների, լավ ճանապարհների, մասնագիտացված տրանսպորտի պակասը հասցնում է արտադրանքի զգալի մասի կորստյան:

Ցեմենտ և հանքային պարարտանյութ փոխադրող հատուկ ավտոմեքենաների օգտագործմամբ 3—4 անգամ կրճատվում է այդ նյութերի կորուստը բեռնման, տեղափոխման և բեռնաթափման ընթացքում:

Պարզ է, որ նման վիճակն անհանդուրժելի է և հարկավոր է արագացնել ինֆրակառուցվածքի զարգացման տեմպերը, հաղթահարել նրա տևական հետ մնալը, քանի որ այն ամբողջ արտադրության արդյունավետության աճի կարևորագույն օղակն է հանդիսանում: Չնայած արտադրության գերակա ուղղությունների, տվյալ դեպքում ինֆրկառուցվածքի ճյուղերի, առաջանցիկ զարգացման ակնհայտ անհրաժեշտությանը, այնուամենայնիվ ոչ բոլորն են այդ տեսակետին համամիտ: Անա, օրինակ՝ Ս. Ս. Նոսովան գրում է. «Արտադրության հանրայնացման բարձր մակարդակը թույլ չի տալիս նախապատվություն տալ սոցիալիստական արտադրության մի որևիցե ենթահամակարգի: Զարգացման այդպիսի նախապատվությունը կարող էր խախտում առաջ բերել միասնական ժողովրդատնտեսական շղթայում ու դրա հետ միասին հասցնել տնտեսական կորուստների» (Социалистическая инфраструктура в воспроизводственном процессе. М., 1984, էջ 17):

Անշուշտ, ժողովրդական տնտեսության տարբեր ոլորտների ու ճյուղերի միջև համամասնության, համաչափության պահպանումը պլանային սոցիալիստական էկոնոմիկայի առավելություններից մեկն է: Բայց դրանից չի հետևում, թե առանձին արտադրաճյուղերի առաջանցիկ զարգացումը նրան հակացուցված է: Ընդհակառակը, ճեղքումներն առաջատար ուղղություններում ոչ միայն հնարավոր են, այլև անհրաժեշտ, քանի որ միայն այդպես կարելի է ապահովել առաջընթացը գիտատեխնիկական հեղափոխությանը համընթաց: Ինդ որում, պետք է, անշուշտ, ելնել օբյեկտիվ պայմաններից և փոխհամաձայնեցվածություն ապահովել մատակարարողների ու սպառողների հետ, ժողովրդական տնտեսության ընդհանուր համամասնության հետ: Կասկածից վեր է, որ այդ տեսանկյունով կապիտալ ներդրումների վերաբաշխումը առաջ կբերի արտադրական ինֆրակառուցվածքի առավելագույն զարգացում: Մեր երկրի զարգացման տարբեր փուլերում առաջնային են եղել էներգետիկան, հաստոցաշինությունը, նավթային ու գազային արդյունաբերությունը քիմիան և ժողովրդական տնտեսության որոշ այլ ճյուղեր:

Դրանով հանդերձ, առաջնահերթ խնդիր է մնում արտադրական ներճյուղային և տերիտորիալ ինֆրակառուցվածքի օպտիմալացումը, նրա նյութատեխնիկական բազայի և կառավարման տնտեսական մեխանիզմի կատարելագործումը: ՍՄԿԿ XXVII համագումարում նշվեց, որ «կուսակցությունը հսկայական նշանակություն է տալիս արտադրական ինֆրակառուցվածքի, առաջին հերթին տրանսպորտի և կապի, տեխնիկական վերազինմանը» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 37):

Բերենք մեր երկրում արտադրական ինֆրակառուցվածքի նյութատեխնիկական բազայի հետ մնալու մի քանի օրինակներ: 1986 թվականին 1000 քառակուսի կիլոմետր տարածքում երկաթուղային գծերի շահագործվող երկարությունը կազմել է ԳԴՀ-ում 120 կմ., ՉՍՍՀ-ում, 103, Լեհաստանում՝ 85,9, Հունգարիայում՝ 85, Ռումինիայում՝ 47,1, Բուլղարիայում՝ 38,7, իսկ ՍՍՀՄ-ում՝ 6,5 կմ. (Ուկրաինական, Լատվիական, Լիտվական ՍՍՀ-ում 30—37, Հայկական ՍՍՀ-ում՝ 26,6, Էստոնական ՍՍՀ-ում՝ 22,2 Վրացական ՍՍՀ-ում՝ 21,4 կմ.):

ՍՍՀՄ տարածքը գրեթե երկու անգամ մեծ է, քան ԱՄՆ-ինը, այնինչ երկաթուղու շահագործվող երկարությունը 1,8 անգամ քիչ է: Պետք է նշել նաև, որ բեռնաշրջանառությունը մեր գծերում շուրջ երեք անգամ գերազանցում է ԱՄՆ-ին: Դա վկայում է ոչ միայն տրանսպորտային միջոցների օգտագործման արդյունավետության, այլև

չափազանց ծանրաբեռնվածության, լարվածության, անհամաձայնեցվածության մասին, դրանցից բխող բոլոր բացասական հետևանքներով հանդերձ (այդ թվում և վթարները): Մեծ են բեռնատար վագոնների պարապուրդները մերձատար ուղիներում ու կայարաններում: Ձեռնարկությունների մեղքով 1987 թվականին պարապուրդները գերազանցել են նորման 0,7 ժամով, կամ 10 տոկոսով: Մեկ վագոնի շրջանառությունը 1986 թ. համեմատությամբ դանդաղել է 5 ժամով: Մեր հանրապետությունում վագոնների պարապուրդը նորման գերազանցել է 24,9 տոկոսով:

Տեխնիկապես զարգացած երկրներում առաջադեմ ավտոտրանսպորտի բաժինը ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալի մեջ աճում է ու կազմում ԳՖՀ-ում 36 տոկոս, ԱՄՆ-ում՝ 20, Ֆրանսիայում՝ 16 տոկոս: ՍՍՀՄ-ում այն հավասար է սոսկ 6 տոկոսի: Մեր հետ մնալու հիմնական պատճառը ավտոճանապարհների ցանցի ոչ բավարար զարգացումն է, դրանց վատ վիճակը, ճանապարհների շինարարության և սպասարկման անհամապատասխանությունը տեխնիկայի զարգացման ժամանակակից մակարդակին: 1000 քառակուսի կիլոմետր տարածքում ավտոճանապարհների երկարությունը կազմել է ՉՍՍՀ-ում 579 կմ, ԳԴՀ-ում՝ 435, ՀԺՀ-ում՝ 323, իսկ ՍՍՀՄ-ում՝ 43 կմ (Վրացական ՍՍՀ-ում՝ 528 կմ, Հայկական ՍՍՀ-ում՝ 400 կմ):

Մեր հանրապետության ավտոճանապարհների ընդհանուր երկարությունը 1960 թվականից հետո կրկնապատկվել է և 1986 թվականին հասել 12,2 հազար կիլոմետրի, մինչդեռ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հիմնական արտադրական ֆոնդերն ավելացել են 8 անգամ, տրանսպորտի բոլոր տեսակների ապրանքաշրջանառությունը՝ 4,5 անգամ: Ամուր ծածկույթով ավտոմոբիլային ճանապարհները մեր երկրում 5 անգամ քիչ են, քան ԱՄՆ-ում: Դրա հետևանքով ավտոտրանսպորտի բեռնաշրջանառության 40—45 տոկոսն ընկնում է հողածածկ ճանապարհներին, իսկ դա հասցնում է շահագործման 2,5—3 միլիարդ ռուբլու գերածախսի: Այդպիսի ճանապարհներով բեռնափոխադրումների արագությունը ցածր է 2—3 անգամ, վառելիքի ծախսի և ավտոդողերի մաշվողությունը 1,5—2 անգամ: Դրա հետևանքով 3,5 անգամ աճում է բեռնափոխադրումների ինքնարժեքը, նվազում է ավտոմեքենաների միջնորոգումային վազքատարածությունը, ավելանում են վթարներն ու պարապուրդները:

Տրանսպորտը դարձել է մեր էկոնոմիկայի «նեղ» տեղը: Առաջնակարգ տրանսպորտային մայրուղիների կառուցման գործում կատարվող տնտեսումը հարստության վատնման վատթարագույն ձևերից մեկն է: Ժամանակակից պահանջներից հետ է մնում մատակարարման, սպառման, մթերման, ինչպես նաև պահեստների, շտեմարանների, սառնարանների, բեռնման-բեռնաթափման աշխատանքների, տարային տնտեսությունների նյութական բազան:

Թերությունները շատ են մեր հանրապետության տրանսպորտային համակարգում: Օրինակ, ժողովրդական տնտեսությանը մեծ վնաս է հասցնում անհաշվեկշռվածությունը «արտադրող-տեղափոխող-սպառող» շղթայում: Տրանսպորտային միջոցները կամ չեն բավականացնում, կամ էլ այդպիսիք պատվիրվում են՝ արհեստականորեն ավելացնելով իրենց պահանջների չափը: Այսպես, 1986 թվականին «Հայէլեկտրամեքենան» իր իսկ պլանավորած 9326 վագոնի փոխարեն բարձել է 7688 վագոն: Այդպիսին է եղել վիճակը նաև Այրումի և Հոկտեմբերյանի պահածոյի գործարաններում: Թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները 1986 թ. չեն օգտագործել ավելի քան 13 հազար վագոն: Հաճախ վագոններն ուղարկվում են թերբեռնված: Երևանի ձեթ-օճառի կոմբինատը նախատեսված 63 հազարի փոխարեն բեռնում է 43—45 հազար տոննա:

Նյութական արտադրության ինֆրակառուցվածքի զարգացման հետ կապված դժվարություններն ու թերությունները հաճախ փորձում են բացատրել բարձր կապիտալատարությամբ և ֆոնդատարությամբ, ինչպես նաև ցածր շահութաբերությամբ:

Սակայն ճիշտ չէ այդ հատկանիշները ինֆրակառուցվածքի բոլոր ճյուղերին վերագրելը: Հարկավոր է այդ ճյուղերը քննարկել տարբերակված: Պարզվում է, որ կապիտալ ներդրումները բանջարապահոցների շինարարության մեջ հատուցվում են 1,5 տարում, պարարտանյութերի պահեստների շինարարությունում՝ 2 տարում, մրգապահոցներինը՝ 3 տարում, շտեմարաններինը՝ 3—4 տարում: Բարձր է տրանսպորտի, կապի, նյութատեխնիկական մատակարարման ձեռնարկությունների շահութաբերությունը (10—30 տոկոս):

Այս կապակցությամբ, մեծ հետաքրքրություն է ներկայացնում սովետական տընտեսագետներից Ս. Հայնմանի կարծիքը: Նա գրում է. «... Արդի պայմաններում ամենաարդյունավետ և արագորեն ծածկող կապիտալ ներդրումները, որքան էլ դա



տարօրինակ թվա, այն ներդրումներն են, որոնք ուղղված են կորուստների աղբյուրների վերացմանը: Դրանց շարքում առաջին տեղն են գրավում ինֆրակառուցվածքի ճյուղերը» («Экономика и организация промышленного производства». 1981, № 1, էջ 84):

Դժվար է ստույգ հաշվարկել ամբողջ ժողովրդական տնտեսության արդյունավետության վրա արտադրական ինֆրակառուցվածքի ազդեցության աստիճանը. այդպիսի մեթոդիկա առայժմ դեռևս մշակվում է: Սակայն ներկայումս արդեն ձևավորվել է մի այնպիսի կարծիք, թե այդ արդյունավետությունը հարկավոր է քննել երկու շաղկապված տեսանկյուններից: Դրանցից մեկը բուն ենթահամակարգում արտադրական ռեսուրսների օգտագործման արդյունավետությունն է, իսկ մյուսը՝ այն արդյունավետությունը, որն առաջանում է ինֆրակառուցվածքային ճյուղերի ծառայություններից օգտվողների մոտ: Ընդ որում չպետք է դիմել ծայրահեղության ու բացարձակացնել սրանցից որևէ մեկը: Մինչդեռ այդպես է վարվում, օրինակ, Տ. Զոտովան, երբ պընդում է, թե ինֆրակառուցվածքային ճյուղերի գործունեության հիմնական արդյունքը իրացնում են այդ ճյուղերի ծառայություններից օգտվողները, այլ ոչ թե իրենք... Բոլոր ծախսերը, որոնք կապված են ինֆրակառուցվածքային սպասարկման որակը բարելավելու հետ, ինֆրակառուցվածքային ճյուղերին ձեռնտու չեն, քանի որ այդ ծախսերից եկող օգուտներն ստանում են ուրիշ գերատեսչություններ (Вопросы экономики». 1985, № 7, էջ 38):

Արդյունավետության այսպիսի մեկնաբանությունը կարող է հենց ինֆրակառուցվածքային ճյուղերում խնամառուական տրամադրություն առաջ բերել: Իրավ, եթե հիմնական արդյունքը ստացվում և իրացվում է ոչ այդ իսկ ճյուղերում, ուստի և նրանց ներկայացվող պահանջն էլ մեծ չի լինի: Իրականում չնայած ինֆրակառուցվածքի ծառայություններից օգտվողների մոտ ձեռք բերվող արդյունքների ողջ նշանակալիությանը, ոչ պակաս կարևոր են նաև հենց ինֆրակառուցվածքում ստացվող արդյունքները: Վ. Պ. Օրեշինի գնահատմամբ, ինֆրակառուցվածքի գործունեության փաստական արդյունքների շուրջ 50 տոկոսը մնում է իրեն: Ուրեմն, ինֆրակառուցվածքային ճյուղերի սպասարկման որակը բարելավելու նպատակով կատարվող ծախսերի անշահավետության թեզը սնանկ է դառնում: Բայց եթե անգամ բոլոր օգուտներն էլ ստանային ուրիշ ճյուղերը, մեր համոզմամբ սպասարկումը բարելավելու համար ծախսերը դարձյալ անհրաժեշտ են, քանի որ սոցիալիզմի օրոք ամբողջ ժողովրդական տնտեսությունը միասնական կոմպլեքս է, և արդյունավետությանը պետք է մոտենալ ամբողջ հասարակական արտադրության առումով:

Կորուստներն առաջ են գալիս ամենատարբեր պատճառներից և վերարտադրության պրոցեսի բոլոր փուլերում: Տվյալ դեպքում մեզ հետաքրքրում են այն կորուստները, որոնք առաջանում են արտադրանքի շրջանառության ու իրացման փուլում: Դրանք ներկայացնում են արտադրվող նյութական բարիքների ծավալի և վերջնական սպառմամբ իրացված այդ բարիքների ծավալի միջև տարբերությունը:

Կորուստներ են առաջանում տրանսպորտային համակարգում (ի հետևանք բեռնափոխադրումները առաջավոր և նեղ մասնագիտացված միջոցներով անապահովվածության, առաջնակարգ ճանապարհների պակասության, տրանսպորտի տարբեր տեսակների թույլ կոոպերացման, փոխադրումների դանդաղության). բեռնմանբեռնաթափման աշխատանքների ժամանակ (ամբողջ կոմպլեքսի հետամնաց նյութական բազայի պատճառով, ներառյալ տարային տնտեսությունը, կոոպերատիվ կապը, կառավարման անհստակությունը). պահեստավորման և պահպանման ժամանակ (ցածր տեխնիկական հագեցվածության և չհարմարեցվածության պատճառով):

Բարձր զարգացած, ժամանակակից տեխնիկայով հագեցված, ռիթմիկ, ներդաշնակ տեմպերով աշխատող և ռացիոնալ կազմակերպված ինֆրակառուցվածքը պայմաններ է ստեղծում արտադրության անընդմեջ ու արդյունավետ գործառման, այսինքն՝ հասարակայնորեն անհրաժեշտ աշխատանքի (ինչպես արտադրության, այնպես էլ շրջանառության ոլորտում) նվազ ծախսումով վերջնական արդյունքներ ստանալու համար:

Մենք շարունակում ենք տնտրնջալ պահեստային շինությունների պակասից, մինչդեռ ըստ անգլիական մամուլի հաղորդագրության, Ճապոնիայում վաղուց հաստատվել է «Միշտ ժամանակին» («Just in time) սկզբունքը, այսինքն արտադրությունն այնպես է կազմակերպված, որ անհրաժեշտ նյութերը տեղ են հասցվում ժամերի ընթացքում («Թոյոտա» ֆիրմայում պահեստային նյութերի ծավալը հաշվարկված է ընդամենը մեկ ժամվա աշխատանքի համար), իսկ արտադրանքը թողարկվում է միայն սպառողների պահանջի դեպքում: Դրա հետևանքով վերացվել կամ

նվազագույնի են հասցվել մեծ ծախսեր ու տերիտորիաներ պահանջող պահեստային տնտեսությունները՝ վիթխարի նյութական արժեքների պահպանման համար:

Մեր երկրում տարբեր գերատեսչությունների կապիտալ շինարարության պահեստներում ՍՍՀՄ պետկոմի տվյալներով առ 1 հունվարի 1988 թ. կան 12.725 միլիոն ռուբլու արժողությամբ չտեղադրված սարքավորումներ, որոնցից 4,276 միլոն ռուբլունը ներմուծված են:

Տագնապալի է նաև այն, որ նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ դրանք փաստորեն չեն կրճատվել: Մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում չտեղադրված սարքավորումների արժեքը կազմում է 67,4 միլիոն ռուբլի: Այստեղ սարքավորման յուրաքանչյուր միավորը մինչև մոնտաժվելը միջին հաշվով երկու տարի մնում է բաց երկնքի տակ, առանց պահպանության:

Հսկայական աշխատանքային, նյութական, ֆինանսական միջոցներ են վատնըվում այդ մեռնող հարստության արտադրության, գնման և ապա պահեստավորման վրա: Չտեղադրված սարքավորումը գործարանային պահեստներում ու բակերում ֆիզիկապես մաշվում է, ժանգոտվում ու փչանում, բարոյապես հնանում է ու վերածվում պարզապես մետաղաջարդոնի:

Այսպիսով, ժողովրդական տնտեսության անարդյունավետ զարգացումը, «մնացորդային» կապիտալ ներդրման քաղաքականությունը հանգեցրին արտադրական ինֆրակառուցվածքի տեխնիկատնտեսական և կազմակերպչական լուրջ հետամնացության, որով և պայմանավորված են միջճյուղային կառուցվածքային անհաշվեկշռվածությունը, արտադրանքի ցածր որակը և մեծ կորուստները:

Հասարակական արտադրության ինտենսիվացումը, նրա արդյունավետության ու որակի նշանակալից բարձրացումը ենթադրում են կառուցվածքային քաղաքականության արմատական վերափոխում առաջին հերթին գերզանցապես արտադրական ինֆրակառուցվածքի զարգացման ասպարեզում: Այդ նպատակով անհրաժեշտ է կազմել միութենական և ռեգիոնալ մի ամբողջական, այլ ոչ թե առանձին տարրերին վերաբերող ծրագիր, վերաբաշխել կապիտալ ներդրումները հօգուտ այդ ոլորտի, ամրապնդելով դրանք բոլոր արտադրական ռեսուրսներով, բարձր արտադրողական տեխնիկական միջոցներով: Անհրաժեշտ է նաև օպտիմալ և դինամիկ հաշվեկշռվածություն ապահովել ինֆրակառուցվածքի ներսում, առանձին օղակների և նյութական արտադրության ճյուղերի միջև, կարգի բերել տնտեսական մեխանիզմը, ամբողջ կոմպլեքսը կառավարելու համակարգը, պլանային կարգով ռեզերվային հնարավորություններ ստեղծել արտադրական ինֆրակառուցվածքի բոլոր բաղկացուցիչ մասերում, որը և կերաշխավորի անընդհատ ու որակյալ սպասարկում:

---

# ՎԱՐՁԱԿԱԼԱԿԱՆ ԿԱՊԱԼԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Գ. ԴԱՎԹՅԱՆ**
**Խ. ԱՎԱԳՅԱՆ**
**Լ. ՇԱՀԱՋԻՋՅԱՆ**

ՍՍՀՄ ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՄԱՆ կարևոր պայմանը գյուղատնտեսական արտադրության զարգացման տեմպերի արագացումն է, որին և ուղղված է կուսակցության ագրարային քաղաքականության վերակառուցումը: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսում, գյուղատնտեսության հետ մնալը դեռևս դանդաղ է հաղթահարվում, ագրարային հատվածում հարկավոր է վճռական բեկում, և խնդիրն այն է, որպեսզի արդեն տասներկուերորդ հնգամյակում նկատելիորեն բարելավվի պարենի մատակարարումը, ապահովվի մեկ շնչին ընկնող մսի, կաթի, բանջարեղենի ու պտուղների սպառման զգալի հավելում: Գյուղատնտեսական արտադրության աճի տեմպերը կրկնապատկելու առաջադրանքը կատարելու նպատակով կուսակցության ու կառավարության կողմից մշակվել են ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի կայուն ու դինամիկ աճի և արդյունավետության բարձրացման մասշտաբային միջոցառումներ: Դրանց էությունը այն է, որ գյուղում փոխվի սոցիալ-տնտեսական վիճակը, ամենուրեք կիրառվեն տնտեսավարման տնտեսագիտական մեթոդներ, պայմաններ ստեղծվեն արտադրության ինտենսիվ տեխնոլոգիաների ներդրման, կոլտնտեսությունների, սովխոզների և միջտնտեսային ձեռնարկությունների ու կազմակերպությունների ինքնուրույնության ընդլայնման ու իրենց գործունեության արդյունքների նկատմամբ պատասխանատվության բարձրացման համար: Երկրի բոլոր գոտիներում, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերում առաջավոր ձեռնարկությունների վերջին երկու-երեք տարվա աշխատանքի փորձը վկայում է, որ պարենային ծրագրի կենսագործման արագացումն ապահովելու ռեալ ուղին գյուղատնտեսական ձեռնարկություններում լրիվ տնտեսական հաշվարկի և աշխատանքի կազմակերպման կապալային ձևերի արմատավորումն է: Միայն հողի իսկական տերը, նյութապես շահագրգռված երկրագործը կարող է ժամանակակից ագրոտեխնիկական և զոոանասնաբուծական գիտության նվաճումների լայն օգտագործման հիման վրա ապահովել բարձր արտադրողական աշխատանք: Դա է ապացուցում 1988 թ. հոկտեմբերի 12-ին և նոյեմբերի 2-ին ՍՄԿԿ Կենտկոմում, նոյեմբերի 14—15-ին Օրյոլի մարզում անցկացված խորհրդակցությունների մասնակիցների ներկայացրած կենդանի փորձը: Կապալի ու վարձակալական աշխատանքի բարձր արդյունավետության օրինակ են տալիս նաև մեր հանրապետության ոչ քիչ թվով տնտեսություններ Ստեփանավանի, Նաիրիի, Աշտարակի, Հոկտեմբերյանի, Հրազդանի, Մասիսի, Կալինինոյի շրջաններում, որտեղ վարձակալական ստորաբաժանումները միայն անցած տարի, միջին հաշվով, մեկուկեսից երկու անգամ ավելի շատ մթերքներ են արտադրել, քան սովորական բրիգադները: Կոլեկտիվ ու վարձակալական կապալի կազմակերպման ուսանելի փորձ ունի Աշտարակի շրջանի Նոր Եդեսիայի № 4 սովխոզը, որը բազա է դարձել շրջանի տնտեսությունների ղեկավար աշխատողների ու մասնագետների տնտեսագիտական ուսուցման համար: Սովխոզն ունի ընդամենը մեկուկես տասնամյակի պատմություն, այն կազմակերպվել է նոր յուրացված, քարքարոտ, սնընդանյու-

---

*ԴԱՎԹՅԱՆ ԳԵՐԱՍԻՄ ՎՈԼՈԴՅԱՅԻ— Գյուղինստիտուտի տնտեսագիտության ֆակուլտետի դեկան, տնտեսագիտության թեկնածու:*

*ԱՎԱԳՅԱՆ ԽԱՉԻԿ ՄԱՅԻՍԻ— Նույն ինստիտուտի դոցենտ, տնտեսագիտության թեկնածու:*

*ՇԱՀԱՋԻՋՅԱՆ ԼԵՎՈՆ ՍԱՐԳՍԻ— Աշտարակի շրջանի 4-րդ սովխոզի դիրեկտոր:*

թերով խիստ աղքատ հողերի բազայի վրա: Մելիորատիվ ու ջրաշինարարական աշխատանքների կազմակերպմանը զուգընթաց կառուցվեցին բնակելի շենքեր, հասարակական, արտադրական և կուլտուր-կենցաղային օբյեկտներ, նորաբնակների (128 տնտեսություն, 612 բնակիչ) հաշվին ստեղծվեց աշխատավորական մի լավ կոլեկտիվ: Սովխոզին անժամկետ օգտագործման համար ամրացվեց 834 հեկտար գյուղատնտեսական օգտագործելի հողատարածություն: Անցած տարիների ընթացքում հիմնադրվել է 151 հեկտար խաղողի այգի (որից բերքատու է 141 հեկտար), 178 հեկտար դեղձենու, ծիրանենու, տանձենու և խնձորենու այգիներ (58 հեկտար դեռ չի մտել բերքատվության մեջ): Տնտեսությունը զբաղվում է նաև դաշտավարությամբ, որտեղ 260 հեկտար տարածության վրա մշակվում են հացահատիկային ու կերային կուլտուրաներ: Տնտեսության հիմնական արտադրական ֆոնդերը կազմում են ավելի քան 4 միլիոն ռուբլի: Աշտարակի շրջանում առաջինն այստեղ են ներդրվել կոլեկտիվ կապալը և ներտնտեսային հաշվարկը: Սովխոզում հանդես է բերվել միանգամայն արդարացված հաշվենկատություն, գործը սկսել են մարդկանց լավ նախապատրաստմամբ, անհրաժեշտ պայմանների ստեղծմամբ: Առկա նյութատեխնիկական ռեսուրսների և մարդկային գործոնի հնարավորությունները 1984 թ. փորձարկել են № 4 բրիգադում: 13 մարդուց բաղկացած կապալային կոլեկտիվը երկու տարվա ընթացքում ձեռք բերեց բարձր արդյունքներ, սովխոզում որոշակի դրական մթնոլորտ ստեղծվեց աշխատանքի կազմակերպման ու վարձատրության այդ առաջադիմական ձևի նկատմամբ և 1986 թվականին մյուս չորս այգեգործական, պտղաբուծական և դաշտավարական բրիգադները ևս անցան կապալի: Նկատելի կերպով բարելավվեցին սովխոզի արտադրատնտեսական գործունեության ցուցանիշները: Այսպես, եթե 1985 թվականին հեկտարից միջին հաշվով ստացել են 18 ցենտներ հացահատիկ, 68 ցենտներ խաղող, 42 ցենտներ պտուղ, ապա 1988 թ. համապատասխանաբար, 25, 78 և 55 ցենտներ:

Կապալային ստորաբաժանումների աշխատանքի առաջին տարիների փորձը միաժամանակ ցույց տվեց, որ բրիգադի անդամները դեռևս պատշաճ ուշադրություն չեն դարձնում նյութական միջոցների խնայողաբար օգտագործմանը, ուղղակի և ընդհանուր արտադրական ծախսերի կրճատմանը, հետևապես՝ արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը: Ելնելով դրանից, բոլոր կապալային բրիգադներն անցան ներտընտեսային հաշվարկի, իսկ 1987 թ. սկսած աշխատանքի վարձատրությունը կատարվում է համախառն եկամուտից ելնելով: Այս ձեռնարկումները կարճ ժամանակամիջոցում նպաստեցին արտադրական պոտենցիալից մեծ հատույցի ստացմանը: 1985 թվականի 83 հազարի դիմաց անցյալ տարի տնտեսության օգուտը կազմեց 273 հազար ռուբլի, իսկ շահութաբերությունն այդ նույն ժամանակամիջոցում բարձրացավ 29 տոկոսով և կազմեց 57 տոկոս: Գոհացուցիչ են արդյունքները նաև անցած տարում: Տնտեսության ղեկավարությունը մասնագետների և գիտնականների օգնությամբ նախապատրաստական անհրաժեշտ աշխատանք կատարեց կոլեկտիվ կապալի բարձրագույն ձևի՝ վարձակալական կապալի ներդրման համար:

1988 թ. № 4 բրիգադը (32 մարդուց կազմված) աշխատեց վարձակալական հիմունքներով: Բրիգադին պայմանագրով (5 տարի ժամկետով) հատկացվեց 112 հեկտար պտղատու այգի (որից 102-ը՝ բերքատու), 5 հեկտար անտառաշերտ, 15 կիլոմետր ոռոգման ցանց, 3 անիվավոր տրակտոր և 2 բեռնատար ավտոմեքենա:

Նախատեսվեցին արտադրանքի արտադրության ծավալը, իրացման ժամկետները, հաշվարկային գները, պայմանագրով նախատեսվածից ավելի արտադրված արտադրանքի իրացման կարգը, նյութական ռեսուրսներով ապահովության կազմակերպումը, բնական աղետների հետևանքով պատճառած վնասների հատուցման կարգը, ընդունված փոխադարձ պարտավորությունները չկատարելու կամ կիսատ-պռատ կատարելու համար կողմերի պատասխանատվության պայմանները և այլ հարցերը: Մշակված պայմանները պարզ ու մատչելի են բանվորների համար: Նրանք տարվա սկզբից արդեն գիտեին, որ իրենց վարձատրության մակարդակը պայմանավորված է տնտհաշվարկային եկամուտով, իսկ դա կարող է ձեռք բերվել միայն վարձակալային հարաբերությունների պայմաններում:

Յուրաքանչյուր աշխատող գիտի, որ իր անձնական եկամուտը կաճի միայն այն դեպքում, երբ ավելի շատ արտադրանք արտադրվի, բարելավվի որակը, նվազի դրա ինքնարժեքը: Այս ամենը բրիգադում ստեղծել է փոխադարձ վստահության, բարձր կարգապահության և պարտաճանաչության մթնոլորտ, պատասխանատվություն վստահված գործի նկատմամբ: Նոր հարաբերությունների պայմաններում կոլեկտիվը ձեռք է բերել լավ ցուցանիշներ, որովհետև մարդիկ բույսերի խնամքի ու մշակու-



թյան, ոռոգման ջրի, յուրաքանչյուր կիլոգրամ պարարտանյութի, թունաքիմիկատների և նյութական մյուս միջոցների օգտագործման նկատմամբ ցուցաբերել են սըրտացավ, իրոք տիրոջ վերաբերմունք: 1988 թ. պտղատու այգիների փաստացի միջին բերքատվությունը հասավ 55 ցենտների, 1987 թվականի 47-ի դիմաց: Պտուղների մեկ ցենտների ինքնարժեքը կազմեց 33,8 ռուբլի, պլանավորված 41 ռուբլու դիմաց: Արտադրանքի ինքնարժեքը հիմնականում իջել է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, որը մեկ տարվա ընթացքում աճել է 16,4 տոկոսով: Սակայն գյուղատնտեսության մեջ հաճախ իր «ծանրակշիռ» խոսքն է ասում բնությունը: Անցյալ տարի բրիգադի կողմից հաշվարկային գներով սովխոզին վաճառված արտադրանքներից պլանային առաջադրանքը կատարվել ու գերակատարվել է միայն դեղձի գծով: Այսպիսի իրավիճակը հետևանք է բնակլիմայական անբարենպաստ պայմանների, որովհետև բրիգադի անդամներն ամենայն բարեխղճությամբ ու բարձր որակով են կատարել ագրոտեխնիկական քարտերով նախատեսված աշխատանքները: Սակայն 1988 թվականին այգիները երկու անգամ կարկտահարվեցին՝ պտղի կազմավորման և բերքահավաքի ընթացքում: Բացի դրանից օգոստոս ամսին երկու անգամ մրրկանման քամիներից տանձենու և խնձորենու բերքի զգալի կորուստ եղավ: Միայն դեղձի վաճառքի պլանային առաջադրանքը 114,4 տոկոսով գերակատարելու շնորհիվ, բրիգադը սովխոզին վաճառեց 131.184 ռուբլու արտադրանք՝ պլանային առաջադրանքը գերակատարելով 51,3 տոկոսով: Հաշվարկային գները գրեթե չեն փոխվել, որովհետև բրիգադը դեղձի արտադրության գծով գերակատարած մասի միայն 5 տոկոսն է իրացրել շուկայում, իսկ մնացած մասը հանձնել է արդյունաբերական ձեռնարկություններին՝ վերամշակման նպատակով, որի գնման գները անհամեմատ ցածր են: Դա բացատրվում է նրանով, որ արտադրված պտուղների որակը ցածր էր, հետևապես որակի բարձրացումը բրիգադի անդամների համար մնում է որպես կարևոր պրոբլեմ:

Բացի սովխոզին հաշվարկային գներով վաճառված պտղից, բրիգադի անդամներին բնամթերային ձևով տրվել է 270 ցենտներ պտուղ, նախորդ 1987 թվականի 236 ցենտների դիմաց: Եթե հաշվի առնենք նաև բնամթերքով բրիգադի անդամներին տրված պտուղը, ապա բրիգադի կողմից պտղի արտադրության պլանային առաջադրանքը գերակատարվել է ոչ թե 51,3 այլ 59,2 տոկոսով: Ուղղակի արտադրական ծախսումների նկատմամբ խիստ վերահսկողության և խնայողական ռեժիմի իրականացման շնորհիվ բրիգադում 1988 թվականին նյութական ծախսումների զգալի տնտեսում է կատարվել:

Այդ տնտեսումը կազմել է 7.093 ռուբլի կամ 14,3 տոկոս, այն դեպքում, երբ համախառն արտադրանքի պլանը գերակատարվել է 48,8 տոկոսով: Տարվա ընթացքում փաստացի կատարված աշխատանքների համար միասնական կարգագրով վճարված աշխատավարձը կազմել է 32.500 ռուբլի, պլանով նախատեսված 31.993 ռուբլի տարիֆային ֆոնդի դիմաց: Այսպիսով, պլանավորված 117,7 հազարի փոխարեն ստացվել է 174,9 հազար ռուբլու համախառն արտադրանք, ընդ որում նախատեսված 91.014 ռուբլի ուղղակի ծախսումների դիմաց, բրիգադը ծախսել է ընդամենը 75,2 հազար ռուբլի: Հետևապես 1 ռուբլի համախառն արտադրանքի հաշվով պլանավորված 77 կոպեկի դիմաց փաստացի ծախսվել է 43 կոպեկ, իսկ լրացուցիչ վարձատրության, կարգայնության և կարևորագույն աշխատանքները ժամանակին ու որակով կատարելու համար վճարումների հետ մեկտեղ այն կազմում է 60 կոպեկ, որը պլանի համեմատությամբ պակաս է 17 կոպեկով, իսկ նախորդ տարվա համեմատությամբ՝ 11,3 կոպեկով: Վարձակալական կապալի ներդրումը, ինչ խոսք, նպաստել է բրիգադի անդամների նյութական շահագրգռվածության բարձրացմանը: Բավական է ասել, որ գնալով ավելացել է, ինչպես բացարձակ թվով, այնպես էլ մեկ աշխատողի հաշվով, հասանելիք տարեկան աշխատավարձի գումարը:

Ամբողջ աշխատավարձի ֆոնդն ավելացել է ինչպես պլանի, այնպես էլ նախորդ տարվա նկատմամբ: Մեկ աշխատողի միջին տարեկան աշխատավարձը 1988 թ. պլանի համեմատությամբ բարձրացել է 1999 ռուբլով, կամ 155,2 տոկոսով, իսկ 1887 թվականի համեմատությամբ՝ համապատասխանաբար 107 ռուբլով կամ 103,4 տոկոսով: Մեկ աշխատողի հաշվով ավելացել է նաև բնամթերքով տրված վարձատրությունը, որը 1988 թ. կազմել է 844 կգ կամ դրամական արտահայտությամբ (իրացման միջին գնով) 380 ռուբլի, 1987 թվականի համապատասխան 706 կգ և 335 ռուբլու դիմաց:

Բնամթերքով տրվող վարձատրության ավելացումը ևս ունեցել է իր դրական

ազդեցությունը բրիգադի աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման գործում:

Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե բրիգադը պայմանագրով նախատեսվածից ավելի ստացված արտադրանքի կիլոգրամը իրացներ մինչև անգամ 50 կոպեկով, ապա մեկ աշխատողի հաշվով աշխատավարձը կավելանար 1740 ռուբլով և կկազմեր 5.027 ռուբլի:

Ուսումնասիրվող բրիգադի գործունեությունում հատկանշական է, որ պահպանվել է աշխատանքի արտադրողականության ու աշխատանքի վարձատրության աճի ճիշտ հարաբերակցությունը: Այստեղ վարձատրության մակարդակի աճը չի գերազանցում աշխատանքի արտադրողականության աճին: Այսպես, 1987 թ. համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 16,4, իսկ վարձատրությունը՝ 3,4 տոկոսով: Սա վկայում է այն մասին, որ վարձակալական կապալի պայմաններում պահպանվում է աշխատանքի արտադրողականության ու վարձատրության աճի հարաբերակցության օրինաչափությունը:

Արդեն առկա արդյունքներով սովխոզի բանվորները և մասնագետները խորապես համոզվել են, որ արդի փուլում վարձակալական կապալն է այն միակ ուղին, որ կարող է ապահովել աշխատանքի արտադրողականության նկատելի բարձրացում ու դրա հիման վրա արտադրանքի ավելացում:

Այսպիսի պայմաններում սկսել է ակտիվորեն գործել հակածախսումային մեխանիզմը: Միայն մեկ տարվա ընթացքում ուղղակի ծախսումների տնտեսումը նախորդ տարվա համեմատությամբ կազմել է 18,8 հազար ռուբլի: Սովխոզի մնացած 4 բրիգադներն իրենց կոլեկտիվների ժողովների որոշումներն են ներկայացրել ադմինիստրացիային, որպեսզի այս տարվանից իրենք նույնպես անցնեն վարձակալական կապալի: Սովխոզի փորձը վկայում է ևս մի կարևոր հանգամանք, այն է՝ վարձակալական կապալը ոչ ոքի չպետք է պարտադրել: Դա այն միակ մեխանիզմն է, որ ձեռնտու է լավ աշխատողին, լավ բանվորին, մասնագետին, ղեկավարին:

Կուտակված փորձը միաժամանակ ցույց է տալիս, որ կատարելագործման կարիք է զգում վարձավճարի ձևը: Նախատեսվում է այս տարի վարձավճարը սահմանել վարելահողի, այգիների և վարձով տրված արտադրամիջոցների միավորի համար՝ դրամով: Վարձակալման չափը որոշելու համար հիմք է ընդունվելու հաշվարկային շահույթը, որը տնտեսությունում ստացվում է մեկ հեկտար հողից, մեկ հեկտար այգուց: Շահույթը հաշվարկվելու է որպես արտադրանքի իրացումից ստացված հասույթի և նրա արտադրման նորմատիվային ծախսերի միջև եղած տարբերություն:

Տեխնիկայի վարձավճարը հաշվարկվելու է մարման մասհանումների մակարդակով: Վարձավճարի մեջ են մտցվելու նաև արձակուրդների վճարման, սոցիալական ապահովագրության, ապահովագրական վճարումները, վերադիր և մյուս ծախսերը: Այս դեպքում, բրիգադի անդամները իրավունք կունենան տնտեսությունից ստանալու արձակուրդային վճարումներ, ժամանակավոր անաշխատունակության նպաստներ և այլն:

Բրիգադներն արտադրանքի իրացումից ստացված հասույթից մուծելու են վարձավճար, մասհանումներ օգտագործված նյութական ռեսուրսների և տրամադրված սպասարկումների համար, կատարելու են մյուս տեսակի վճարումները, որոնք նախատեսված են պայմանագրային պարտավորություններով: Մնացած գումարը կազմելու է վարձակալների տնտհաշվարկային եկամուտը, որը մնալու է իրենց տնօրինության տակ: Վարձակալական բրիգադներն իրենց նախաձեռնությամբ տնտհաշվարկային եկամուտի հաշվին (բացի բաշխելուց) կարող են ստեղծել արտադրության զարգացման, սոցիալական զարգացման և պահեստային (ռեզերվային) ֆոնդեր:

Սովխոզում վարձակալները սոցիալական զարգացմանը կմասնակցեն վարձավճարի միջոցով, որը կավելացնի տնտեսության շահույթը, իսկ վերջինս լրիվ տնտեսական հաշվարկի և ինքնաֆինանսավորման փոխադրման պայմաններում դառնում է տնտեսության սոցիալական զարգացման հիմնական աղբյուրը: Վարձակալները կարող են սեփական տնտհաշվարկային եկամուտի մի մասը հատկացնել իրենց կոլեկտիվի անդամների աշխատանքի, կենցաղի և հանգստի պայմանների բարելավման միջոցառումներին: Մարդիկ իրենց դրամական միջոցները կարող են պահել անձնական հաշվում՝ տնտեսության հաշվապահությունում:

Տարերային աղետներից և անբարենպաստ այլ պայմաններից առաջացած կորուստները վարձակալներին հատուցվելու են տնտեսության ապահովագրական վճարումների, ինչպես նաև սեփական ռեզերվային ֆոնդի միջոցների հաշվին:



Երկրում պարենի պակասը, գյուղատնտեսության հետ մնալը հետևանք է նրան, որ այսօր գյուղում ստեղծված տնտեսական հարաբերությունները չեն խթանում մարդու ստեղծագործական, ակտիվ ու ձեռներեց աշխատանքը, հետևապես հրատապ խնդիր են տնտեսական հարաբերությունների արմատական վերակառուցումը, լրիվ տնտհաշվարկի կիրառումը և վարձակալական հարաբերությունների զարգացումը:

Վարձակալական կապալը մարդուն կապում է հողի հետ, դրանով իսկ վերացնում է մարդու խզումը, խորթացումը հողից, գյուղատնտեսական արտադրությունից: Վարձակալական կապալը մի մեխանիզմ է, որի միջոցով ավելի բարձր մակարդակի կհասցվեն արտադրական հարաբերությունները: Դա պայմաններ է ստեղծում որպեսզի մարդիկ հոգատար վերաբերմունք ցուցաբերեն հանրային սեփականության նկատմամբ, այն դիտել որպես իրենցը: Էապես բարելավում է մարդկանց աշխատանքի վարձատրությունը, այն կախման մեջ է դրվում ոչ միայն արտադրանքի քանակից ու որակից, այլև դրա արտադրության նյութական ծախսերից: Ստացվում է, որ աշխատանքի վարձատրությունը հանդես է գալիս որպես արդյունավետ հակածախսումային մեխանիզմ և աշխատողներին նպատակամղում է բարձր վերջնական արդյունքներ ձեռք բերելուն:

Շատ կարևոր է, որ վարձակալային բոլոր ստորաբաժանումներում ապահովվի տնտեսական հաշվարկի և աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առավել լրիվ փոխգործողությունը, աշխատողների շահագրգռվածության բարձրացում ինչպես արտադրանքի քանակի ավելացման ու դրա որակի բարելավման, այնպես էլ ծախսերի պակասեցման գործում:

Մենք ավելի ու ավելի ենք համոզվում, որ պարենային պրոբլեմի լուծման մայրուղին ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ձեռնարկություններում լրիվ տնտեսական հաշվարկի, վարձակալական կապալի և ինտենսիվ տեխնոլոգիաների համատեղ ներդրման արագացումն է:

# ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ, ՆՈՐ ՄՈՏԵՑՈՒՄՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԸ

**Վ. ԿՈՒԶՄԻՆ**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՂԲԵՐԳՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՑԱՎԸ բաժանեցին ողջ երկիրը, շատ մարդիկ արտասահմանում. այդ մասին արդեն քիչ չի ասվել ու գրվել: Մեր, ՍՄԿԿ Կենտկոմի՝ երկրաշարժի հետևանքների վերացման հանձնաժողովի աշխատանքային նիստերին մասնակցած ժուռնալիստներիս, առջև բացվեց ինտերնացիոնալ համերաշխության, գթասրտության, կենդանի մնացածներին փլատակներից փրկելու հսկայական մասշտաբի աշխատանքների, աղետի գոտում բժշկական օգնության, սննդի կազմակերպման, երեխաներին, կանանց, ծերերին, հայրենի օջախը կորցրածներին միութենական հանրապետություններ, մարզեր ու երկրամասեր էվակուացնելու չտեսնված տեսարան:

Հանձնաժողովի նիստերում մշտապես կարմիր թելի պես անցնում էր կուսակցության շրջանային կոմիտեների գործունեության վերսկսելու, իրադրության կարգավորման գործում կոմունիստի անձնական օրինակի նշանակության, արարման և ստեղծագործական աշխատանքի մթնոլորտ ստեղծելու մասին միտքը: Նշվեց, որ, չնայած կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների մեծ թվով ղեկավարների, կուսակցական ակտիվի նշանակալի մասի կորստյանը, հանրապետական կուսակցական կազմակերպությունն ամբողջությամբ, սկզբնական կուսկազմակերպությունները, շրջկոմները իրենց դրսևորեցին ամենալավագույն կողմերով:

**ԵՐԵՎԱՆ: ՄԱՇՏՈՑԻ ՇՐՋԱՆ:** Այստեղ, հանրապետության մայրաքաղաքում առաջիններից մեկը արձագանքեցին սարսափելի աղետին: Դեկտեմբերի 7-ին կուսշրջկոմը անցավ այսպես ասած «ռազմական դրության»: Ըստ էության այն այդպես էլ կար: Այստեղ էին գալիս ձեռնարկությունների, գիտահետազոտական հիմնարկությունների, կառույցների, կուսակցական կազմակերպությունների ներկայացուցիչները, որոնք, ստանալով գործնական առաջադրանքներ, շտապում էին իրենց կոլեկտիվները, որպեսզի նրանց ոտքի կանգնեցնեն՝ աղետյալներին օգնելու համար:

Շրջկոմի բյուրոն իր արտակարգ նիստում որոշում ընդունեց շտապ կարգով Սպիտակի շրջան ուղարկել փրկարար ջոկատներ, հաց, մթերքներ, ջուր, վիրակապման նյութեր, դեղամիջոցներ: Երեք ժամից էլ քիչ պահանջվեց որոշումը կատարելու համար: Երեկոյան ուղիղ ժամը 6-ին 17 ավտոբուսից կազմված շարասյունը ճանապարհ ընկավ: Շրջկոմի, վերստուգիչ հանձնաժողովի բոլոր 96 անդամները, ապարատի բոլոր 16 աշխատողները ընդգրկվեցին առաջին փրկարար դեսանտի կազմում: Այնուամենայնիվ, ոչ բոլորը: Շրջկոմում մնաց մեկ կին՝ կուսշրջկոմի քարտուղար Է. Քոչարյանը: Նրա ուսերին ընկավ ոչ թեթև բեռ՝ հիվանդանոցներում տեղավորել փլվածքների տակից առաջինը հանված մարդկանց, ինչպես նաև տեղավորել նրանց, ովքեր մնացել են անօթևան:

Հետագա պատմությունը շարունակում է կուսշրջկոմի առաջին քարտուղար Ա. Գեղամյանը, որի հետ հանդիպեցի երկրաշարժից յոթ օր հետո: Նրա առջև գրառման գրքույկ էր՝ նշումներ, հանձնարարություններ, ով ինչի համար է կրում անձնական պատասխանատվություն: Ըստ էության, շրջկոմի այս բոլոր փաստաթղթերը մեկ շաբաթվա համար էին, քանի որ թուղթ չէին գրել, այլ գործ էին արել: Այո՛, այդ գրանցման գրքույկին քարտուղարը չի նայում: Իրադարձությունները նրա սրտում են, մտքում: Դրանք հնարավոր չէ մոռանալ:

— Այդ չարաբաստիկ օրվա երեկոյան ժամը տասին,— ասում է Ա. Գեղամյանը,

---

*ԿՈՒԶՄԻՆ ՎԻԿՏՈՐ ԻՎԱՆՈՎԻՉ — «Պարտիյնայա ժիզն» ամսագրի՝ բաժնի վարիչի տեղակալ:*



— շարասյունը հասավ Սպիտակ: Քաղաքը չկար: Փլատակներ, համատարած մթություն: Առաջինը դիմավորեցին զինվորները: Բռնետրանսպորտյորի լուսարձակները միակ լուսավորությունն էին: Գործի գցվեցին լինգերը, քլունգները, բահերը, չէ՞ որ տեխնիկան դեռևս չէր եկել: Կողմնորոշվում էինք հառաչանքներով, ճիչերով՝ փրկելով մարդկանց քաղաքացիների տակից: Յուրաքանչյուր փրկված կյանքը ուժ էր տալիս: Մարդիկ աշխատում էին ինչպես խելագար: Ես տեսնում էի շատերի դեմքին սպիներ: Սակայն դրանք սպիներ չէին, արցունքներն էին մարդկանց դեմքերը ակոսել, իսկ դրանց վրա ներծծված փոշին վերածվել էր կոշտուկների:

Ծանր էր պատմությունը: Ովքե՞ր էին այդ մարդիկ: Նրանք, ովքեր խիկույն, առանց խորհելու, երբեմն վտանգելով իրենց կյանքը, ողբերգության առաջին իսկ ժամերին օգնության էին եկել իրենց եղբայրներին ու քույրերին՝ Սպիտակում, Լենինականում:

Ա. Գեղամյանը և մեր զրույցին մասնակցող՝ կուսշրջկոմի մի քանի աշխատողներ խնդրեցին չնշել առանձին անուններ, չառանձնացնել ոչ մեկին, քանի որ այդ կլինի անարդարացի ուրիշների նկատմամբ: Կատարելով նրանց խնդրանքը՝ չեմ կարող, այնուամենայնիվ, չխոսել մի քանի կոլեկտիվների և նրանց կուսկազմակերպությունների մասին, որոնք դժբախտության ժամերին բռնեցին տոկունության, քաղաքական հասունության քննություն:

Դրանք «Երևանշին» միավորման շինարարներն էին ու նրանց մեջ շատ կոմունիստներ, որոնք Սպիտակում փրկել էին ոչ մեկ կյանք: Դրանք գիտնականներն էին, որոնց թվում համաշխարհային անուն հանած ֆիզիկայի ինստիտուտի գիտնականները, որոնք հետաձգեցին կարևոր փորձերը, որպեսզի ձեռքերը վերցնեն քլունգներն ու լինգերը: Դրանք «Անի» գիտաարտադրական միավորման ինժեներներն էին ու բանվորները, որոնք տարերային աղետի առաջին իսկ օրը Սպիտակի փլատակներից փրկեցին քառասուն կենդանի հայրենակիցների:

Իսկ Մաշտոցի երջանը այդ տագնապալի ժամանակաընթացքում ամենևին էլ

Իսկ Մաշտոցի շրջանը այդ տագնապալի ժամանակաընթացքում ամենևին էլ քանի, գրեթե արձանագրային գրառումներ իմ ծոցատետրից:

Շրջանի հիվանդանոցներում շտապ կարգով տեղավորվել են 450 վիրավորներ: Շուրջ 200 մարդ աղետի շրջաններից օթևան են գտել քաղաքացիների ընտանիքներում, տեղավորվել պանսիոնատներում, դպրոցներում, կուլտուրայի տներում: Ձեռնարկությունների կինխորհուրդներն իրենց վրա են վերցրել տուժածների համար հագուստի, կոշիկի հավաքման հոգսը: Շրջսովետի գործկոմը նրանց տվել է միանվագ դրամական օգնություն:

Ութ օրվա ընթացքում գիշեր ու տիվ աշխատեցին «Հաց», «Կաթ» արտադրամիավորումների կոլեկտիվները՝ զգալիորեն գերազանցելով շուրջօրյա սովորական արտադրողականությունը: «Գառնի» գործարանի բանվորների նախաձեռնությամբ որոշվեց սկզբնական շրջանում սահմանել տասժամյա աշխատանքային օր: Այն արժանացավ կուսխմբերի և աշխատանքային կոլեկտիվի խորհրդի պաշտպանությանը: Հարցն Հետաքրքրվեցի՝ իսկ բոլո՞րն են, արդյոք, համաձայնել այդպիսի որոշմանը: Հարցն իսկ հասարակ չէր, նրբին էր: Իսկ ինձ պատասխանեցին՝ ողջ կոլեկտիվից առարկեցին երեքը: Նրանց, իհարկե, չհարկադրեցին, թող խիղճը նրանց դատավորը լինի:

Շրջկոմում զրույցն ավարտված է: Կուսակցական աշխատողների ժամանակը պետք է գնահատել, այն հիմա ոսկու գին ունի: Ահա միջանցքում կուտակվել է քսան մարդ: Մոտեցի, որ կազմակերպվում է հերթական ջոկատը երկրաշարժի գոտու համար: Սխալվեցի: Ստացվեց, որ նրանցից շատերը հենց նոր են վերադարձել այնտեղից, ինչպես, օրինակ, հաշվիչ տեխնիկայի և ինֆորմատիկայի գիտաարտադրական միավորման փականագործ Արմեն Էլչյանը: Նա մեկ շաբաթ զբաղվել է Սպիտակի փլվածքների մաքրմամբ: Ի՞նչն է բերել այդ երիտասարդ մարդկանց շրջկոմ: Հիմա բյուրոյի նիստում նրանց ընդունելու են կուսակցության մեջ:

Չեմ կարողանում զսպել ինձ, որպեսզի չհիշատակեմ նաև նրանցից մի քանիսին: Արմեն Բաղյան՝ «Վերհանշին» տրեստի մոնտաժող: Երեք օր առանց հանգստի մասնակցել է մարդկանց փրկությանը Լենինականում:

Արշակ Մանուկյան՝ քաղաքացիական ավիացիայի Հայկական վարչության ավիատեխնիկ: Օր ու գիշեր չի հեռացել օդանավակայանից՝ նախապատրաստելով ինքնաթիռները թռիչքի:

Կարինե Սահրադյան՝ «Հաց» արտադրամիավորման փաթեթավորող: Երբ շատ բանվորներ գնացել էին իրենց հարազատների թաղմանը, նա կանգնեց վառարանի

Իսկ Լենինականում թերթը ընկալեցին որպես վերածննդի առաջին բողբոջ: Այն, ինչպես հացը, բաժանում էին անմիջապես մեքենայից, տալիս էին ձեռքից ձեռք: Թերթին իր հոդվածն էր բերել տեղի գրող Գ. Մովսիսյանը: Վերածննդից հետո երկրորդ համարում հանդես եկավ ՍՍՀՄ ժողովրդական արտիստ, Լենինականի ծնունդ Ֆ. Մկրտչյանը, երրորդում՝ ՍՍՀՄ ժողովրդական արտիստուհի Գոհար Գասպարյանը: Սակայն, իհարկե, համարների նախապատրաստման ծանրությունը ընկել էր կենդանի մնացած ժուռնալիստների ուսերին, ինչպես նաև «Սովետական Հայաստան» թերթի սեփական թղթակից Ռ. Սիմոնյանի վրա:

Ի՞նչը հնարավորություն տվեց արագորեն կյանքի վերադարձնել թերթը: Կարելի է պատասխանել միանշանակ. կուսքաղկոմի, նրա առաջին քարտուղար Մ. Մկրտչյանի, երկրորդ քարտուղար Ռ. Գալստյանի, բյուրոյի մյուս անդամների ջերմ, շահագրգիռ վերաբերմունքն իրենց տպագիր օրգանի նկատմամբ: Այդ նրանց նախաձեռնությամբ առաջին համարը օպերատիվ կերպով նախապատրաստվեց ու լույս տեսավ հարևան Արթիկի շրջանի տպարանում, իսկ սկսած երկրորդ համարից թերթը տպագրվում է Երևանում: Շուտով Լենինականում կլինի շարժական տպարանը յոթ մեքենաների վրա, և «Բանվորը» կսկսի հրատարակվել հարազատ քաղաքում:

Շտաբում ստացվող ամենաօպերատիվ ինֆորմացիան քաղկոմի կարգադրությամբ անմիջապես տրվում է խմբագրությանը: Քաղկոմի քարտուղարները, չնայած աներևակայելի զբաղվածությանը, ժամանակ են գտնում, որպեսզի ելույթ ունենան բնակիչների առջև՝ տոկունության, համբերատարության կոչող հոդվածներով:

— Իսկ ինչպե՞ս այլ կերպ,— ասում է ինձ քաղկոմի երկրորդ քարտուղար Ռ. Գալստյանը,— առանց թերթի կուսակցական կոմիտեն ինչպես առանց ձեռքի:

ԹՎՈՒՄ Է, ԲԵՐՎԱԾ ՓԱՍՏԵՐԸ, ՊԱՏՄԱԾ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ, մեկնաբանության կարիք չեն զգում և կարելի է վերջակետ դնել: Սակայն, մտածում եմ, այդ անելը շուտ է. Դրանք, այդ պատմությունն ու փաստերը, որոշակի խորհրդածությունների առիթ են տալիս կուսակցական աշխատանքի ոճի և մեթոդների մասին, հնարավորություն են ընձեռում անել մի քանի ընդհանրացումներ:

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԱՌԱՋԻՆ— Մաշտոցի կուսշրջկոմի մասին: Հիշու՞մ եք, ինչպես դժբախտության ժամին այն դարձավ հարազատ տուն և՛ կոմունիստների, և՛ անկուսակցականների համար, ինչպես ընտրովի մարմնի բոլոր անդամները և նրա ապարատը գործեցին համատեղ՝ իրենց օրինակով վարակելով շրջանի բոլոր բնակիչներին:

Սակայն դա արտակարգ պայմաններում: Իսկ սովորականի դեպքու՞մ: Չէ՞ որ գաղտնիք չէ, որ մի քանի շրջկոմներ ոչ միայն կոմունիստները, նույնիսկ ընտրովի մարմնի անդամները մտնում են երկչոտությամբ և զգուշավորությամբ, ասես ոչ թե նրանք են այստեղ տերը, այլ ապարատի աշխատողները:

Հետևությունը այսպիսին է՝ հարկավոր է վճռականորեն ակտիվ գործունեության ներգրավել կուսակցական կոմիտեի անդամներին, որպեսզի նրանք աշխատեն մըշտական հիմքի վրա, տնտեսական և սոցիալական զարգացման կարևոր ուղղությունների գծով ստեղծված հանձնաժողովների կազմում: Դա համամիութենական կուսկոնֆերանսի պահանջն է, սակայն առայժմ կատարվում է դանդաղ:

Ինձ վիճակվել է ծանոթանալ Մաշտոցի կուսշրջկոմի բյուրոյի հաշվետվությանը վերակառուցման ղեկավարման աշխատանքի մասին: Հաշվետվությունը ինքնաքննադատական է: Նրանում, մասնավորապես, նշվում է, որ ոչ քիչ ընդունված որոշումներ մնացել են թղթի վրա, շատ ջանք ու եռանդ են ծախսվում այդ որոշումների նախապատրաստման, տարատեսակ տվյալների ու տեղեկանքների հավաքման վրա: Եվ այստեղ տեղին է հիշեցնել, ինչպես երկրաշարժի օրը շրջկոմի բյուրոյի որոշումից երեք ժամ հետո կազմավորվեց 17 ավտոբուսից շարասյուն, և ուղարկվեց Սպիտակ: Տեղին է հիշեցնել նաև մեկ ուրիշ բան. շրջկոմի ողջ «գրասենյակը» մեկ շաբաթ տեղավորվեց առաջին քարտուղարի գրանցման գրքույկում: Նշանակում է՝ կարելի է ավելի վճռականորեն վերացնել թղթարարությունը, ավելի նպատակասլաց զբաղվել կենդանի աշխատանքով:

Ժողովների և պլենումների ամբիոններից հաճախ է կրկնվում համամիութենական կուսկոնֆերանսի դրույթը կուսակցության մեջ ընդունելու ժամանակ չարաբաստիկ կարգադրագրից ձերբազատվելու անհրաժեշտության, ինչպես նաև այն մասին, որ մարդու քաղաքական հասունության գլխավոր չափանիշը համարվում է նրա վերաբերմունքը վերակառուցմանը, հանձնարարված գործին: Բայց գաղտնիք չէ, որ կուսակցության մեջ ընդունելության արհեստական կարգավորումը սպառել է իրեն, իսկ կուսակցության թեկնածուներին ցույց չի տրվում անհրաժեշտ ուշադրություն: Ինչպես ասվում է կուսակցության Երևանի քաղկոմի փաստաթղթերից մեկում, շատ շրջանային կոմիտեներ ու սկզբնական կազմակերպություններ դեռևս չեն հասել նրան, որպեսզի յուրաքանչյուր երիտասարդ կոմունիստ թեկնածուական ստաժն անցնելիս մշտապես գտնվի ուշադրության տեսադաշտում, զգա կազմակերպության ազդեցությունը, գիտակցի իր անձնական պատասխանատվությունը:



Այդ առնչությամբ, կհիշեցնեմ մի դեպք, երբ տարերային աղետից մեկ շաբաթ անց, Մաշտոցի շրջկոմում կուսշարքերի ընդունելություն էր: Ընդունում էին բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների: Հավատացեք, նրանց տոկունային հարաբերակցությունը չվերհանեցին: Առաջին հերթին հաշվի առան այն, թե կուսակցության անդամության թեկնածուն ինչպես է իրեն դրսևորել դժվարին փորձության ժամին: Հաշվի առան ոչ միայն սկզբնական կուսկազմակերպության, այլև կոլեկտիվի կարծիքը: Պարզվում է, այդպե՞ս էլ կարելի է:

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԵՐԿՐՈՐԴ: Դրանում քիչ ուշադրություն չի նվիրված երկու քարտուղարներին՝ Ն. Գրիգորյանին, որը գլխավորում է կուսակցության Կիրովականի քաղկոմը և Ա. Մադոյանին, որը ղեկավարում է ճշգրիտ հաստոցների գործարանի կուսկոմիտեն: Երկուսն էլ, ուզում եմ հիշեցնել, ընտրվել են մի քանի թեկնածուների թվից: Դրա վրա կուզեի հատուկ ուշադրություն նվիրել:

Հայտնի է, որ համամիութենական կուսկոնֆերանսը առաջնահերթ կարևորության հարց համարեց կուսակցության մեջ ընտրական պրոցեսի դեմոկրատացումը, որը ապահովում է առավել հեղինակավոր, ստեղծագործաբար մտածող մարդկանց, վերակառուցման իսկական ջատագովների ընտրությունը: Հայտնի է նաև, թե այդ պրոցեսում ինչպիսի նշանակություն է տրվում մրցակցությանը, այլընտրանքի թեկնածուներից կուսակցական ղեկավարի ընտրությանը:

Բայց եկեք նայենք ճշմարտության աչքին. անցած հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում ամենուրե՞ք է, արդյոք, պահպանվել այդ սկզբունքը: Ամենևին ոչ ամեն տեղ: Իսկ հաճախ եղել է սոսկ մրցակցության պատրանք, երբ առաջարկվել է մի քանի հավակնորդ, բայց քվեարկության պահին թողնվել է մեկը՝ «վերևից» թելադրվածը, իսկ մնացածները համերաշխորեն ինքնաբացարկում են հայտնել: Սակայն կյանքի հետ խորամանկել չի կարելի: Այն վերջիվերջո ամեն ինչ դնում է իր տեղում: Հանրապետությունում ողբերգական իրադարձությունները ցույց տվեցին, որ առավել տոկուն, վճռական, պատասխանատվությունը համարձակորեն իրենց վրա վերցնողը եղան այն կուսակցական կադրերը, որոնք ղեկավարներ էին առաջադրվել իսկական դեմոկրատական ուղիով: Նրանք զգում էին կոմունիստների մեծամասնության պաշտպանությունը և վստահությունը իրենց նկատմամբ, և դա նրանց վճռականություն էր ներշնչում աշխատանքում:

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԵՐՐՈՐԴ: Այն շոշափում է իր տպագիր օրգանի նկատմամբ կուսակցական կոմիտեի վերաբերմունքի պրոբլեմը: Իսկ կա՞ այդպիսի պրոբլեմ: Կա: Այդ նույն Լենինականում, որտեղ քաղկոմի վճռական միջոցառումների շնորհիվ կարճ ժամկետում վերածնվեց թերթը, ժուռնալիստները հայացքը թեքեցին մի կողմ, երբ հարցրի նրանց թե մի՞շտ են նրանք զգացել այդպիսի օգնություն և աջակցություն:

Միշտ է նշված՝ թերթի դեմքը կուսակցական կոմիտեի դեմքն է, նրա աշխատանքի ոճի արտացոլումը: Առանձին շրջանային թերթերի հետ մնալը դինամիկ զարգացող կենսական պրոցեսներից, նրանց էջերում քննադատության սուր բանավեճերի բացակայությունը, անարտահայտիչ դեմքը՝ այդ ամենը կամ նրանց նկատմամբ կուսակցական մարմինների անտարբերություն է, կամ մանրախնդիր խնամակալություն, ամեն ինչ «բռունցքի մեջ պահելու» ձգտում: Ե՛վ այն, և՛ մյուսը մեր օրերում անընդունելի են:

Ոչ միայն դժվարին օրերին, այլև միշտ հարկ է հիշել լենինյան հայտնի բանաձևը՝ թերթը ոչ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ է, կոլեկտիվ ագիտատոր, այլև կոլեկտիվ կազմակերպիչ:

Ավարտելով այս նյութը՝ կամենում եմ անել ընդհանրացնող հետևություն: Մեծ աղետը ոչ միայն վիրավորում է սիրտը, այլև կոչում է գործողության, ստիպում է դասեր քաղել ապագայի համար: Այդ թվում և կուսակցական աշխատանքում: Շատ կուսկազմակերպություններին, կուսակցության շրջկոմներին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի տված բարձր գնահատականը պարտավորեցնում է նրանց՝ ավելի վճռականորեն վերակառուցել իրենց աշխատանքը, դեմոկրատիզմի, հրապարակայնության ոգով, որոնել ու գտնել նոր մոտեցումներ երկրաշարժի հետևանքների վերացման բարդ խնդիրների լուծման համար:

# ԿՈՒԲԱ. ՊԱՅՔԱՐԻ ԵՎ ԱՐԱՐՄԱՆ ՏԱՐԻՆԵՐ

**Մ. ՄԱՆԱՍՈՎ**
**Ռ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ**

1989 ՀՈՒՆՎԱՐԻ 1-ԻՆ լրանում է 30 տարին Կուբայական հեղափոխության, որը հանգեցրեց Արևմտյան կիսագնդում առաջին սոցիալիստական պետության ստեղծմանը: Դրանով պսակվեց Լուբայական հեղափոխականների մի քանի սերունդների երկարատև ու դժվարին ուղին, որն սկիզբ է առել անցյալ դարի վերջերին, երբ երկրի հայրենասերներն իրենց գաղափարական առաջնորդ Խոսե Մարտիի ղեկավարությամբ հանդես եկան ընդդեմ իսպանական գաղութարարների:

Կուբայի ժողովրդի հեղափոխական պայքարի կարևորագույն ուղենիշներն են՝ Մոնկադա զորանոցի գրոհը 1953 թ. հուլիսի 26-ին, լեգենդար «Գրանմա» նավի արշավը 1956 թ. դեկտեմբերին, դիկտատուրայի զորքերի դեմ ականավոր հեղափոխական Ֆիդել Կաստրոյի ղեկավարած Ապստամբական բանակի պարտիզանական պայքարը:

Կուբայական հեղափոխությունը մեծ Հոկտեմբերի կողմից սկսած աշխարհի հեղափոխական վերակառուցման շարունակությունն է: Այս մասին բազմիցս ասել է Ֆ. Կաստրոն, շեշտելով, որ «Կուբայական հեղափոխությունը հնարավոր եղավ միայն այն պատճառով, որ շատ ավելի վաղ իրականացել էր 1917 թ. ռուսական հեղափոխությունը: Առանց Սովետական Միության գոյության անհնարին կլիներ սոցիալիստական հեղափոխությունը Կուբայում»:

Կուբայական հեղափոխությունը, լինելով խորապես ազգային, միևնույն ժամանակ հանդիսացավ արդի դարաշրջանի ընդհանուր հեղափոխական պրոցեսի անքակտելի բաղադրամասը: Կուբայի օրինակը հսկայական ձգողական ուժ ունի հանուն անկախության և սոցիալական առաջընթացի իրենց իրավունքը պաշտպանող բոլոր երկրների ու ժողովուրդների համար:

Ժողովրդական իշխանության տարիներին Ազատության կղզու ձեռք բերած հաջողությունները համոզիչ վկայություններն են սոցիալիստական կարգի առավելությունների: Կուբայի սոցիալ-տնտեսական զարգացումը դժվարանում էր մի շարք օբյեկտիվ գործոնների պատճառով: Երկիրը կապիտալիզմից իբրև ժառանգություն ստացել էր հետամնաց, ձևախեղված մի տնտեսություն: Մոնոկուլտուրան, լատիֆունդիզմը, ջերմաէներգետիկ պաշարների բացակայությունը, սահմանափակ ներքին շուկան պայմանավորել էին Կուբայում բաց էկոնոմիկայի ձևավորումը: Դրա զարգացման գործում կարևոր դեր էին խաղում արտաքին տնտեսական կապերը: Արտաքին շուկայից, հատկապես շաքարահումքի՝ երկրի արտածման հիմնական արտադրանքի գնի տատանումներից նման կախվածությունը սահմանափակում էր և այժմ էլ սահմանափակում է ազատ փոխարկելի վալյուտայի մուտքը և Կուբայի էկոնոմիկայի համար անհրաժեշտ մի շարք հումքի տեսակների, ինչպես նաև պահեստամասերի ու սննդամթերքի ներմուծման հնարավորությունները: Ընդ որում վերջին տարիներին աճում են կապիտալիստական շուկայից ներմուծվող ապրանքների գները: Միաժամանակ բարձրանում են արևմտյան բանկերից Կուբայի ստացած վարկերի տոկոսները:

Երկիրն իր զարգացման գործում բախվեց անբարեհաջող կլիմայական պայմաններ՝ փոթորիկների, ջրհեղեղների, երաշտի հետ կապված զգալի դժվարությունների հետ:

*ՄԱՆԱՍՈՎ ՄԱՌԼԵՆ ԱՐՇԱԿԻ— Պատմական գիտությունների թեկնածու, ՍՍՀՄ ԳԱ Համաշխարհային սոցիալիստական սիստեմի էկոնոմիկայի ինստիտուտի սեկտորի վարիչ:*

*ՄԱԹԵՎՈՍՅԱՆ ՌԱՖԱՅԵԼ ԽԱՉԱՏՈՒՐԻ— տնտեսագիտության թեկնածու, ԵրՊՀ-ի միջազգային կապերի գծով պրոռեկտոր:*



Սակայն, չնայած այդ բացասական գործոններին, Կուբան կարողացավ հասնել հիրավի հսկայական արդյունքների՝ քաղաքական, տնտեսական, սոցիալական և հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Նոր հասարակարգի կառուցման համար մղվող տասնյոթամյա պայքարի արդյունքներն ամփոփեց Կուբայի կոմունիստական կուսակցության I համագումարը, որը տեղի ունեցավ 1975 թ. դեկտեմբերին: Հետհամագումարյան ժամանակաշրջանը բնութագրվում է երկրի սոցիալ-տնտեսական կառուցվածքի վերափոխումների բարձր տեմպերով, սոցիալիզմի նյութատեխնիկական հիմքի հետագա ամրապնդմամբ, սոցիալիստական պետականության, կազմավորման պրոցեսի ավարտմամբ, կոմկուսի՝ որպես նոր հասարակության առաջատար ուժի, դերի մեծացմամբ, միջազգային ասպարեզում Կուբայի ազդեցության աճով:

1976 թ. համաժողովրդական հանրաքվեի միջոցով ուժի մեջ մտավ նոր սահմանադրությունը, որն ամրագրեց Կուբայական հեղափոխության պատմական նվաճումները և նոր ուղենիշներ կանխագծեց սոցիալիզմի հետագա զարգացման ասպարեզում:

Հեղափոխությանը հաջորդած տարիներին ստեղծվել են արդյունաբերության նոր ճյուղեր. քիմիական, շինանյութերի, գյուղատնտեսական մեքենաշինության, ցելյուլոզի-թղթի, սարքաշինության, էլեկտրոնիկայի և այլն: Արդիականացվել և ընդլայնվել են շաքարի տասնյակ գործարաններ, սննդի և թեթև արդյունաբերության հարյուրավոր ձեռնարկություններ: Նոր հզորությունների ստեղծումը հնարավորություն ընձեռեց շեշտակիորեն ավելացնելու նավթի հանույթն ու վերամշակումը, էլեկտրաէներգիայի, ցեմենտի, պարարտանյութերի, նիկել-կոբալտի արտադրությունը: Առևտրական նավատորմի տոննաժը այդ նույն ժամանակամիջոցում մեծացավ գրեթե քսան անգամ:

Հաջողությամբ է զարգանում Կուբայի էկոնոմիկայի առաջատար ճյուղը՝ շաքարի արդյունաբերությունը: Հների արդիականացման և նոր գործարանների կառուցման շնորհիվ ճյուղը հասավ բարձր սահմանագծերի. տարեկան այն արտադրում է 7,2 մլն տոննա շաքար: Այդ հաջողությանը մեծապես նպաստեցին ագրոարդյունաբերական կոմպլեքսի ստեղծումը, շաքարեղեգի հավաքման մեքենայացման բարձր մակարդակը:

Զգալի վերափոխումներ են տեղի ունեցել գյուղատնտեսությունում: Էապես ամրապնդվել է դրա նյութատեխնիկական հիմքը: Կառուցվել են շաքարեղեգնահավաք կոմբայններ, գյուղատնտեսական մեքենաներ, հանքային պարարտանյութեր թողարկող գործարաններ: Զգալիորեն ավելացել է բանջարեղենի, բրնձի, ձվի, ցիտրուսների և այլ մթերքների արտադրանքը: Կատարելագործվում է ճյուղի տնտեսական մեխանիզմը, ստեղծվում են մշտական կապալային բրիգադներ: Հաջողությամբ են աշխատում գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվները: Դրանց թիվն այսօր հասնում է շուրջ 1400-ի, նրանք մշակում են պետական սեկտորի հողերի 62 տոկոսը: Կատարելագործվում է նաև տնտեսության կառավարման ու պլանավորման համակարգը, բարելավվում է ձեռնարկությունների նյութատեխնիկական ապահովումը, մեծանում նրանցից տնտհաշվարկի անցնողների թիվը, ընդլայնվում նրանց ինքնուրույնությունը:

Կուբայի ժողովուրդը հպարտանում է սոցիալական ոլորտում ձեռք բերած ականառու հաջողություններով: Մինչ հեղափոխությունը երկրում կար 700 հազար գործազուրկ: Աշխատուժի 20 տոկոսը չուներ մշտական աշխատանք: Հեղափոխությունը վերջ դրեց գործազրկությանը՝ որպես սոցիալական երևույթի, վերացրեց շահագործումը, ազգային խտրականությունը, կանանց իրավազուրկ վիճակը, որոնց 36 տոկոսն այժմ զբաղված է արտադրությունում: Մինչ հեղափոխությունը աշխատավորների կեսից ավելին զրկված էր սոցիալական ապահովությունից: Այժմ սոցիալական կարիքների համար կատարվող ծախսերը 30 անգամ գերազանցում են 1958 թ. մակարդակը:

Տպավորիչ են հաջողությունները առողջապահության բնագավառում: Արմատախիլ են արվել այնպիսի հիվանդություններ, ինչպիսիք են դիֆտերիան, պոլիոմիելիտը, տենդը, մանկական կաթվածը և այլն, որոնք հազարավոր կյանքեր էին խլում, բժիշկների թիվը 3 հազարից հասել է 27 հազարի: Ներկայումս յուրաքանչյուր 400 բնակչին ընկնում է մեկ բժիշկ (իսկ 1959 թ. 2300 բնակչին էր ընկնում մեկ բժիշկ): Կառուցվել են նոր հիվանդանոցներ, պոլիկլինիկաներ, բուժօգնության կետեր: Հավա-

նայում բացված է Լատինական Ամերիկայում խոշորագույն կլինիկա-վիրաբուժական կենտրոնը, որտեղ կատարվում են բարդ վիրահատություններ:

Այս ամենի շնորհիվ հաջողությամբ կատարվում է «2000 թվականին առողջություն բոլորի համար» ծրագիրը: Կրճատվում է մահացությունը, հատկապես՝ մանկականը (այն 1000 կենդանի ծնված երեխայի հաշվով նվազել է մինչև 13,1-ի): Այս ցուցանիշով Կուբան առաջնակարգ տեղերից մեկն է գրավում աշխարհում: Կյանքի միջին տևողությունն այսօր կազմում է 73 տարի, իսկ մինչ հեղափոխությունը՝ 60 տարի էր: Կուբան այսօր ինքն է առողջապահության բնագավառում օգնում աֆրիկյան և ասիական 27 երկրների, որտեղ աշխատում են 2,5 հազարից ավելի կուբացի բժիշկներ և քույրեր:

Ակնառու են նվաճումները նաև կրթության ասպարեզում: Ժողովրդական իշխանության տարիներին կառուցվել է 1800 ուսումնական հաստատություն, այդ թվում՝ 560 գյուղական հանրակրթական դպրոց-ինտերնատներ, որոնցում 300 հազար սովորողներ ուսումը զուգակցում են հանրօգուտ աշխատանքի հետ: Հավանայում գործում է ճշգրիտ գիտությունների 20 դպրոց, որտեղ հիմնականում ուսումնասիրվում են մաթեմատիկա, ֆիզիկա, քիմիա, կենսաբանություն, էլեկտրոնիկա:

Լայնորեն զարգանում է բարձրագույն կրթությունը: Ներկայումս 46 բուհերում սովորում է 280 հազար ուսանող: Բացի այդ, 10 հազար կուբացիներ կրթություն են ստանում Սովետական Միությունում և մի քանի հազարը՝ ուրիշ երկրներում: Հենվելով կրթության ասպարեզում իր ունեցած հաջողությունների վրա, Ազատության կղզին մեծ օգնություն է ցույց տալիս մյուս երկրներին: Կուբայում սովորում են «երրորդ աշխարհի» 80 երկրների 20 հազար պատանիներ ու աղջիկներ:

Հետևողականորեն բարձրանում է ժողովրդի կենսամակարդակը, աճում են բանվորների ու ծառայողների աշխատավարձը, կոոպերատիվների անդամների և մենատնտեսների եկամուտները:

Շատ բան է արվում բնակարանային պրոբլեմի լուծման համար: 1984 թ. օրենք է ընդունվել պետական ամբողջ բնակֆոնդը բնակարանների վարձակալներին հանձնելու մասին՝ արժեքը 15—20 տարում հատուցելու պայմանով:

Վիթխարի քայլեր են կատարվել գիտության և տեխնիկայի, կուլտուրայի և արվեստի բնագավառներում: 1962 թ. Կուբայում հիմնվեց գիտությունների ակադեմիա: 160 գիտահետազոտական ինստիտուտներում և գիտական կենտրոններում այժմ աշխատում է 40 հազար մարդ, որից 3 հազարը գիտությունների թեկնածուներ և դոկտորներ են:

Ընդլայնվում է կուլտուր-լուսավորական հիմնարկությունների ցանցը: Զարգանում է գեղարվեստական ինքնագործունեությունը, մեծ ուշադրություն դարձվում գեղագիտական դաստիարակությանը: Հաջողություններ են ձեռք բերված կինեմատոգրաֆիայի ասպարեզում: Աճել է բնակչության մեկ շնչին ընկնող գրքերի հրատարակման ծավալը: Զարգանում է ֆիզիկական կուլտուրայի և սպորտի մասսայականությունը: Բազմազան են դարձել տուրիզմի կազմակերպման ձևերը:

Երկրի գիտության և արվեստի աճող հեղինակության վկայությունն է վերջին տարիներին այստեղ միջազգային գիտական համաժողովների, փեստիվալների, տարբեր ցուցահանդեսների անցկացումը:

Իրական քայլեր են կատարվել սոցիալիստական դեմոկրատիայի ամրապնդման և կատարելագործման ասպարեզում: Ստեղծված են ժողովրդական իշխանության ընտրովի մարմիններ մունիցիպիաներում և պրովինցիաներում, ինչպես նաև երկրի բարձրագույն օրենսդիր մարմինը՝ միապալատ Ազգային ասամբլեան: Տեղական մարմինները կազմվում են շնորհիվ ուղղակի և գաղտնի ընտրությունների, որոնք անցկացվում են երկուսուկես տարին մեկ անգամ: Ընտրական ցենզ սահմանված է 16 տարեկանից, իսկ ժողովրդական իշխանության մարմիններում ընտրվելու համար՝ 18 տարեկանից: Մունիցիպալային ասամբլեաների պատվիրակների (Կուբայում ժողովրդական իշխանության տեղական մարմիններում ընտրված անձինք կոչվում են պատվիրակներ, իսկ Ազգային ասամբլեայում ընտրվածները՝ դեպուտատներ) թեկնածուներն առաջադրվում են ընտրողների ժողովներում ըստ բնակության վայրի. մեկ թափուր տեղի համար՝ երկուսից մինչև ութ թեկնածու: Ընտրված է համարվում նա, ով ստանում է ձայների 50 տոկոսից ավելին: Իսկ եթե թեկնածուներից ոչ մեկն էլ չի ստանում անհրաժեշտ քանակությամբ ձայներ, ապա մեկ շաբաթ հետո անցկացվում է քվեարկության երկրորդ տուրը՝ միայն այն երկու թեկնածուների մասնակցությամբ, ովքեր առաջին տուրում ստացել էին ամենաշատ ձայները:

Մունիցիպալային ասամբլեան ընտրություններից հետո կայացած իր առաջին



նստաշրջանում գաղտնի քվեարկությամբ ընտրում է գործադիր կոմիտե, իսկ բաց քվեարկությամբ՝ մշտական հանձնաժողովներ: Վերջիններս ստեղծվում են ըստ գործունեության տարբեր ոլորտների՝ գյուղատնտեսություն, արդյունաբերություն, առևտուր, առողջապահություն, կրթություն, մշակույթ, սպորտ, կոմունալ տնտեսություն և այլն:

Գործնական քայլեր են կատարվել սոցիալիստական դեմոկրատիայի ամրապնդման ու կատարելագործման ասպարեզում: Ստեղծվել են ժողովրդական իշխանության ընտրովի մարմիններ:

Հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման հաջողությունները սերտորեն կապված են Կուբայի կոմունիստական կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերի աճման հետ: Առավել սերտանում են կուսակցության կապերը ժողովրդի հետ. նրա ղեկավարությամբ ակտիվ գործունեություն են ծավալում երիտասարդ կոմունիստների միությունը, աշխատավորների արհմիութենական կենտրոնը, հեղափոխության պաշտպանության կոմիտեները, կանանց ֆեդերացիան և հասարակական մյուս կազմակերպությունները: Կուսակցության և ժողովրդի կյանքում առանձնահատուկ իրադարձություն էր Կուբայի կոմկուսի III համագումարը (1986 թ.), որն ամփոփեց անցած ուղու արդյունքները և սահմանեց երկրի սոցիալ-տնտեսական հետագա զարգացման կուրսը: Համագումարն ընդունեց կուսակցության ծրագիրը, որը դարձել է սոցիալիզմի ուղիով երկրի հաղթարշավի հուսալի կողմնորոշիչ:

Դրա հետ մեկտեղ Կուբայի կոմունիստների համաժողովը ուշադրությունը կենտրոնացրեց չլուծված պրոբլեմների վրա, բացահայտեց սոցիալիստական շինարարության պրոցեսում տեղ գտած բացասական միտումները, թերություններն ու բացթողումները: Մասնավորապես նշվեց, որ էկոնոմիկայի կառավարման ու պլանավորման՝ 70-ական թթ. ներդրված համակարգը չտվեց ցանկալի հատույց: Դա բացատրվում է պլանավորման և կապիտալ ներդրումների յուրացման նկատմամբ գերատեսչական մոտեցմամբ, միջոցների փոշիացմամբ, որը հանգեցրել է կառուցվող օբյեկտների մեծ քանակությանը և ավարտվածների փոքր թվին:

Թույլ էին իրականացվում խթանումն ու վերահսկողությունը թողարկվող արտադրանքի որակի նկատմամբ: Խիստ ուռճացած էր նյութատեխնիկական մատակարարման համակարգը: Նրանում մեծ քանակությամբ միջնորդների առկայությունը հանգեցրել էր արտադրական և սպասարկող ձեռնարկությունների կողմից մատակարարվող ապրանքների գների բարձրացմանը: Լայնորեն տարածված են բավականին խոշոր չարդարացված հավելումները հիմնական աշխատավարձին (պարգևավճարներ, արտաժամյա վճարումներ և այլն), որոնց հետևանքով խախտվել է աշխատանքի արդյունքների հետ աշխատավարձի փոխադարձ կապի սկզբունքը:

Էկոնոմիկայի կառավարման և պլանավորման համակարգը ճնշվում էր բյուրոկրատիզմից, գրասենյակայնությունից և վարչական ապարատի չհիմնավորված աճից: Լուրջ թերություններ էին հայտնվել նաև կադրային քաղաքականության մեջ: Օրինակ, մի շարք դեպքերում կադրեր ընտրելիս հաշվի էին առնվել ոչ թե գործարար հատկանիշներ, այլ անձնական կապերը: Պատշաճ պայքար չի մղվել անաշխատ եկամուտների դեմ: Այսպես, աճել է կողմնակի վաստակ ունեցող մարդկանց թիվը: Ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունները, որոնք կոչված էին բանվորական ճաշարանները բանջարեղենով ու մի շարք մթերքներով ինքնապահովելու համար, իրենց արտադրանքի մի մասը վաճառում էին բարձր գներով: Ձեռնարկություններում անհրաժեշտ հսկողության և հաշվառման բացակայությունը հանգեցրել էր հումքի ու արտադրության միջոցների հափշտակումների:

Համագումարը այս և մյուս թերությունները հաղթահարելու կոնկրետ ուղիներ է ծրագրել: Այսպես, համագումարի որոշմանը համապատասխան հանրապետության պետխորհուրդը մի շարք դեկրետներ է ընդունել, որոնցից է «Էկոնոմիկայի կառավարման համակարգի ազգային հանձնաժողովի մասին» դեկրետը: Այս նոր վարչական մարմինը կոչված է լուծելու տնտեսական մեխանիզմի կատարելագործման, էկոնոմիկայի կառավարման գործում մինիստրությունների ու գերատեսչությունների գործողությունների միասնության ապահովման, ժողովրդական տնտեսության ընդհանուր, ճյուղային և տերիտորիալ կառուցվածքի բարելավման խնդիրները, նպաստելու էկոնոմիկայի կառավարմանը աշխատավորների մասնակցության նոր ձևեր որոնելու, սոցիալիստական երկրների փորձը ուսումնասիրելու, և այն հնարավորին չափ Կուբայում կիրառելու հանձնարարականներ պատրաստելու, էկոնոմիկայի կառավարման բնագավառում երկրի տարբեր ուսումնական ու գիտական կենտրոնների կողմից իրականացվող հետազոտական գործունեությունը կոորդինացնելու և այլն:

Ներկայումս Կուբայի կոմկուսը, որի շարքերում հաշվվում են 562 հազարից ավելի կոմունիստներ, հիմնական ջանքերն ուղղել է կուսակցության III համագումարի առաջադրած խնդիրների հաջող լուծմանը:

Հեղափոխության հաղթանակը սահմանել է Կուբայի նոր սուվերեն արտաքին քաղաքական կուրսը և արմատապես փոխել է նրա դերը արդի միջազգային հարաբերություններում: Ազատության կղզին հետևողականորեն պայքարում է սոցիալիստական հասարակության կառուցման համար համաշխարհային ասպարեզում բարենպաստ պայմաններ ստեղծելու համար, համընդհանուր խաղաղության ապահովման համար: Կուբայի արտաքին քաղաքականության գլխավոր խնդիրներից մեկը հեղափոխության նվաճումների ամրապնդմանը, հայրենիքի պաշտպանությանը և երկրի միջազգային դիրքերի հզորացմանը նպաստելն է:

Այսօր Կուբան դիվանագիտական հարաբերություններ է պահպանում աշխարհի 122 պետությունների հետ (մինչ հեղափոխությունը՝ 51 երկրների հետ): Նրա արտաքին քաղաքականության կարևորագույն ուղղությունը սոցիալիստական երկրների և ամենից առաջ Սովետական Միության հետ համակողմանի կապերի զարգացումն է: Կուբան լիովին հավանություն է տալիս մինչև 2000 թվականը զինաթափման և միջուկային զենքի վերացման գործողությունների սովետական ծրագրին և մոլորակի վրա խաղաղությունն ու անվտանգությունն ապահովելուն ուղղված ՍՍՀՄ մյուս քայլերին:

Կուբան մեծ ուշադրություն է դարձնում Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրների հետ միջպետական հարաբերությունների հաստատմանն ու զարգացմանը: Արտաքին քաղաքականության մեջ կարևոր տեղ է հատկացվում չմիանալու շարժմանը, որի նախագահն էր Կուբան 1979 թ. սեպտեմբերից մինչև 1983 թ. մարտը: Հանրապետությունը հանդես է եկել զարգացող երկրների արտաքին պարտքի պրոբլեմի վերաբերյալ հայտնի առաջարկությամբ. զարգացած վարկատու պետությունների կառավարությունները պետք է ստանձնեն իրենց երկրների բանկերի կողմից «երրորդ աշխարհին» տրված պարտքը, իսկ ռազմական ծախսերի 12 տոկոսը տրամադրվելու է պարտքի մարմանը: Կուբան անդուլ պայքարում է նաև միջազգային նոր տնտեսական կարգի հաստատման համար:

Հաջողությամբ է զարգանում առևտրատնտեսական համագործակցությունը մի շարք կապիտալիստական երկրների հետ (Իսպանիա, Իտալիա, Ֆրանսիա, Ճապոնիա, Շվեդիա և այլն), որն էլ նպաստում է Կուբայի միջազգային հեղինակության ավելի ամրապնդմանը:

Առանձնապես հարկ է նշել ԱՄՆ-ի հետ հարաբերությունների մասին, որը չի դադարեցնում Ազատության կղզու դեմ թշնամական գործողություններ ձեռնարկել՝ կուբայական հեղափոխության նվաճումները խափանելու, նրա օրինակի ձգողական ուժը չեզոքացնելու նպատակով: Բավական է հիշել վարձկանների ձախողված զինված ներխուժումը Պլայա-Հիրոն, որը նախապատրաստել էր ԱՄՆ-ը: Վերջինս շարունակում է տնտեսական շրջափակումը, որ նա Կուբայի վզին է փաթաթել տակավին 1960 թ. հոկտեմբերին: Ռազմական շանտաժի և պրովոկացիայի նպատակով ԱՄՆ-ը օգտագործում է Կուբայի սուվերեն տերիտորիայում՝ Գուանտանամոյում գտնվող ռազմածովային բազան: Ուժեղանում են նաև գաղափարախոսական դիվերսիաները: Այդ սպառնալիքների առջև Կուբայի Հանրապետությունը հարկադրված է ամրապնդել երկրի պաշտպանունակությունը, որը խլում է նյութական, ֆինանսական և մարդկային մեծ ռեսուրսներ: Կուբայի հեղափոխությունը խափանելու ամերիկյան իմպերիալիզմի հույսերը ի չիք են դառնում, քանի որ նրանց դիմակայում են ինքնազսպումը, տոկունությունը և արիությունը, սոցիալիստական ընկերակցության պաշտպանությունը:

Կուբայի սոցիալ-տնտեսական զարգացումը պայմանավորված է սոցիալիզմի երկրների և ամենից առաջ Սովետական Միության հետ երկրի առևտրական, տնտեսական, գիտատեխնիկական, մշակութային կապերի հետագա ընդլայնումով: Այդ համագործակցությունը ստացել է բազմակողմանի և կոմպլեքսային բնույթ: Այսպես, ՍՍՀՄ-ի աջակցությամբ կառուցվել և վերակառուցվել են 360 ժողովրդատնտեսական օբյեկտներ, կառուցման պրոցեսում են 130-ը: Դրանցից են. երկրում առաջին ատոմային էլեկտրակայանը, նիկել-կոբալտի կոնցենտրատի արտադրության խոշոր ձեռնարկությունը, նավթավերամշակման գործարանը Սիենֆուեգոս քաղաքում, գերլցանավերի համար նավահանգիստը Մատանսասում, նավթամուղեր և այլ օբյեկտներ:

Հաջողությամբ է զարգանում արտաքին առևտուրը մեր երկրների միջև: Եթե 1960 թ. նրա ծավալը կազմել է սոսկ 160 մլն ռուբլի, ապա 1987 թ. հասավ 8,2 մլրդ.



ռուբլու: Սովետական Միություն են առաքվում զգալի քանակությամբ շաքարի հումք, ցիտրուսներ, նիկել-կոբալտի կոնցենտրատ և այլ արտադրանք:

Ամրապնդվում է համագործակցությունը կրթության և առողջապահության, գիտության ու մշակույթի, սպորտի մարզերում: Հոգևոր փոխհարստացմանը նպաստում են ՍՍՀՄ-ի և Կուբայի գրականության ու արվեստի գործիչների միջև ամրապնդվող կապերը: Մեր համագործակցության հիանալի խորհրդանիշ է 1980 թվականին սովետա-կուբայական տիեզերական անձնակազմի թռիչքը: Արտաքին տնտեսական կապերի հետագա ընդլայնմանը նպաստում է մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանը ՍՍՀՄ-ի և Կուբայի հանրապետության միջև գիտատեխնիկական համագործակցության զարգացման երկարաժամկետ ծրագիրը:

Ներկայումս մեծ նշանակություն է տրվում մեր երկրների արդյունաբերական միավորումների միջև ուղղակի կապերի հաստատմանը և խառը ձեռնարկությունների ստեղծմանը, մասնավորապես, շաքարեղեգի թափոններից (անկտին, լիգին, ֆուրֆուրոլ) արտադրանքի ստացմանը: Խաբարովսկի երկրամասում կազմակերպվել է Կուբայի ժողտնտեսության կարիքների համար բնափայտի կոմպլեքսային վերամշակման առաջին համատեղ ձեռնարկությունը:

Կուբան ավելի ակտիվորեն է մասնակցում ՏՓԽ-ի շրջանակներում աշխատանքի միջազգային բաժանմանը, որի անդամն է 1972 թվականից: Հաջողությամբ են կատարվում շաքարի հումքի, ցիտրուսների, նիկել-կոբալտի արտադրանքի արտադրության ընդլայնման գծով համագործակցության երկարաժամկետ նպատակային ծրագրերը: Դա համապատասխանում է ինչպես Կուբայի, այնպես էլ ՏՓԽ-ի մյուս անդամ երկրների ազգային շահերին:

Եղբայրական երկրներից կոոպերացված մատակարարումների հիման վրա Կուբայում ընդլայնվում է մինի կոմպյուտերների, տարբեր մակնիշի դիզելների արտադրությունը: Հաջողությամբ կենսագործվում է ՏՓԽ-ի անդամ երկրների համագործակցության գլխավոր պայմանագրից բխող մինչև 1990 թվականը Կուբայի գիտության ու տեխնիկայի արագ զարգացման պլանը:

Համագործակցությունը ՍՍՀՄ-ի ու ՏՓԽ-ի մյուս երկրների հետ օգնում է Կուբային ոչ միայն հաղթահարելու տնտեսական դժվարությունները, այլև աստիճանաբար կատարելագործելու ժողովրդական տնտեսության կառուցվածքը, խթանելու դրա արդյունավետությունը և այդ հիման վրա բարձրացնելու բնակչության կենսամակարդակը: Սովետա-կուբայական համագործակցության համակողմանի զարգացումը ՍՄԿԿ-ի ու Կուբայի կոմունիստական կուսակցության, նրանց կենտկոմների ու կառավարությունների համատեղ ջանքերի արդյունքն է: Այդ կարևոր գործում մեծ ավանդ ունեն Սովետական Միության ու Կուբայի հանրապետության բազմաթիվ հիմնարկություններ ու հասարակական կազմակերպություններ: Այդ համագործակցության մեջ իրենց լուման ունեն մեր երկրի ամեն մի միութենական հանրապետություն, այդ թվում նաև Հայկական ՍՍՀ-ն:

Ստանալով սոցիալիզմի եղբայրական երկրների բազմակողմանի օգնությունն ու աջակցությունը, Կուբան իր հերթին հավատարմություն է դրսևորում պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների նկատմամբ:

Հայ ժողովրդի ողբերգությունը, որը պատճառեց ավերիչ երկրաշարժն իր աղետալի հետևանքներով, խոր ցավ պատճառեց Կուբայի ժողովրդին: Երկրով մեկ միտինգներ եղան, որտեղ հայտնվեցին համերաշխություն Հայաստանի ժողովրդին և գործնական օգնության պատրաստակամություն: Մ. Ս. Գորբաչովին հղած ուղերձում Կուբայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, հանրապետության պետական խորհրդի և Մինիստրների խորհրդի նախագահ Ֆիդել Կաստրոն մասնավորապես ասել է. «Ես ցանկանում եմ ձեռնարկել որևէ բան երկրաշարժի հետևանքները վերացնելու նպատակով սովետական ժողովրդի հետ համագործակցելու համար... Դա կլինի միջազգային համերաշխության նոր ձև, որտեղ կարող էին մասնակցել Կուբայի նման փոքր երկրները»:

Ֆիդել Կաստրոն դարձավ առաջին դոնորներից մեկը, որն իր արյունը տվեց երկրաշարժից տուժած Սովետական Հայաստանի բնակչությանը: Տասնյակ հազարավոր կուբացիներ արյուն տվեցին և պատրաստակամություն հայտնեցին լինել տեղում և օգնել մարդկանց: Հավանայից ինքնաթիռով Հայաստան հասցվեց արյան պլազմա և դաշտային հոսպիտալի սարքավորում, այնուհետև գործուղվեցին հատուկ ընտրված կուբացի բժիշկներ, շինարարներ և ուրիշ մասնագետներ, որոնք տարերային աղետի պայմաններում մեծ փորձ ունեն աշխատելու: Ճանապարհելով առաջին

տել փրկության իսկական գինը: Կործանման եզրին կանգնած՝ նրանք միայն վախենում են անդունդը գլորվել: Իսկ վախի բուն աղբյուրն այն անտեսանելի խցիկն է, որտեղ վարորդն է նստած և հեքիաթային վիշապի նման կարծես սպասում է իր զոհին: Ու իրոք՝ այս փոքրիկ, միկրոհասարակությունն ի վերջո մատուցում է նրան այդ զոհը կամ ավելի ճիշտ է ասել՝ անմեղ զոհը: Նմանօրինակ իրադրություններ, ինչպես գիտենք, հաճախ հանդիպում են հնագույն առասպելներում: Ապա ո՞ւր է այդ դեպքում այն փրկարար ասպետը ,որ թվում է պետք է գա և ազատագրի մարդկային արժանապատվությունը վախի հրեշավոր կապանքներից: Բեմում մենք նրան այդպես էլ չենք հանդիպում: Սակայն արթնացնելով հանդիսատեսի մեջ այդ ազատագրիչ ուժի անհրաժեշտության գիտակցումը, ներկայացումն իր դրական հերոսին գտնում է հանդիսասրահում:

Կիսաֆանտաստիկ սյուժե ունեցող այս թատերախաղը կառուցված է այնպես, որ գործողության օրգանական ընթացքը հանգեցնում է մեզ մի ընդհանուր գաղափարի. «քավության նոխազների» զոհաբերումն այսօր էլ կարող է դառնալ կենսական պրոբլեմ, եթե աշխարհում չգտնվեն չարի դեմ արիաբար մարտնչող ասպետներ:

Ինչպես տեսնում ենք, թատրոնն այս դեպքում արդեն անհրաժեշտ բարձունքի վրա է, համապատասխանում է իր դերին, իսկապես դառնում է «ամբիոն», որտեղից արտասանվող խոսքն այլևս չի կարող մնալ անարձագանք: Ընդ որում նկատենք, որ այդպիսի գործում երկխոսության մեջ էական է ոչ միայն ասելիքի բովանդակությունը, այլև արտահայտչակերպը՝ այն, ինչին ասում ենք թատերայնություն:

Պիեսը թատերայնորեն բացահայտելու եղանակներն, անշուշտ, կարող են տարբեր լինել՝ պարզապես անհրաժեշտ է, որ ներկայացումն իր նկարագրով տպավորություն գործի, շարժի հանդիսատեսի երևակայությունն ու փոթորկի նրա ներաշխարհը, չթողնի անտարբեր, պասիվ դիտողի դերում: Եվ դրա կարիքն այսօր անհամեմատ ավելի սուր է զգացվում, քանզի թևակոխել ենք այնպիսի մի ժամանակաշրջան, երբ մեզանից յուրաքանչյուր ոք այլևս իրավունք չունի և թերևս չի էլ կարող անհաղորդ մնալ ընդհանուր, համայն ժողովրդին հուզող խնդիրներին, երբ արվեստի ու մանավանդ թատերարվեստի պարտքն է հիմնապես գիտակցելու իր քաղաքացիական առաքելությունը:

Պարտքի այդ գիտակցումով է աշխատում իր հիմնադրման առաջին իսկ օրվանից Հենրիկ Մալյանի թատրոնը: Տակավին ութ տարի առաջ էր, երբ Կինոյի տան փոքրիկ դահլիճում մեր առջև բացահայտվեց յուրահատուկ մի թատերաշխարհ՝ ջերմ ու լուսավոր, ինչպես սարոյանական բարությունն է, պարզ ու խորունկ, ինչպես թումանյանական պոեզիան է: Մի խումբ պատանիներ ու աղջիկներ իրենց երախտավոր ուսուցչի հետ միասին եկան խոսելու մեր անցյալի ու ներկայի, մեր ցավի և ուրախության մասին: Խոսեցին անկեղծ, ոգևորված և, որ ամենից կարևորն է, խոսեցին գեղարվեստորեն համոզիչ: Բայց ինչո՞ւ, այնուամենայնիվ, նրանք և նրանց նմանները չէ, որ վճռական դեր են կատարում մեր թատերական կյանքում:

Այսպիսով, մենք կրկին վերադառնում ենք հոդվածի սկզբում առաջադրված խնդրին. ինչո՞ւ հենց նրանք չեն մթնոլորտ ստեղծում: Դրա բուն պատճառներն, անշուշտ, նույնպես գալիս փրկարար ասպետը, որ թվում է՝ պետք է գա երբ ամեն ինչ թեկվում էր ըստ մեկընդմիշտ սահմանված իդեալի, երբ վարչարարական հոգեբանությունն աստիճանաբար արմատացավ հասարակական կյանքի գրեթե բոլոր ոլորտներում, երբ սոցիալական արժեքների ստանդարտացումը հանգեցրեց նաև հոգևոր արժեքների ստանդարտացմանը: Ուստի բնավ էլ զարմանալու հարկ չկա, թե ինչո՞ւ այդչափ միապաղաղ ու միալար դարձավ նաև մեր թատերական կյանքը, որն ըստ էության իրեն շրջապատող միջավայրի ծնունդն է, հենց այն միջավայրի, ուր տասնամյակներ շարունակ գերիշխել է մեզ քաջ ծանոթ միատեսակության ու միօրինակության ոգին, ուր շարունակ քարոզել են «բազմազանության անհետացման, մահացման մասին» (Ա. Ցակովլև, Սովետական հասարակության որակապես նոր վիճակի հասնելը և հասարակական գիտությունները: «Լենինյան ուղիով», 1987, № 7, էջ 58):

Իհարկե, ժամանակի ընթացքում մենք նաև վարժվել ենք այդ իրականությանը, սովորել ենք արվեստի երևույթներն ընկալել ու գնահատել ըստ նույն այդ միջավայրում ձևավորված չափանիշների: Շատ շատերի համար դրանցից հրաժարվելն այնքան էլ դյուրին գործ չէ: Մինչդեռ հենց դա պետք է լինի մեր առաջնահերթ խնդիրը: Մեզ կենսականորեն անհրաժեշտ է ձերբազատվել հին նախապաշարումներից, կարողանալ տեսնել, աչքաթող չանել այն պտղաբեր բերմերը, որոնք ծիլեր կտան, կծաղկեցնեն մեր բոլորի այգին, որոնց գոյության փաստն անգամ արդեն հուսադրող է և հավատ է ներշնչում հայ թատրոնի ապագայի նկատմամբ:

---

Հանձնված է շարվածքի՝ 19. 12. 88 թ.: Ստորագրված է տպագրության՝ 24. 1. 89 թ.: ՎՖ 02303:
Ֆորմատ՝ 70×108$^{1}/_{16}$: Տպագրություն՝ օֆսեթ, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.:
Տպաքանակը՝ 15482: Պատվեր՝ 1828:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: